ՎԼ. ՇԷՔՍՓԻՅՐԸՑ

ԽԱՂԱՐԿՈՒԹԻՒՆՔ

---

# ՀՌՈՄԷՈՍ ԵՒ ՃԻՒԼԻԷԴԴԱ



ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ

Ի ՀԻՆԳ ԱՐԱՐՈՒԱԾՍ

ՍԹԻՎԸՆՍԻ, ՄԱԼՕՆԻ ԵՒ Ս. ՃՕՆՍԸՆԻ ՕՐԻՆԱԿԱԾ
ԴԻՄԸՆԴԻՄԵԱԼ ԲՆԱԳՐԷ

ԹԱՐԳՄԱՆՈՒԱԾ

ՅԱ. Կ. ՏԷՏԷԵԱՆԷ





ԶՄԻՒՌՆԻԱ.

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ

— 1866 —

# ՑԱՌԱՋԱԲԱՆ ԲՆԱԳՐԻՆ*

## (ՇԷՔՍՓԻՅՐԻ ԵՐԿՈՑ ՎՐԱՅՕՔ ՀԱՄԱՌՕՏ ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՄԲ)

Աշխարհի մէջ եղած են հանճարի և գրագիտութեան տէր մարդիկ, որոնց արժանաւորութիւնները՝ կարծեցեալ կամ արդարացի, աւելի փառաւոր և աւելի մշտատև պատիւներ ապահոված են իրենց համբաւոց ու յիշատակաց քան զամենէ բարձրաստիճան ախոյեաններ, որոնք իրենց որ և է ժառանգական կամ դիւցազնական պահանջմամբը միայն կրնան պարծիլ։ Մեր մէջ երևելի են՝ Ֆէր-նոյեան Ճօն Սէլտըն, Քրիստոֆեր Հուգըր, յաւերժայիշատակ Ճօն Հէյլս, զարմա-նալին Գրիչթըն՝ Բանաստեղծ Լեւինտոնը, Տր. Սամուէլ Ճօնսըն և ուրիշ շատեր. բայց այս բոլոր արժանաւէտ լեգէոնին և ոչ մէկը այնքան իրաւամբ իւր պատուարժան բարեհամբաւութեանն արժանացած չէ, որքան ԱՆՄԱՀՆ Շէքսփիյր։ Թէ որ Հեղինակնիս Յունաստանի կամ Հռովմայ նախնի ժամանակաց մէջ ծաղկած ըլլար, արդի Թուականիս՝ այն ժամանակուան դիցաբանական յիշատակութեանց մէջ անպատիւ տեղ մը բռնած չպիտի ըլլար։ Բայց Շէքսփիյր՝ կռապաշտական աստուածպաշտութեան մէջէն առնուելիք որ և է անձէն աւելի բարձըր պատւոյ համար ծնած էր։ Ինք՝ ամեն ուղղադատ ընտրութեան տէր մարդոց սրտին մէջն է — ճարտարախօսութեան շրթանց վրայ կը բնակի — իւրաքանչիւր զգացակիր մտայայտութեան՝ կեանք, հոգի և զուարթութիւն կը շնորհէ — իւր զօրաւորագն օգնութիւնը բարոյագիտին փոխ կը տայ, և ճշմարիտ կրօնասէրներէ իսկ անարգուած չէ — ինչ կ'ըսեմ, իւր Թշնամիքն իսկ, արդի ժամանակուան սուրբերը «ի գուրս կը գովեն զինք» — և շատ անգամ՝ յակամայս, ներեալ է, որ իւր յիշատակն անմահացնելոյ համար իւր լեզուն փոխ կ'առնեն որ իւրեանց ուհաս խելահասութեանը նպաստէ. ոչ ալ այս Ցառաջաբանը գրողին դիտողութեանց միջոցին՝ պակաս գտնուեցան պարագայներ այնպիսի անձանց, որք ամբիոնին վրայ իսկ «Էվընի բանաստեղծը» կը պոռային, անանկ ժամանակ մ'ուր կարծէին Թէ մեր ամենէ երևելի աստուածաբաններէն վկայութիւն կը բերեն։

Ափսո՜ս. մեզ ո՛րքան ծանրակշիռ խնդիր մը կ'երևի՝ Շէքսփիյրի և իւր գործոց պահանջածին չափ պատշաճավայել խօսքերով՝ մեր հիացումն, պաշտումն և համարումն գրի առնելը։ Այսու ամենայնիւ մինչև հիմա գրեթէ հարիւրի չափ

* Այս Բնագիրը 1842ին գրուած է։ Ծ. Թ.

զանազան աշխատասիրութիւններ հրատարակեցան ետեւէ ետեւ, այս իրաւցնէ անմահ թատերգուին գրութեանց և հանճարոյն վրայօք։

Մեր հեղինակին վարքին վրայ նոր բան մը չկրնար ըսուիլ. իւր կենսագրութիւնն սպառասպառեցինք, այլ իրեն ալ աններելի անիրաւութիւն մ'եղած պիտի սեպուի որ իւր գործերը տպուին՝ առանց ինչ որ մինչև հիմա վաւերական կերպով մեր ձեռքն անցածները յիշատակելու։ Սակայն իւր յիշատակը յաւիտեան կ'ապրի. հիացման նորանոր տեղի և բանասիրական քննադատութեան նորանոր նիւթեր պիտի մատակարարէ յաւիտեան։

Եկեղեցական պատմութիւն գրող ժամանակակից պատմաբաններէն մէկը, գրքերուն գերագանցին՝ այն է Աստուածաշունչին վրայ խօսելով՝ այսպէս կը յայտնէ իւր միտքը. «Այն պզտիկ գրքոյկը՝ զոր ծոցիս մէջ կրնամ կրել, և հոգւոյս խաղաղութեանն համար ամեն մէկ վայրկենական կարօտութիւններս յագեցնել, Վատիկանի բոլոր հազուագիւտ հատորներուն չափ արժողութիւն ունի իմ քով. և ըստ իմ գնահատութեան՝ բոլոր եպիսկոպոսաց գրածներէն և ամեն կանոնիկոսաց հակաճառածներէն գերիվեր է։» Այս դիտողութեանս մէջ անսուտ բան մը չկայ, երբ ըսուի թէ ինչ որ է Ս. Գիրքը բարեպաշտ քրիստոնէի մ'աչքին՝ նոյնն է Շէքսփիրի գործերը ճաշակաւոր մարդու մ'աչքին. վասն զի ամենափոքր շահօգուտ ներկայացնող առարկայ մ'իսկ չգտնուիր որ այս հեղինակիս գրութեանց մէջ նկարագրութեամբ երևելի հանդիսացած չըլլայ, որու հանճարին մէջ՝ մարդկային բնութեան թէ՛ ամենավսեմ և թէ՛ ամենաստորին ստուերներու բոլոր զանազանութեանց և նրբաձևութեանց փայլը կ'երևի։ Շէքսփիր ամեն նիւթերու մէջ վեհ է, որ և ճշմարիտը, որ և է դարու և որ և է երկրի բոլոր միւս մատենագիրներէն վեհագոյն է կրնայ ըսուիլ։ Իւր բանագրութիւնները գրեթէ ամեն առիթներու մէջ վկայութեան կրնան բերուիլ. և այն մարդը, որու խելքը մեր հեղինակին ասութիւններով չանմարանալ է, իւր ըղձահարկ խորհրդածութեանց նիւթոյ մէջ և խօսակցութեանց առարկայից վրայօք կենալով ժամանակ կորսնցնելու պէտք չունի։

Շէքսփիր՝ Պէն Ճանսանի ըսածին պէս՝ ոչ միայն

«. ——————————— Ժամանակին հոգին,
Թեատրոնի հռչակաւորն, հաճոյաբերն ու սքանչելին.

էր. այլ, այս կէտիս իսկ՝ խորախոհին հաստատ ընկերը, ինչպէս և զուարճամիրին ու բաղդաւորին զուարթ ընկերակիցն է։

«Երբ տղչելով կենամ նայիմ պէզքը Շէքսփիյրին,
Խէնդէ տեսլեանց մէջ նըշմարեմ դէմքն իմաստնին.
Վեհ և անձերջ կեցած մարդոց ծագոյրդոց վրայ.
Մելամաղձոտ և տխրադէմ սէան կը կենայ
(Փառք՝ խոնարհած և հին փառքերն չէջած կոյած)
Ժամանակին մենաշնորհեան մէջ՝ է ծծողանձ։»

Այս յօդուածիս մէջ աններելի պիտ՝ ըլլար չյիշելը նաև ինչ որ Շլէկլ մեր հեղինակին վրայօք կը խօսի իւր Գերմաններէն «Դասախօսութիւնք ի վերայ

Տրամաբանութեանց»ի մէջ, զոր Անգղիարէնի թարգմանելով, այս տեղս կը դընեմք.— Գուցէ մինչև հիմա Շէքսփիրի պէս այնքան դիւրիմաց կերպով մարդոց բնաւորութիւնները նկարագրող տաղանդ մ'եղած չէ։ Ո՛չ միայն, աստիճանաց, սեռերու և հասակի՝ մինչև ամենէ մասնաւորագոյն մանկութիւնն իջնելով՝ զանազանութիւնները կը ներկայացնէ. ո՛չ միայն թագաւորն ու մուրացկանը, դիւցազնը և քաղկահատը, իմաստունն ու տխմարը անկեղծ ճշմարտութեամբ մի կը խօսեցնէ ու վարուիլ կը տայ — ո՛չ միայն ինքզինք անցեալ դարերու և օտար ազգաց մէջ կը նետէ և ամենաճիշդ կերպով կը նկարագրէ, միայն քանի մի ակներև ազդմամբ կերպարանաց, ոգին՝ նախնի Հռոմայեցւոց — Գաղղիացւոց՝ Անգղիացիներու հետ պատերազմի մէջ եղած ատեն — նոյն իսկ Անգղիացւոց՝ իրենց պատմութեան մեծագոյն մասին մէջ — Հարաւային Եւրոպացւոց՝ (իւր խաղարկութեանց շատերուն լըջագոյն մասանց մէջ) այն ժամանակուան ընկերութեանց քաղաքակրթութիւնը, և հիւսիսայնոց նախկին կոշտ և բարբարոսական վիճակը. իւր մարդային բնաւորութիւնները այնպիսի խորութիւն և ճշդութիւն՝ ունին, որք չեն կրնար կարգահամարի տակ մտնել և նոյն իսկ վերլուծման մէջ անսպառելի են. չէ՛, այս Պրոմէթէսը ոչ միայն մարդ կ'ըստեղծակերպէ, այլ և ոգւոց մոգական աշխարհին մեծ դռները կը բանայ. կէս գիշերային աներևոյթ հոգիները կ'ողջէ. մեր աչաց առջև՝ իւր վհուկները կը խաղցնէ իւրեանց օտարատուրբ գաղտնեաց մէջ. օդը՝ զուարթալի համբարուներով և յուշկապարիկներով բազմաբնակ կ'ընէ. և այն էակները, որոնք երևակայութեան մէջ միայն գոյութիւն ունին, այնպիսի ճշդութիւն և ճշմարտակցութիւն ունին, որք Կալիպանի*) պէս տձև մարմնով հրէշներ ալ ըլլային, մարդուս միտքը կը թելադրէ համոզուելով զիջանելու, որ եթէ յիրաւի այսպիսի էակներ կարենային գոյութիւն ունենալ՝ անշուշտ այս հեղինակին դրած կերպովը պիտի վարուէին։ Մէկ խօսքով, ինչպէս իւր ամենաբեղուն և ամենայանդուգն երևակայութիւնները բնութեան տիրապետութեան մէջ կը բերէ, նոյնպէս միւս կողմէ ալ իրականութեան կապարներէն ազատ հեռուները դառնուած երևակայութեան սահմաններուն մէջ կը բերէ զբնութիւնը։ Զարմանալով կը կորսուինք իւր այնքան տարօրինակ, հրաշալի և անլուր՝ յարակից մերձաւորութիւնները տեսնելով։

Դարձեալ՝ թէ որ Շէքսփիր մեր հիացման կ'արժանանայ իւր դերախաղութեանց համար, նոյնպէս ալ մեր զարմացման արժանի է կիրքերը յանդիմանացուցելուն համար — այս խօսքը իւր ամենընդարձակ նշանակութեամբն առնելով, ըստ որում սկսելով ամեն մէկ իմացական հանգամանքներէ, ամեն մէկ ընտանեկան համակրութեան կամ անտարբերութեան եղանակներէ՝ մինչև ամենավայրի կատղութիւնը և յուսահատութիւնը կը պարունակէ իւր մէջ։ Ինք՝ մտաց պատմութիւնը կ'ընէ մեզ. իւր մէկ խօսքովը՝ նախընթաց պարագայից բոլոր հանգամանքները մեր աչաց առջև կը բերէ։ Իւր կիրքերը՝ ի սկզբան՝ իրենց բոլոր վեհութեամբ մեր աչաց չեն ներկայանար, ինչպէս որ եղերերգակ բանաստեղծներուն բազմաց կը դիպի, որք, ըստ առից Լեսինկի, սիրոյ օրինաւոր ոճոյն անձնիշխան տէրերն են։ Ինք՝ աննմանելի կերպով, սկզբնական ծագմանէ մինչև տանիճանաքայլ յառաջադիմութիւնները կը գծագրէ։ «Այս հեղինակ,

*) Տես 'ի Փոթորիկն։ Ծ. Թ.

կ'ըսէ Լեսինկ, կենդանի պատկեր կը հանէ, ամեն այն ամենափոքր և գաղտնածածուկ խորագիտութեանց՝ որոնցմով մեր հոգւոյն մէջ զգացմունք մի կը սպրդի՝ և ամեն այն աննշմարելի տատանողութեանց ուր որ կ'օգտի. բոլոր դաւադիտութեանց՝ որովք իւրաքանչիւր ուրիշ կիրք ձեռնտու կ'ըլլան իրեն, մինչև որ մեր բաղձանաց և ատելութեանց միայնակ բռնաւորը լինի։» Բոլոր բանաստեղծներէն աւելի, գուցէ այս է միայն, որ ուրուագրած է մտային հիւանդութիւնները — սևամաղձութիւնը, բանդագուշանքն, լուսնոտութիւնը, այնքան անբացատրելի և ըստ ամենայն մասին այնպիսի բացորոշ ճշմարտութեամբ, որ բժիշկ մը՝ կենդանի օրինակներէ զատ առնելու պէս իր դիտողութիւնները կրնայ հաւաստացնել։

Այսու ամենայնիւ, Ճոնսըն՝ Շէքսփիրի դէմ ըսաւ, որ իր կրքաշարժութիւնը միշտ բնական չէ ու ճարտարակեղծութենէ ալ զուրկ չէ։ Արդարև կան քանի մի տողեր, սակայն համեմատական կերպով խօսելով, յոյժ քիչ, ուր որ իւր բանաստեղծութիւնը ճշմարիտ զրուցափոխութեան կոպարները կը չափազանցէ. ուր որ պինտ վերաւլաց երևակայութիւն մի, ուր որ պինտ պաճուճազարդ հանճար մի, իւր տրամագրական անձնամոռացութիւնը բոլորովին անկարելի ձևացուցած են։ Անկէ՝ բնական ու պարզ կրքաշարժութեան իղէան ծագած է, որ նմանութենէ զուրկ բացագանչութեանց մէջ կը կայանայ և որ հանապազօրեայ կեանքէ վեր սեպուած։ Բայց աշխոյժեռանդ կիրքերը՝ բովանդակ իմացական կարողութիւնները կ'ելեքտրացուցանեն, և հետևաբար, ի բնէ լուսամտութեամբ օժտեալ անձինք՝ իրենց միտքը աւելի ճարտարագիւտ և փոխաբերական իմաստներով կ'արտայայտեն։ Բաց յայտնէ, Տիկին Մոնդէկիւի դիտողութիւնն առաջ բերելով՝ «Գերբնաստեղծ հանճարը՝ կանոններէ գերագոյն և կանոններէ նախակարգ բանով մի կ'ազդուագործէ, և նոյն իսկ բնութեան վրայ՝ կոչ ընելու իրաւունքն ունի։» Այս իմաստին համաձայն կ'երևի, Գերմանացի բանադատին դիտողութիւնն ալ, թէ բանաստեղծական ձևերու իրաւունքները արդարապէս կըշռուած չեն։ Շէքսփիր՝ որ իւր նպատակին վրայ միշտ հաստատ էր, երբ ուզեց որ բռնականապէս զօրաւոր կերպի մի մէջ խօթելով ազդողական ընէ զայն, ըստ պահանջման առթի, աւելի ազատօրէն խաղերգութիւն մի մէջ բերելով, հարկաւ բարեխառնեաց զուարթութիւնները՝ երբ նայեցաւ որ պինտ կսկծական են, և անմիջապէս ետք՝ մեր համակրութիւնը յանկուցանող երաժշտական սփոփանք մ'ալ ներմուծեց։ Ինք՝ իմաստութեան այն անկոկ իղէանները չունէր, որք արդեաց շատերը ունենալ կ'երևին, որպէս թէ բանաստեղծը՝ ինչպէս որ առածը կ'ըսէ, կոպտիկին պէս՝ մէկ զարկած տեղը մէկ մ'ալ զարնէ։

Այն ընդդիմութիւնը որ ունինք, թէ Շէքսփիր մեր գարշախորժ բարոյականին զզուելիութիւնը բացէ ի բաց խաղարկելովը մեր զգացմունքը կը վիրաւորէ, անողորմաբար մեր միտքը կը ճանկռտէ, և մեր զգայութիւնները կը կոշկոճէ խիստ անտանելի և անարգելի տեսարաններ ներկայացնելովը, պինտ մեծ դիտողութեան արժանի բան մ'է[1]։ Արդեամբքաբար, երբեք, վայրենաբարոյ և

[1]) Ասոնք ըստ մեծի մասին իւր խաղերգութեանց մէջ կը տեսնուին. տե՛ս, Չափ ընդ չափու։ Ամեն բան լաւ՝ որոյ վերջ բարի։ Երկու ազնուականք Վերոնայի։ Վինտզըրի զուարճասէր կանայք, ևայլն։ Ծ. Թ.

արիւնըռուշտ կիրքերը մեր աչքին հաճոյական արտերևոյթներով չողիկեց․ յանցանքի և սկզբունքի թերութիւնները՝ վեհանձնութեան կեղծ ցոյցերու տակ չծածկապատեց, և յայսմ մասին՝ ըստ ամենայնի արժանագով է։ Երկու անգամ աներկեան եղեռնագործներ կենդանագրեց, և խիստ ցաւալի պարագայի մը տպաւորութիւններէ խուսափելու համար հնարած ճարտարութիւնը՝ Յակով-ոյի[1]) և Ռիչարդոս Գ.[2])ի վրայ կրնայ տեսնուիլ։ Պիտո գծած և սարքին ցեղի մը յարանկատ ակնարկութիւն ընելը՝ բանաստեղծին յանձնապաստանութիւնը հաստատելու պէտք է։ Իւր արհեստին համար բարեբաղդաբար, Շէքսփիյր ազնիւ և գործնական տպաւորութեանց ընդունակ եղած ժամանակի մէջ ծնած է, ուր խիստ զօրաւոր նախնի ժամանակէ մնացած հաստատամտութիւն կար բաւական, որ ամեն մէկ արիական ու սատանայական նկարագրութիւններէ վեհերոտութեամբ յետս չընկրկեցան։

Մեր ապրած ժամանակին մէջ տեսանք ողբերգութիւններ որոց ձախողական վախճանը սիրահարեալ իշխանուհւոյ մը նուաղմամբը կը վերջանար։ Թէ որ Շէքսփիյր երրեակի հակառակ վերջնածայրը կ'ինկնի, այն ալ իւր մէկ ազնիւ սխալմունքն է, որ հակայական ուժեղութեան լրութենէ կը ծագի. այսու ամենայնիւ, այս մեր եղերերգու Տիտանը՝ որ երկինքը կը չանթահարէ և երկիրը իւր ծղխնեաց վրայէ խախտելու կ'ըսպառնայ. որ, Եսքիլոսէ աւելի ահաւոր՝ մեր մազերը կը քստմնեցնէ, և զարհուրանքներ արիւններ կը սառեցնէ, նոյն ժամանակին՝ քաղցրընտիր բանաստեղծութեան յանկուցիչ սիրունութիւնն ունի։ Փոքրիկ տղու մը պէս՝ սիրոյ հետ կը խաղայ. և իւր երգերը՝ փղձկասիրտ հառաչանաց նման կ'արտաշնչուին։ Իւր հանճարոյն ահագնամբարձ բարձրութիւնները և անդնդավիհ խորութիւնները իրարու հետ կը միացնէ. և ամենաօտար ու ըստ երևութից անհաշտելի յատկութիւններն իսկ իրեն հետ խաղաղաբար կը կենակցին։ Ոգիները և բնութեան աշխարհները՝ իրենց գանձերը իւր ոտքերուն տակ բերած յանձնած են։ Զօրութեան մէջ՝ կիսաստուած. հեռատեսութեան մէջ՝ մարգարէ. իւր համայնատես իմաստութեան մէջ՝ բարձրագոյն դասու պահպանողական հրեշտակ մ'է, որ ինքզինք մահկանացուաց մէջ խոնարհեցուցած է, որպէս թէ իւր գերբնականութեան յարգը ճանչցած չըլլար, և պզտիկ տղու մը պէս ալ պարզամիտ և անամբարտաւան է։

Շէքսփիյրի կատակերգական տաղանդը՝ ողբերգականին և կրաշարժականին մէջ ցուցուցածին նման սքանչելի է. նոյն բարձրութեան հաւասար կը կենայ, նոյն տարածութիւնն ու նոյն խորութիւնն ունի։ Ծիծաղերգական հանգամանաց և առիթներու մէջ՝ այնու հնարաբարուեան պտուղ մ'է։ Խիստ մեծ դժուարութիւն մը պիտի ըլլայ երևան հանելը թէ ուրկէ գտեր առեր է անոնց իւրաքանչիւրը. ինչ ատեն, իւր տրամերգութեան ըլջաբարոյ մասանց մէջ՝ կը նայինք որ արդէն գիտցուած բանի մը հաստատակօրէն ձեռնարկու եղած է։ Իւր ծիծաղերգական գերախաղութիւնները՝ ըլջերգականին հետ՝ ճշմարտանման, որոշագոյն և խորաթափանց են։ Այնքան քիչ հակամիտութիւն ունի անճոռնենկարի, որ տասուել կրնամք ըսել թէ իւր թատերադէպերուն շատը խիստ սիրուն և քըն-

1) Տե՛ս յՈթելլոս։ Ծ. Թ.
2) Տե՛ս 'ի Ռիկարտոս Գ։ Ծ. Թ.

քշակայել են տեսարանի համար․ Թէ միայն երևելի դերասան մի կրնայ ըստ արժանւոյն ձևացնել և պինտ մոադիր ունկնդիրները միայն կրնան կատարելապէս հասկնալ։ Ոչ միայն շատ տեսակ խենդութիւններ առուերագծեց, այլ և պարզ անմտութիւնները պինտ զուարճալի և զբօսալի կերպերով ներկայացնելու ձևեր հնարեց։

Շէքսփիյրի արամերգական հանճարոյն մասնաւոր յատկութեանց վրայ՝ աւանց ասկէ աւելի ծրագրելու փորձն ընելու, թող ակնթարթական նշմարով մի, մեզ այնքան վարպետօրէն կերպով թուղուցած ամենէ հանճարիմաստ նիւթոց ոմանց վրայ՝ վերոյգրեալ դիտողութեանց և բանագատութեանց ընդհանուր ճշմարտութիւնը նոյնհետայն երևան հանելու և հաստատելու ջանք մ'ընենք։

Որպէս զի այս Փորձագիր և Յառաջաբան պինտ երկար ու ձանձրալի չերևայ՛ ընթերցողը, աանչարբերեալ տողերուն վրայ իւր միտքը գրաւել տալով գոհ ըլլայ, զանոնք իր առջև եղած գրքին մէջ շուտ մի դարձնելէ առաջ։

Թէ որ պատանեկի մի խրատ տալ ուզեմք, «Ամէն բան լաւ՝ որոյ վերջը բարի»ի Ա․ Արարուածին մէջ՝ «Օրհնեա՛լ ըլլաս, Պէ՛րտրամ» ըսկիզբն բառերով սկսուած խօսքերէն աւելի ի՞նչ կրնամք ընել։ Դարձեալ՝ երիտասարդուհի մի, իր մոլութեցուցչին որոգայթներէն զգուշացնելու համար, նոյն խաղարկութեան Գ․ Արարուածին մէջ տրուած խրատաբանութիւններէն աւելի ի՞նչ բանի կրնամք ուշադրութիւն ընել տալ, որ կ'ըսկսի, «Ջգո՛յշ կեցիր անոնցմէ, Ա'րտեմիա, են.»։

Բայց «Ըստ Հաճոյից» խաղարկութիւնը ու Բ․ Արարուածին մէջ՝ Խենթին նկարագրութիւնը և ժամանակին վրայ ըսած բարոյական խօսքերը կարդա՛, ինչպէս որ սա տողերէն կ'երևայ, որ «Բարև՛ս խենդ, ըսոյն»ով կ'ըսկսի։ Ամերախտութեան զգուելի և գարշելի յանցանքը՝ ո՞վ այնքան կենդանի գոյներով նկարագրած է քան զՇէքսփիյր, նոյն խաղարկութեան մէջ, թէև երգի ձևով, որ կ'ըսկսի «Փչէ՛, փչէ՛, ո՛վ պաղնաշունչ հողմ»։

Արդէն ամենուն ծանօթ եղած «Եօթն Հասակ»աց*) նկարագրութիւնները նման չունին․ և շատ առիթներու մէջ՝ արուեստագիտաց անապարծ ջանքերն արթընցուցած, վարժարանաց տղայքն զբօսցուցած և հաճեցուցած և մէջը նշանակուած ամեն տեսակ ու վիճակի մարդոց ապշութիւնն ու զարմանքը քրքրած են։

Բայց անկարելի է, Յառաջաբանի մի ներած սահմանին մէջ, պարզ դիտողութիւններ իսկ ընելով, այս ընտիր գրուածոց ուրուագիծն հանել։ Եւ ոչ ալ հարկ է որ հոս տեղ, խաղարկութեանց գաղտնի հնարքներուն, բարոյականին և ընդհանուր դերախաղութեանց շրջագիծն հանել ընթերցասիրաց առջև, որովհետև (այն Տիպիս մէջ) իւրաքանչիւր թատերգութեան սկիզբը բանագատական նախադուռներ ըրած ենք։

*) Տե՛ս Ըստ Հաճոյից․ Արար․ Բ․ Տես․ Է․ Ծր Թ․

մաս Կրինի անունով քաղաքացին որ այն ժամանակուան ժողովրդական դասուն մի էր։ Այս տեղափոխութիւնը կը կարծուի որ 1586ին տեղի ունեցած է, որ ժամանակ ինք քսան երկու տարեկան էր։ Թէ որ ուսանողութեանց հաւատ ընծայել պէտք է մեզ, ըստ ոմանց՝ յուշարարի պաշտօնեայ կամ օգնական ըլլալու հարկադրուած էր, և ըստ այլոց անհաւանական պատմութեան՝ ներկայացումն տեսնելու համար եկողներուն ձիերը կը բռնէր, որ այն ժամանակուան սովորութեան համաձայն՝ առանց ծառայի կը գային։

Իբրև դերասան՝ իւր դերակատարութեան գագաթնակէտը իւր Համլէթի բուն ոգին էր. «Շատ աւելի հաճութիւն պիտի ընդունի, կ'ըսէ Մ. Բօլլ*), Շէքսփիրի հանճարոյն և գրութեանց վրայ դիտողութիւն ըրած ժամանակ, թէ որ կարենայի իմանալ որ և է հեղինակութենէ, թէ իւր առաջին գրած խաղարկութիւնը որն է. անշուշտ այս տեսակ բաներու մէջ հետաքրքիր մարդոց համար հաճութիւն մ'է տեսնել և գիտնալ թէ Շէքսփիրի պէս աղանդաւոր մարդու մը առաջին փորձագրութիւնը ինչ էր։ Գուցէ հոդ չըներմք իւր առաջին գրութիւնները փնտռելու, ինչպէս որ ուրիշ հեղինակներու կ'ընեն՝ իրենց նուազ կատարելագործեալ գրութեանց համար։ Արուեստակութիւնն՝ այնքան քիչ և բնութիւնն՝ այնքան մեծ մասնաբաժին ունէին իւր աշխատասիրութեանց մէջ, որ թէև բնաւին չեմ գիտեր, բայց անտարակոյս իւր դեռատիութեան ժամանակ գրած խաղարկութիւնները ամենէ ազդուազդոյններն ըլլալ պէտք են, ըստորում աւելի աշխուժայայտ և աւելի բոցեռանդ երևակայութիւններ պարունակելնուն համար ամենէ գերազանց կը սեպուին։ Այս խօսքով՝ չեմ ուզեր որ կարծուիմ թէ ըսել կ'ուզեմ որ իւր իդէաները ցանցառ ու այլանդակ էին որ դատողութիւնը կատարելու կանոնէ անկախ եղած ըլլան. այլ իւր մտածած բանը հատաքակօրէն այնքան վսեմ, այնքան ճշգական և այնքան իրաւացի և ինքնատիպին էր որ կամ շատ քիչ որբագրութիւն կը պահանջէր և կամ բնաւին. և ընդարտին՝ անաչառ դատողութեան մտադիմութեան կը համնուէր»։ Սակայն, թէև ընդհանրապէս անորոշ է թէ ամեն մէկ խաղ որ ժամանակ շարադրուած է, այլ կան քանի մը անցքեր անոնց մէկ քանիներուն մէջ որք իրենց թուականը որոշել կը տան։ Զորօրինակ, Հէնրիքոս Հինգերորդի Չորրորդ Արարուածին վերջը եղած Գուրբէրը՝ գեղեցիկ համեմատով մի Էսսէքսի կոմսին ուղղուած պատիւ մի ակնարկով՝ կը վկայէ թէ այն խաղը նոյն տարուան Իռլանտայի մէջ թագաւորոյն զօրավարը եղած ատեն գրուած է. դարձեալ՝ իւր Հէնրիքոս Ութերորդի խաղին վերջը՝ Եղիսաբեթ թագուհւոյն և անոր յաջորդ Յակոբոս թագաւորին վրայ գրած գովաբանութիւնը՝ ապացոյց մ'է թէ նոյն խաղը՝ այս իշխանաց վերջինոյն Անգղիոյ աթոռը բարձրանալէն ետք գրուած է։ Սակայն իւր խաղերը ինչ և իցէ ատեն գրուած ըլլան, իւր ժամանակի մարդիկը այս տեսակ զուարճախաղութեանց այնքան բաղձանօք հրճուութիւն զգալու սկսած էին, որ իրենց մէջ այսպիսի զուարճալի հանճարի տէր մարդու մը երևան ելնելուն չափազանց գոհ էին, նայելով որ իրենց անցուածքը այսպիսի հաճոյական կերպով ծախսել տալու կարող է։ Իւր իմաստութեան առաւելութենէ զատ՝ ինք զուարթ բնութեան տէր մարդ մ'էր, իւր վարմունքի մէջ քաղցրաբարոյ և խիստ հաճելի ընկեր, այնքան որ, զարմա-

*) Այս ալ Շէքսփիրի ամբողջ գործերը թարգմանողներէն մին է։ Ծ. Թ.

ուանէն ետք, կ'ուզէր որ անմիջապէս չինուի․ ասոր վրայ՝ Շէքսփիր հետևեալ չորս տողերը տուաւ իրեն․

"Չարիւրին տասըն այս տեղ խորը փորագրուած է,
Ցասնէն մինչեւ հարիւրը իւրեան հոգին փրկեալ չէ.
Թէ որ անձ մի հարցընէ, Թէ՝ Ո՞ նընջէ յայս տապան,
Չօ՛, հօ՛, այն իմ ձօն Պըմպն է, պատասխանէ սատանան"։

Իւր մահուանէ քանի մի տարի առաջ Ստրաթֆորտ բնակեցաւ, Գլոպտոնի ընտանիքէն ծախու առած տան մի մէջ, որ մինչև Վերահաստատութեան ժամանակները իւր սերնդեան ձեռք մնաց, երբ նոյն ընտանեաց անդամներէն մին վերադնեց զայն, և որու ներկայացուցիչներէն մին, Սըր Հակ Գլոպտոն՝ Կարրիգի, Մագլինի և ուրիշներու հետ՝ Շէքսփիրի ձեռօք անկուած թթենիին տակ կը նստէր, 1742ին։

Մեռած է իւր ծննդեան տարեդարձի օր, Ապրիլ 23ին, 1616, իւր ճիշդ յիսուն և երկրորդ տարեկան հասակին մէջ։ Իւր մարմինը թաղուեցաւ Ստրաթֆորտի մեծ եկեղեցւոյն սրբարանի հիւսիսային կողմը, ուր պատին վրայ յիշատակարան մ'ալ դրուած է, որու մէջ կամարի մի տակ նստած կացութեան մէջ կը ներկայի, առջևը բարձիկ մի սփռուած, աջ ձեռքին մէջ գրիչ՝ ու ձախ ձեռքը՝ գալարաթուղթի մի վրայ յենած։ Հետևեալ Լատիններէն երկտողեանը՝ բարձիկին տակով փորագրեալ է․ —

«Judicio Pylium, genio Socratem, arte Maronem,
Terra teget, populus mœret, Olympus habet.»*)

Այս Լատիններէն արձանագրութեան կրնայ յաւելցուիլ անոր ներքև գրուած տողերը․ —

"Ըզկայ ա՛ռ անցաւոր, Լ՞ր այդչափ ըշտապիս,
Ընթերցի՛ր, Թէ կարես, զի՞նչ ժանտ մահ ի շիրմիս
Ջետեղեաց. Շէքսփիյր, եւ ընդ որ վաղ շիջաւ
Բընութիւն. ոյր անուամբ այս դամբան պըճնեցաւ
Առաւել քան ըզմեծագինս, ցորչափ համայն զոր արար՝
Եթող արհեստ յարակեաց, այլ Թըղթահամար յիւր հանճար"։

Այս յիշատակարանը իւր մահուանէն եօթն տարի ետք կանգնուեցաւ․ բայց ներքևը իւր գերեզմանաքարին վրայ հետևեալ տողերը կը տեսնուին, որոնք կ'երևի որ խոշոր և մանր գիրերու անճաշակ խառնուրդով մի փորագրուած են, իւր դամբանաշինութեան ժամանակ։

"Աղնիւ Բարեկամ, Ի ՍէՐ Յիսուսի եկ անտես եղիր
Որ ՀՈՍ Ամփոփուած հողեղէն կաւը բնաւ չփորէիր
Օրհնեալ լիցի Թող Այն Մարդը որ այս Քարանց կը խնայէ
Եւ անիծեալ Այն՝ որ իմ Ոսկորներ տեղէն կը խախտէ"։

*) «Դատողութեամբ Պիւղեան, հանճար Սոկրատայ, արհեստ Մարոնեան,
Երկիր պահպանէ, ժողովուրդ ողբայ, Ողիմպոս ունի։»
Իբր՝ Նեստորի դատողութեան ունեցող, որ Պիւղոնի թագաւոր էր, և արհեստը՝ Վիրգիլիոսինին նման։ Տ. Թ.

Անստոյգ է թէ այս պատուէրն ու նզովքը Շէքսփիյր ի՛նք գրած է թէ իւր բարեկամներէն մին[1])։ Գուցէ առնէ մ՚եւս կմախները տեղերնէն վերցնելու և կմախքատան մէջ զետեղելու սովորութեան նկատմունք ունենայ. այսպիսի անիծաբանութիւններ լատինական շատ տապանագիրներու մէջ կը գտնուին։ Այսու ամենայնիւ, Շէքսփիյրի Յաջորդքը այն ժամանակէ ի վեր մեծ խնամով ամեն ձեռնարկութենէ պաշտպանուեցան։

Իւր ընտանիքը կը բաղկանար երկու աղջիկ և մէկ տղու զաւակէ՝ Համնէդ անուն, որ տասներկու տարեկան մեռաւ։ Սիւզանա՝ անդրանիկ և իւր հօր սիրելի աղջիկը՝ 1607 Յունիս 5ին կարգուեցաւ, Տր. Ճօն Հօլլ բժշկին հետ, որ 1635 Նոյեմբերի մէջ մեռաւ, 60 տարեկան։ Տիկին Հօլլ՝ 1649 Յուլիս 11ին մեռաւ, 66 տարեկան։ Միայն մէկ զաւակ թողուցին Եղիսաբէթ անունով 1607-8ին ծնած, որ 1626 Ապրիլ 22ին կարգուեցաւ Մեծապատիւ Թոմաս Նաշի հետ. այս ալ՝ 1647ին մեռաւ. անկէ ետք Աբինկթընի որ ի Նօրթհամթընշայր, Սըր Ճօն Պարնըրտի հետ ամուսնացաւ, բայց երկու ամուսիններէ ալ զաւակ չթողլով մեռաւ։ Յուդիթ՝ Շէքսփիյրի կրտսեր աղջիկը 1615-16 Փետրուար 10ին ամուսնացաւ Թոմաս Գուինէ անուն մարդու մի հետ և մեռաւ Փետր. 1661-62ին, իւր 77 տարեկան հասակին մէջ։ Գուինէէ երեք տղու զաւակ ունեցաւ, Շէքսփիյր, Ռիկարտոս և Թոմաս, որոց ամենն ալ ամուրի մեռան և այս տեղ մեր հեղինակին սերունդը շիջաւ։

Հազար 741ին, Վլէսթմինսթրի աբբայանոցին մէջ արձան մի կանգնուեցաւ ի յիշատակ մեր «անմահ բանաստեղծին» ընդ հովանաւորութեամբ Պըրլինկթընի կոմսին, Տր. Միդի, Մ. Փոփի, և Մ. Մարթինի։ Այս՝ Շիմէյքըրի ձեռակերտն էր (որոյ համար 300 փաունտ վարձք առաւ) որոյ ուրուագիծը Քէնդ չինած էր, և նոյն տարին Յունվար ամսոյ մէջ հանդիսացուցութիւնը տեղի ունեցաւ, հարիւր քսան և հինգ տարի մահուանէն ետք այսպիսի մարդու մի՝ զոր կը յաւերժացնէ և որոյ հանճարը՝ բովանդակ այս երկար թուականին մէջ գրեթէ մոռցուած կ՚երևէր։ Լոնտոնի իւրաքանչիւր թէատրոնի գերասանները նպաստախաղեր տուին որ ծախքը թեթևնայ, և Վլէսթմինսթրի Աւագերէցը և Կանոնիկոսապետը առանց մի չափին նուիրուած տեղւոյն համար։ Միայն Տրիւրի-Լէյնի թէատրոնի ներկայացումէն գոյացած ստակը 200 փաունտը կ՚անցնէր. բայց Գովընթ-Կարտընի թէատրոնի արդիւնքը 100 փաունտը չանցաւ։

Բոլոր այս անկատար տեղեկութիւններէն, զորս իւր վարքապատումներէն և յիշատակարաններէն քաղելու կարող եղած ենք, ընթերցողը պիտի տեսնէ որ Շէքսփիյրի վրայօք նուազ տեղեկութիւն[2]) ստացուած է քան գրեթէ բոլոր այն հեղինակներէ որք գովելի հազուագիւտութեան առարկայ եղած են։ Բան մի այն-

[1]) Կարելի է որ զայս յօրինող մարդը Շէքսփիյրի անունը նշանակել ուզած է այս տապանագրին մէջ, բայց յաջողած չէ, վասն զի Ի ՍԷՐ բառը՝ որ սէյք է, և ՀՕՍ բառը՝ յիր, երկուքը միանալով՝ ՍԷՅՔՅԻՐ կ՚ըլլան և ոչ ՇԷՔՍՓԻՅՐ։ Ծ. Թ.

[2]) Այս խօսքերէն կրնայ մակաբերուիլ և շատ հաւանական է որ Շէքսփիյր, թէև տաղ գերասան, և տաղ հեղինակ, ցոփակեաց բարք մ՚ունեցած է, և հետևաբար իւր վարքը մոռացութեան մէջ ծածկուած։ Յաղագս այսոր տես կրնամ մէջ բերել Սըր Վ. Տ՚Աւէնընտը և Նէշէն դէպքը։ Ծ. Թ.

քան աւելի շնորհապարտութիւն չէր կրնար տալ, որքան որ ծանօթութիւն մի այս զքանչելի մարդուն կանխագոյն ուսումնավարժութեան, իւր գրչին յառաջադիմութեան, իւր բարոյական և ընկերային յատկութեանց, իւր բարեկամութեանց, իւր թերութեանց և ինչ որ կը նկատի իւր անձնական պատմութեան։ Բայց բոլոր այս տեղակէտերուն վրայօք իւր ժամանակակիցները ու անմիջական յաջորդները լուռ մնացած են, և թէ որ բան մի կրնայ նորայայտիլ՝ այն ալ ուրիշ կերպով չկրնար ըլլալ, բայց եթէ արտախուզելով այնպիսի աղբիւրներ որք մինչև հիմա խուսափած են ջերմագին հետախուզութիւններէ այնպիսի մարդոց որք իրենց բոլոր կեանքը և իրենց զօրաւոր տաղանդը նուիրած են անոր յիշատակն վերակենդանացնելու և աշխատասիրութիւնները հաւաքելու։

Շէքսփիրի դրամերգական համբաւը թէև մեծ էր իւր ապրած ժամանակ, այլ մասամբ իւիք աղօտ եղաւ՝ երբ զաղղիական ճաշակը մուտ գտնելով նախամեծար սեպուեցաւ և զաղղիական ձևագիծերը ուսումնասիրուեցան Կարոլոս Բ.ի ժամանակները. բայց ետքէն դարձեալ իւր բնատական արժանաւորեալ պահանջման բարձրացաւ, մինչև որ իւր արտադրութիւնները ազգային ճաշակ մի հաստատեցին, և մինչև այսօր աւելի եւս պատիւ գտնելու վրայ է իւր հանճար։

Վօլդէր դիտողութիւն կ'ընէ թէ Շէքսփիր Անգլիացի ազգին սիրահաճոյն հանդիսացաւ դարէ մ'աւելի և թէ այն բանը որ հարիւր տարիի չափ ազգային հիացումը գիւանագրեց, նախապատուիրաբար պիտի ապահովէ զայն յաւիտեան։ Թէև ճշմարտութիւն մի կրնայ նշմարուիլ այս դիտողութեան մէջ, սակայն դիւրայայտ և անուրանալի իրողութիւնն այս է, որ հանճարի ընդածին մեծ զօրութիւնը միայն կրնայ կանխակալութիւնն հաստատել։

---

Շէքսփիյրի վարուց վրայ բնագրէն վերոյգրեալը Թարգմանելէն ետք՝ հետեւեալը կը համառօտեմք Ա. Տիւմայի գրուածքներէն.

Շէքսփիր 1586ին վերջերը, երբ 22 տարեկան էր, Լոնտոն կը գայ, ուր Կարմիր-Ցուլ պանդոկին մէջ Մարլօյի Ֆաուստը կը ներկայացնէին, որ այն ժամանակուան արդարապէս ամենէ յարգուած խաղարկութիւններէ մին էր։

Այս երիտասարդը սոյն մայրաքաղաքին մէջ քանի մի ժամ թափառելէն ետք Կարմիր-Ցուլի պանդոկին առջև կը հասնի և իւր ծոցը մնացած վերջին դենարը տալով ներս կը մտնէ ու ներկայացման վրայ կ'ըզքանչանայ։ Խաղուն լմննալէն ետք՝ դերասանաց խմբապետը գտնելով կ'իմացնէ անոր, թէ ինք ձեռնոցավաճառի մի հինգ զաւակաց անդրանիկն է*), աղէկ կրթութիւն մ'առած ու վերջերս ալ փաստաբանի մի քով դրագրութեան պաշտօն վարած, բայց եղնիկին դէպքին պատճառաւ՝ նոյն փաստաբանէն իրաւունք Ստրաթֆօրտէ փախած է, և թէ այժմ թէ՛ իւր ստամոքսը և թէ՛ քսակը պարապ մնացած ըլլալով կը խնդրէ որ զինք իւր խմբին մէջ ընդունելով պատուաւորաբար իւր ապրուստ ճարէ։ Անոր վրայ մէջերնին յարմարութիւն կ'ընեն որ երբև յուշարար մնայ խմբին մէջ և

*) Ըստ Բնուէլէի՝ Բրդավաճառի որդի և տասն զաւակաց անդրանիկն կ'ըսէ։ Ծ. Թ.

տարիճանաբար ընտանենալով գերասանական արհեստին աշխատի ինքն ալ գերասանութիւն ընելու, այն պայմանաւ որ իւր ուտելիքը և հագուելիքը ճարուի իրեն և երբեմն ալ քիչ մ'ըստակ, որպէս զի անով երբեմն տապերղուլունք խաղայ և երբեմն ալ պաւաթ մի գարեջուր խմէ։ Հոս Շէքսփիյր իւր կենընթացը կը յարդարէ, այսինքն գերասանութիւնը կատարելապէս սովրելէ և գործքի գնելէ ետք՝ երբ Յակոբոս Ա. թագաւորն աթոռ կը բարձրանայ, անորմէ՝ Կլօպ թէատրոնի առանձնաշնորհութիւնը կ'ըստանայ։

Շէքսփիյր, իւր քսանամեայ գուսանարուեստական կենընթացին մէջ՝ երեսուն և հինգ խաղարկութիւն աշխատասիրեց, և այս ժամանակամիջոցին մէջ՝ ի բաց առեալ Մարլօ որ իւր նախորդն էր, Պէն Ճօնսըն որ իւր մրցաժէտն էր և Սըր Ուիլիամ Տ'Ավընէնդ իւր յաջորդը, իւր ժամանակուան բոլոր գրասիրութիւնը իրեն իւր գլխէն ուղղածներ։ Այսօրուան օր ո՞վ գիտէ Չաբման, Մարսթըն, Րօլէյ, Միտլթըն, Վէպսթէր, Հէյվուտ, Ֆորտ, Տէքէր, Շիրլէյ, Տրէյթըն Ֆինչառ, Ֆլէչըր, Դանիէլ Չէթլ, Պրաուն, Տէվընբորդ, Ֆիլտ և Փիլըր, Քուարլս, Նաշ, Լօճ Սաքվիլ, Կրին, Կարքըն, Կէկըր, Բրէսթըն, Վարներ. և ով չգիտեր զՇէքսփիյր։

Իւր ժամանակին առաջին բանաստեղծի համբաւն ունէր. և իւր տարեկան եկամուտը՝ եօթն ութ հազար ոսկիի կը հանէր որ այսօրուան հաշուով՝ երեսուն հազար ֆրանքի համարժէք վարձամուտ ըսել է։ Այսուհետև ուզեց որ իւր հայրենիք դառնայ յաղթանակով ուրկէ փախստական եղած էր։ Իւր ծննդական երկիրը դառնալէն ետք՝ իւր կենաց վերջը՝ իւր ծագմանը մթութեան մէջ ինկաւ, ճիշդ շքեղ ծիածանի մի նման՝ որ հերկէն երկինք բարձրութեան մէջ կը փայլի, բայց իւր երկու հորիզոններէն՝ ամպերուն մէջ աներևոյթ կ'ըլլայ։

Անկէ ետք իւր վրայօք բան չգիտցուիր, բայց յայտնի է որ 1616 Ապրիլ 23ին մեռաւ, իւր ծննդեան տարեդարձական օրը, 52 տարեկան, այն թուականին՝ որկէ 57 տարի ետք մեռնէր պիտի Մոլիէր՝ միայնակ անձը որ կրնամք իրեն հետ համեմատել։

Սըր Վիլլիամ Տ'Ավընէնդ որ կը պարծէր թէ Շէքսփիյրի որդին է, համոզուած՝ թէ տաղանդ հայր մ'ունենալու պատիւն իւր ծննդեան արատը կը ջնջէ, այս մեծ վարպետին արձանի և ազատ թողուցած տապարէքը մանելով՝ մեծ թէատրոնի մի վարչութեան ձեռնարկեց և 1643ին Կարոլոս Ա.էն ասպետութեան տիտղոսն առաւ։ Պաշտպանողականաց ժամանակ Միլտոն իւր կեանքն ազատեց, այն ալ փոխադարձաբար անոր կեանքն ազատեց Վերահաստատութեան ժամանակ։ Այս եղաւ առաջինը որ թէատրոնը պճնազարդելու և տեսարանները առաջօք փոփոխելու արհեստը մտցուց. իւր վարչութեանն էր որ Տիկին Սանտըրսըն առաջին անգամ անտարանի վրայ գերասանուհւոյ դեր կատարեց Դեզտէմոնէի*) անձնաւորութեամբ։

Սըր Վիլլիամ Տ'Ավընէնդ 1668 Ապրիլ 17ին մեռաւ, և իւր հետ շիջաւ վերջին ընձիւղ բանաստեղծին՝ որ զինի Աստուծոյ ամենէ շատ ստեղծողն էր։

*) Տե՛ս Օթելլօ։ Ծ. Թ.

# ՇԷՔՍՓԻՐԻ ԿՏԱԿԸ

([illegible])

---

*Ի քսանևհինգերորդում աւուր Մարտի, յամի թագաւորութեան Յակովբայ արքի Տեառն և Արքային մերոյ Անգղիոյ, ևայլն, չորեքտասաներորդի. և Սկովտիոյ քառասներորդ իններորդի:* **Յամի Փրկչին 1616.**

**Յանուն Աստուծոյ, Ամէն:**

**Ես՝ Վիլլիամ Շէքսփիր**, ծնեալ ի **Սթրաթֆորտ-Աբըն-Էվըն**, ի **Կէնդ**, որ ի՚կոմսութեանն **Վարվլիքի**, իմ (օրհնեալ է Աստուած) կատարեալ առողջութեանս եւ խելայիշութեանս մէջ՝ սոյնով իմ վերջին կտակս եւ հրիտակս կ'ընեմ եւ կը հրամանագրեմ, հետեւեալ կերպով եւ եղանակաւ. — այսինքն.

**Առաջին՝ Իմ** հոգիս՝ կը յանձնանեմ ի ձեռս **Աստուծոյ** իմ **Արարչին**, յուսալով եւ ապահովաբար հաւատալով որ իմ **Փրկչիս Յիսուսի Քրիստոսի** միայնակ շնորհաց միջնորդութեամբ, յաւիտենական կենաց մասնակից ըլլալու արժանանամ. եւ մարմինս՝ ի հող, ուրկէ որ շինուած է:

**Երկրորդ՝ Կը** տամ եւ կը հրիտակեմ իմ **Յուդիթ** աղջկանս հարիւր յիսուն փառնտ (լիրա*) **Անգղիական** օրինաւոր ստակ, որ հետեւեալ կերպով ու եղանակաւ հատուցուի իրեն. այսինքն, հարիւր փառնտը՝ ի պարտալոյծ իւր ամուսնութեան մասին, մահուանէս տարուան մի միջոցին մէջ, այն պայմանաւ որ ամեն մէկ փառնտի համար երկու շիլլինկ սակ տրուի, որքան ժամանակ որ նոյն գումարը մահուանէս ետք անհատոյց մնայ. եւ մնացորդ յիսուն փառնտն ալ, երբ ինք յանձնառու ըլլայ, կամ այնպիսի զոհացուցիչ ապահովութիւն տայ, որ այս իմ հրիտակագրիս խնամակալները պատշաճ դատեն որ ձգեն կամ քաշխեն իմ մահուանէս ետք իւր վրայ եկած կամ իւր մասին ինկած կամ ինկնելիք ստացուածքը կամ իրաւունքը, որ աւատահող կալուածք մի է իւր շրջակայիւքը, զետեղուած ու կեցած ի վերոյիշեալ **Սթրաթֆորտ-Աբըն-Էվըն**, ի նոյն կոմսութեան **Վարվլիքի**, կազմելով մասն կամ վարձահող յաւատակալուածութեան **Ռօվլինկթոնի**, իմ աղջկանս **Սիւզաննա** ([illegible]) **Հօլլի**՝ եւ իւր ժառանգաւորաց՝ միանիջենապէս:

*) Անգղ. ռսկի կամ քսան շիլլինկ:

Դարձեալ՝ Կը տամ եւ կը հրիտակեմ յիշեալ Ցուդիթ աղջկանս՝ հարիւր յիսուն փառնտ եա, Թէ որ ինք կամ իր մարմնական սերունդը՝ այս իմ հրիտակագրիս Թուականի օրէն երեք տարի ետք ողջ մնացած ըլլան որ ժամանակամիջոցին մէջ իմ հրիտակատարներս ըստ վերոյիշեալ սակի՝ մահուանս ժամանակէն սկսեալ հատուցանելու են տոկոսը. եւ Թէ որ յիշեալ ժամանակակէտին մէջ նէ մեռած ըլլայ՝ առանց մարմնական սերածին Թողլոյ, այն ժամանակ այս է կամքս*) որ վերոյիշեալ գումարէն հարիւր փառնտը կը տամ եւ կը հրիտակեմ. Եղիսաբէթ Հօլլ քեռաղստերս. եւ յիսուն փառնտն ալ, իմ հրիտակատարներս տոկոսի դնեն իմ քրոջս Ցովհաննա Հարդի կենդանուԹեան բոլոր ժամանակ ու անկէ արդինացած շահ եւ օգուտը՝ յիշեալ Ցովհաննա քրոջս հատուցանեն, եւ անոր մահուանէ ետք յիշեալ յիսուն փառնտը յիշեալ քրոջս զաւակաց մէջ մնայ, որ հաւասարապէս բաժնեն իրենց մէջ. բայց Թէ որ վերոյիշեալ երեք տարիէն ետք յիշեալ Ցուդիթ աղջիկս կամ իր մարմնէ առաջ եկած որ եւ է սերածին մի ողջ մնացած ըլլայ, այն ժամանակ, այս է իմ կամքս, եւ այսպէս կը հնարօրինեմ եւ կը հրիտակեմ որ իմ հրիտակատարներս եւ խնամակալներս յիշեալ հարիւր յիսուն փառնտը՝ գործ ածեն ի շահաւորագոյն օգուտ իր եւ իր սերնդեան, եւ դրամագլուխը չյանձնուի իրեն, որքան ժամանակ որ ամուսնացած եւ տանտիկին եղած ըլլայ. բայց կամքս այս է, որ իր բոլոր կենաց ժամանակ տարուէ տարի իր սակին ընդունի, եւ իր մահուանէ ետք՝ յիշեալ դրամագլուխը եւ սակը հատուցանի իր զաւակաց, Թէ որ ծզած ըլլայ, եւ եԹէ ծզած չըլլայ, իմ մահուանէս ետք յիշեալ ժամանակակէտին մէջ ողջ մնացած միջոցին՝ իր հրիտակատարաց կամ գործակատարաց. միայն Թէ, Թէ որ իր ամուսին եղած մարդը, որու հետ յիշեալ երեք տարուան վերջը կամ անկէ (ժամանակ մի) ետք կարգուած է, քրոջս եւ իր մարմնոյ սերնդեան բաւականապէս ապահովուԹիւն տայ այնպիսի կալուածով որ այս իմ հրիտակովս իրեն կտակած կալուածին համապատասխան գայ, եւ իմ հրիտակատարներս ու խնամակալներս ալ այնպէս լինելը իրաւադատեն. այն ժամանակ կամքս այս է, որ վերոյիշեալ հարիւր յիսուն փառնտը յանձնուի այնպիսի ապահովուԹիւն տուող էրկան մի որ զայն ըստ կամաց գործ ածէ:

Դարձեալ՝ Կը տամ եւ կը հրիտակեմ յիշեալ Ցովհաննա քրոջս քսան փառնտ եւ հանդերձներս, որը տրուին եւ յանձնուին իրեն մահուանէս տարուան մի միջոցին մէջ. եւ կը հնարօրինեմ ու կը հրիտակեմ տունը իր ամեն պարագայիւք, որ ի Ստրաթֆորտ, իր բնական կենաց համար, ուր ինք կը բնակի, տասներկու բէնս տարեկան վարձով:

*) Will, Կտակ կամք՝ նոյնպէս և խօսք ըսել է։

Գուբյեու՝ Կը տամ եւ կը հրխտակեմ իւր երեք որդւոց Վիլլիամ Հարդի, — Հարդի եւ Միքայէլ Հարդի, ամեն մէկուն հինգական փառնտ, հատուցանելի՝ մահուանէս մէկ տարուան միջոցին մէջ:

Գուբյեու՝ Կը տամ եւ կը հրխտակեմ յիշեալ Եղիսաբէթ Հօլլի՝ բոլոր արծաթեղէններս զորս ունիմ հիմա, բաց ի արծաթեայ խոշոր եւ ոսկեզօծ արկղիկներէս՝ այս հրխտակիս եղած Թուականին:

Գուբյեու՝ Կը տամ եւ կը հրխտակեմ վերոյիշեալ Սթրաթֆօրտի աղքատաց՝ տասն փառնտ. Պ. Թոմաս Քըմպի՝ իմ սուրս. Մեծապատիւ Թոմաս Րըսըլի՝ հինգ փառնտ. եւ Ֆրանսիս Գօլլինսի՝ Վարվլիք գիւղաքաղաքին, ի կոմսութեանն Վարվլիքի որ ի Կէնդ, տասն երեք փառնտ, վեց շիլլինկ եւ ութ քէնս, հատուցանելի՝ մահուանէս մէկ տարուան միջոցին մէջ:

Գուբյեու՝ Կը տամ եւ կը հրխտակեմ Համլէդ (Համնէդ) Սատլըրի՝ քսան եւ վեց շիլլինկ եւ ութ քէնս, որ մատանի մի գնուի իրեն. Վիլլիամ Րէյնօլտսի՝ որ ի Կէնդ, քսան եւ վեց շիլլինկ եւ ութ քէնս, որ մատանի մի գնուի իրեն. իմ սանիս՝ Վիլլիամ Վօքըրի՝ քսան շիլլինկ ոսկեդրամ. Անթօնի Նաշի՝ որ ի Կէնդ, քսան եւ վեց շիլլինկ եւ ութ քէնս. եւ իմ ընկերակցացս՝ Ճօն Հէմինճի՝ Րիչըրտ Պըրպէճի՝ եւ Հէնրի Գօնտէլի՝ ամեն մէկուն քսան եւ վեցական շիլլինկ եւ ութ քէնս, որ մատանի գնուի իրենց:

Գուբյեու՝ Կը տամ, կը կտակեմ, կը հրխտակեմ եւ կը հնարօրինեմ իմ աղջկանս Սիւզաննա Հօլլի՝ որպէս զի լաւ եւս կարողանայ որ կարգադրէ եւ առաւել եւս կարգադրելու յաջողի, բոլոր ընչագլուխ ստացուածքս կամ կալուածքս, ամեն պարագայիւք, որ ի վերոյիշեալ Սթրաթֆօրտ, որ Նիւ Փլէյս կ՚անուանի, որու մէջ ես հիմակ կը բնակիմ. եւ երկու ստացուած կամ կալուածք՝ իրենց պարագայիւք, որք վերոյիշեալ Սթրաթֆօրտ գիւղաքաղաքին մէջ տեղերը Հէնլիյ փողոցին մէջ զետեղուած, գտնուած ու կեցած են. եւ իմ բոլոր համբարներս, ծիարաններս, մրգաստաններս, պարտէզներս, արտերս, եւ որ եւ իցէ ժառանգընչութիւնքս, որ զետեղուած, կեցած ու գտնուած են, կամ կրնան գտնուած, պահուած, պահպանուած, կամ առնուած ըլլալ վերոյիշեալ Վարվլիքի կոմսութեան՝ Սթրաթֆօրտ-Աբըն-Էվընի, Հին Սթրաթֆօրտի, Պիշըբթընի ու Վէլքըմի եւ ասոնց որ եւ իցէ քաղաքաց, աւանաց, գիւղիկներու, դաշտերու եւ արտավայրերու մէջ. նոյնպէս եւ բոլոր կալուածքս ու ստացուածքս իրենց պարագայիւք, որոնց մէջ Ճօն Րօպինսըն անուն մէկը կը բնակի, զետեղուած, կեցած ու գտնուած Պլաքֆրայարի մէջ ի Լոնտոն՝ մերձ ի Վարտրօպ. եւ բոլոր միւս երկիրներս, ստացուածներս, եւ որ եւ է ժառանգընչութիւնքս, որ վայելէ ու միայնակ տէր ըլլայ բոլոր վերոյիշեալ բարեաց իրենց ամեն պարագայիւք, նոյն Սիւզաննա Հօլլ, ցորչափ իւր բնական կեանքը տեւէ. իսկ իւր մահուանէ ետք՝ օրինաւորապէս իւր մարմնէն

սերածնեալ անդրանիկ արու զաւակին. եւ այն անդրանիկ որդիէն սերածնեալ արու ժառանգաց. եւ ի պակասիլ այսպիսի սերունդի մի, օրինաւորապէս իւր մարմնէն սերածնեալ երկրորդ արու զաւակին, եւ այն օրինաւորապէս սերածնեալ յիշեալ երկրորդ որդւոյն մարմնոյ արու ժառանգաց. եւ ի պակասիլ այսպիսի ժառանգաց, յիշեալ Սիւզաննայի մարմնէ օրինաւորապէս սերածնեալ երրորդ արու զաւակին, եւ այն օրինաւորապէս սերածնեալ յիշեալ երրորդ որդւոյն մարմնոյ արու ժառանգաց. եւ ի պակասիլ այսպիսի սերնդեան, նոյնը գործադրուի եւ մնայ իւր մարմնէն օրինաւորապէս մէկմէկու ետեւէ սերածնեալ չորրորդ, հինգերորդ, վեցերորդ եւ եօթներորդ արու զաւակաց, եւ յիշեալ չորրորդ, հինգերորդ, վեցերորդ եւ եօթներորդ զաւակաց մարմիններէն օրինաւորապէս սերածնեալ արու ժառանգաց, այնպիսի եղանակաւ՝ որով յառաջն սահմանուած է եւ կը մնայ իւր մարմնոյ առաջին, երկրորդ եւ երրորդ որդւոց եւ անոնց արու ժառանգաց համար. եւ ի պակասիլ այսպիսի սերնդեան, յիշեալ ստացուածքները յիշեալ քեռադստերս Հօլլի, եւ անորմէ օրինաւորապէս սերածնեալ արու ժառանգաց ըլլան եւ մնան. եւ ի պակասիլ այսպիսի սերնդեան՝ իմ Ճուդիթ աղջկանս եւ իւր մարմնէն օրինաւորապէս սերածնեալ արու ժառանգաց. եւ ի պակասիլ այսպիսի սերնդեան՝ իրաւացի ժառանգացն իմոց՝ յիշեալ Վիլլիամ Շէքսփիրի յաւիտեան:

Դարձեալ՝ Կը տամ իմ կնոջս՝ իմ երկրորդ ամենալաւ անկողինս իւր կահիւք:

Դարձեալ՝ Կը տամ եւ կը հրիտակեմ յիշեալ Ճուդիթ աղջկանս արծաթեայ ոսկեզօծ լայնաբերան տաշտս: Բոլոր մնացորդ ինչքս, անձնական իրքս, վարձերս, պնակեղէններս, զոհարեղէններս եւ առտնին մթերքս՝ պարտքերս եւ նուիրաբաշխութիւններս հատուցուելէն եւ յուղարկաւորութեանս ծախքերը տրուելէն ետք՝ կը տամ, կը բաշխեմ եւ կը հրիտակեմ իմ փեսայիս Ճօն Հօլլի՝ որ ի Սէնդ եւ իմ աղջկանս Սիւզաննայի՝ իւր կնոջ, զորս կը կարգեմ եւ կ'ընեմ հրիտակատար այս իմ վերջին կամացս եւ կտակիս: Եւ կը թախանձեմ ու կը պարտաւորեմ յիշեալ Մեծապատիւ Թոմաս Ռըսըլը եւ Ֆրանսիս Գօլլինսը որ ի Սէնդ, որ սոյնի խնամակալքն ըլլան: Ասկէ առաջ եղած բոլոր կտակներս կը յետակոչեմ եւ զայս կը հրատարակեմ իմ վերջին կամքս եւ կտակս: Ի վկայութիւն որոյ, ես իմ ձեռօքս ստորագրեցի յաւուր եւ յամին վերոյգրեալ ի սկզբան:

յինէն
ՎԻԼԼԻԱՄ ՇԷՔՍՓԻՅՐ

Սոյնի հրատարակման վկայք.
ՖՐԱՆՍԻՍ ԳՕԼԼԻՆՍ·
ՃՈՒԼԻՈՍ ՇՕ·
ՃՕՆ ՌՕԲԻՆՍԸՆ·
ՀԸՄՆԷԴ ՍԸՏԼԸՐ·
ՌՕԲԷՐԴ ՀՈՒԸԹՔՕԹ:

Իւր գործերը մահուանէն ետք անկարգաբար տպուելնուն համար, ճշդիւ չի-գիտցուիր թէ ինչ յաջորդականութեամբ հեղինակած է։ Երեւելի տիպերն՝ Ճօնսընի, Բօբի, Րօվլի, Սթիվընսի, Մալօնի, Վարպըրթընի, Րիտի և Նայթի օրինակներն են. բայց այս անգղիացի հեղինակներուն տպագրածէն ալ աւելի ընդարձակագոյն (10 հատոր) և մեկնութեամբ լի տիպը՝ 1773ին Ճօնսըն և Ստիվընսի աշխատակցութեամբ ըրածնին է, որոյ աւելի կատարելագործեալ տիպը 1783-93ին ի լոյս ելած է։

Բաց ի իւր թատերգական բանաստեղծութիւններէ, ունի նաեւ քանի մի քերթուածներ, որոց մէջ գնահատուած են Աֆրոդիտէ և Ադոնիս, Լուկրեցիայի առեւանգումը, Տարփաւորի մի տրտունջը, Եռանդուն ուխտաւորը և մի քանի ուրիշ նուագերգութիւններ։

Իւր երկերը ընդհանրապէս չափաբերեալ են, երբեմն նմանայանգ և երբեմն աննմանայանգ տողերով և բաց ի Ցօվհաննէս թագաւորէ, Ռիքարտոս Բ.է, Հէնրիկոս Զ.է և Տիտոս Անդրոնիկոսէ, մնացորդ խաղից մէջ տեղ տեղ քիչ մ'արձակ խառնած է. այլ անհաւատալի կերպով կրնայ հաստատուիլ որ իւր ոճը վսեմ քնքուշ ըլլալէ զատ՝ խրթին է, մանաւանդ միջանկեալ մանր մունր ատենաբաններուն։

Զանազան կրից և մոլութեանց վրայ գրած է հետեւեալները՝ յաղագս

փառասիրութեան, ցուցամոլութեան, անմիաբանութեան, նախանձու և զանազան կրից՝ Մագպէթ, Համլէթ, Յուլիոս Կեսար և Հենրիկոս Զ.

Վրէժխնդրութեան, ոխակալութեան, յախուռն կրից և անգթութեան՝ Տիտոս Անտրոնիկոս, Տրոյիլոս եւ Կրէսիտէ:

Ապերախտութեան և հաստատամտութեան՝ Երազ յամառնամէջ գիշերի, Հռոմէոս, Չափ ընդ չափու, Պերիկղէս և Երկու ազնուականք Վերոնայի:

Զեղխութեան, անգթութեան, փառասիրութեան և ապահութեան՝ Հենրիկոս Ը.

Կեղծաւորութեան, խաբէութեան և ննգաւորութեան՝ Գիմբէլին, Անտոնիոս եւ Կղէոպատրա:

Իղձայրատեւութեան, եղբայրսիրութեան և անիրաւութեան՝ Ըստ հաճոյից:

Իղձայրատեւութեան և համբերատարութեան՝ Փոթորիկ:

Դիւրահաւանութեան, անուղղայատութեան և խարդախասիրութեան՝ Օթելլոս:

Ծերոց ինքնասիրութեան և ծնողաց չհասկիրութեան՝ Վինտզըրի Զուարճասէր Խաթուններ:

Խենդութեան և ունայնասիրութեան՝ Երկոտասաներորդ գիշեր:

Բարեբարոյութեան և քմահաճութեան՝ Խռուհիոյն զգաստանալը:

Վրէժխնդրութեան և հնարագիտութեան՝ Համլէթ, Վենետիկի վաճառականը:

Նախանձու և վրէժխնդրութեան՝ Ձմեռուան Պատմութիւն և Գորիոլանոս կամ Կորիողանոս:

Անզուսպ կրից՝ Չափ ընդ չափու:

Զաւակասիրութեան՝ Կատակերգութիւն Սխալանաց:

Զաւակաց ապերախտութեան՝ Լէար Թագաւոր:

Անհլութեան, ոխակալութեան ու հաստատամտութեան՝ Հռոմէոս:

Դաւաճանութեան և փոփոխամտութեան՝ Յովհաննէս Թագաւոր:

Անխորհրդութիւն՝ Հենրիկոս Գ.

Զարութիւն՝ Հենրիկոս Ե.

Անբարոյականութիւն և անցաւորութիւն՝ Ռիչարտոս Գ.

Շռայլութիւն կամ անխոհեմ առատաձեռնութիւն՝ Տիմոն Աթէնացի:

Զրպարտութիւն՝ Բազում աղմուկ ընդ ոչինչ:

Ուխտադրուժութիւն՝ Սիրոյ կորուսեալ ջանքեր:

Յարատեւութիւն՝ Ամէն բան լաւ որոյ վերջ բարի:

Անցաւորութիւն՝ Ռիչարտոս Բ.

Գաղտնապահութիւն («Չէ ինչ ծածուկ որ ոչ յայտնեսցի») և վրէժխնդրութիւն՝ Համլէթ:

Դերախաղութիւն անձնաւորութեանց մէջ այնքան բնական կը ներկայացնէ որ իւր ճարտարաձայլ վարպետութեան վրայ կը հիանամք։ Տե՛ս, Վենետիկի վաճառականին մէջ՝ Շայլօքի դերը, կարծես թէ այսօրուան Հրէի մի կերպերը և խօսքերը գործ կ'ածէ, որ կը ներկայի իբր որոշամիտ վրէժխնդիր։ Իւր ներկայացուցած միւս անձնաւորութեանց մէջ կը փայլեցնէ հետեւեալները։ Համլէթ՝ իբր խորունկ մտածող և անըմբռնելի դիւցազն. Ցակովս՝ իբր խառնակիչ, բանսարկու և չարակամ. Բօրթիա՝ իբր խորագէտ և հնարագիւտ. Դէզդէմոնէ՝ իբր տիպար անմեղութեան և հաւատարմութեան. Ճիւլիէդդա, Իզապէլ, Միրանտա՝ սիրոյ և առաքինութեան. Կատարինէ Թագուհի՝ անյիշաչարութեան. Մագպէթ՝ իբր անյագ փառասէր։

Այս ալ յիշեմք որ Շէքսփիրի ժամանակները թատրոնի վրայ կանանց դերը այր կը կատարէին։

Ինք՝ Մոլիէրի պէս բժշկաց հակառակ չէ, թէեւ անոր պէս պաշտօնութիւնն ու կեղծաւորութիւնը կը պախարակէ։

Շէքսփիր այնքան սիրելի է իւր ազգին որ շատ ընկերութիւններ և հաստատութիւններ իւր անուամբ յիշուած են, ինչպէս՝ Շէքսփիրեան ընկերութիւն, Շէքսփիրեան քլըպ, Շէքսփիրեան ժողովարան, Շէքսփիրեան թէատրոն, Շէքսփիրեան արձարան եայլն։

Այս սքանչելի հեղինակին վրայ այլ աւելի ինչ կրնան գրել մեզ պէս տկար գրիչներ, արդէն երեւելի բանաւէրք Եւրոպիոյ՝ հիացմամբ գոված են զինք, անոնց մէջ է նաեւ իւր վրայ սքանչացողն Հիւկօ՝ որոյ հանճարին վրայ աշխարհ կ'սքանչանայ։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Տեսարանը՝ Վերոնայի մէջ, Մոնդակեանց եւ Գափուլեանց երկու համառակորդ գերդաստանաց կողմնակալներուն մէջ ծագած կռիւով մի կըբացուի, որոց գլխաւորաց անունները Մոնդակէս ու Գափուլէտ են: Մոնդակէսի որդին Հռոմէոս՝ պինտ տարփալի սիրով Հռոզալին անունով աղջկան մի հետ կապուած է, բայց Պէնվօլիօ անունով իւր բարեկամին խրատիւքը Գափուլէտի պարահանդէսը երթալով, երեսի դիմակը կը հանէ, ու կը սիրահարի Ժիւլիէդդայի՝ որ Գափուլէտի աղջիկն է: Իւր բոցակէզ սիրէն թելադրուած, գիշեր ատեն Գափուլէտի պարտէզի պատին վրայ կը մագլցէ ու կը լսէ Ժիւլիէդդայի զանգատները պատուհանին մէջ. որ իմացած է եղեր թէ իւր սէրը գրաւող երիտասարդին անունը Հռոմէոս է, եւ իւր հօրը թշնամւոյն զաւակն է: Այսոր հետեւած սիրախօսութեանց մէջ՝ Ժիւլիէդդա խօսք կը տայ Հռոմէոսի որ հետեւեալ օրը իւր դայեկուհին խրկէ, որպէս զի իմանայ իրմէ թէ իրենց փոխադարձ սիրոյ նպատակը գլուխ հանելու համար ինչ միջոց պիտի բանեցնէ: Հռոմէոսի համոզմամբը, Հայր Լաւրենտիոս անուն ֆրանչիսկեան կրօնաւոր մի. առանց իրենց ազգականաց գիտութեան, զիրենք կը պսակէ: Պսակը կատարուելէն անմիջապէս ետք, Հռոմէոս՝ իւր Մերկուտիոս եւ Պէնվօլիօ բարեկամացը հետ, Տիկին Գափուլէտի եղբօրորդի Դիպալտոսի կը հանդիպի, որ իւր կողմնակիցներովը՝ վերոյիշելոց հետ կռիւի կ'ելնէ ու մարտութեան մէջ Մերկուտիոս Դիպալտոսէ կ'ըսպաննուի եւ հետեւաբար Դիպալտոս ալ Հռոմէոսէն կ'ըսպաննուի, որում վրայ Հռոմէոս աքսորանքի կը դատապարտուի: Պարիս՝ Վերոնայի իշխանին ազգականը, Ժիւլիէդդայի ծնողացմէ իրեն էրիկ կ'ընտրուի, բայց աղջիկն այս լը՛սածին պէս, կրօնաւորին քով կ'երթայ, եւ անոր խրատիւքը դեղաջուր մի կ'առնէ որ մահահանգոյն թմբրութիւն մի կը բերէ վրան, այնպէս որ, երբ հարսանեաց օրը կը գայ որ Պարիսի հետ կարգուի, խմած դեղին պատճառաւ մեռած կարծուելով, Գափուլեանց գերեզմանատան մէջ կը թաղուի: Այս միջոցներուն, կրօնաւոր Հայրը ըստ իւր խոստման, մարդ կը հանէ Հռոմէոսին (որ Մանդուա քաշուած է) որ շուտով Վերոնա գայ ու Ժիւլիէդդայի արթննալու ժամանակ զայն հետը Մանդուա տանի. բայց դիպուածով մի, կրօնաւորին խրկած մարդը ճամբան կ'արգիլուի ու չկրնար նամակը հասցնել, սակայն Հռոմէոսի ծառայն

կը վազէ շուտով իւր տիրոջ քով եւ Ժիւլիէդդայի կարծեցեալ մահուան լուրը կը տայ իրեն։ Հռոմէոս, յուսահատութենէ՝ մահադեղ կը գնէ ու Վերոնա կը գայ, եւ իւր ծառային առաջնորդութեամբը Ժիւլիէդդայի դրուած գերեզմանը կ'երթայ ու առանձին ներս կը մտնէ։ Բայց այս տեղւոյս մէջ Պարիսի հանդիպելով, որ այն ալ Ժիւլիէդդայի վրայ ողբալու համար եկած է եղեր, իրարու հետ խօսքի կը գան, եւ Հռոմէոս հրապուրուելով Պարիսէ կ'ըսպաննէ հոնտեղ զայն։ Ասոր վրայ Հռոմէոս Թոյնը կը խմէ ու կը մեռնի։ Անմիջապէս ետք Հայր Լաւրենտիոս վրայ կը հասնի այն միջոցին ուր Ժիւլիէդդա վերակենդանացած՝ բայց Հռոմէոս մեռած կը գտնէ։ Կրօնաւորը դրսէն պահապաններուն աղմուկը լսելով կը վախնայ կը փախչի ու Ժիւլիէդդան հոն կը Թողու, որ իւր յուսահատութեան վերջին վայրկենին՝ ինքզինք կ'ըսպաննէ եւ իւր դժբաղդ էրկանը վրայ կ'ինկնի ու կը մեռնի։ Երկու հակառակորդ գերդաստանները, այս լսելով, իշխանին հետ նոյն տեղ կը վազեն կը հասնին, եւ իրենց առելութեանց ապերջանիկ պտուղը տեսնելով, իշխանէն կը համոզուին, որ նորէն փոխադարձ սիրով մէաբանին։

---

## ԲԱՐՈՅԱԿԱՆ

Ընթերցողը այս խաղարկութեանս մէջ [illegible] երեւան կը հանէ ժա[illegible] [illegible] յաղթանակի [illegible], և անոնց պատճառած անգութ [illegible], [illegible] չ'[illegible] Հռոմէոսի և Ժիւլիէդդայի մահուանց մէջ, որոնք [illegible] [illegible] [illegible] ու նման, [illegible] իրենց [illegible] [illegible] [illegible]՝ [illegible] [illegible] և [illegible] [illegible]՝ [illegible] [illegible] [illegible] [illegible], [illegible] իրենց [illegible] [illegible] [illegible]։

---

# ԱՆՁԻՆՔ



ԷՍԿԱՂՈՍ, Վերոնայի իշխան։
ՊԱՐԻՍ, Պատանի ազնուական մը, իշխանին ազգական։

ՄԱՆԴԱԿԷՍ / ԳԱԲՈՒԼԷՏ } Իրարու հակառակ երկու գերդաստաններու գլխաւորները։

ԾԵՐ ՄԻ, Գաբուլէտի հօրեղբայր։
ՀՌՈՄԷՈՍ, Մոնդակէսի որդի։
ՄԵՐԿՈՒՏԻՈՍ, Իշխանին ազգականը եւ Հռոմէոսի բարեկամ։
ՊԷՆՎՈԼԻՈ, Մոնդակէսի եղբօրորդի եւ Հռոմէոսի բարեկամ։
ԴԻՊԱԼՏՈՍ, Տիկն Գաբուլէտի եղբօրորդի։
ՀԱՅՐ ԼԱՒՐԵՆՏԻՈՍ, Ֆրանչիսկեան կրօնաւոր մը։
ՀԱՅՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ, Կրօնաւոր՝ նոյն կարգէն։
ՊԱԼԹԱԶԱՐ, Հռոմէոսի ծառայ։

ՍԱՄՓՍՈՆ / ԳՐԻԳՈՐ } Գաբուլէտի ծառայք։

ԱԲՐԱՀԱՄ, Մոնդակէսի ծառայ։
ԴԵՂԱՎԱՃԱՌ ՄԻ։
ԵՐԵՔ ԵՐԱԺԻՇՏՔ։
ՊԱՐԵՐԳՈՒՔ։
ՄԱՆՉ ՄԻ, Պարիսի Մանկլաւիկ։
ՊԵՏՐՈՍ, Գործակալ մ։

ՏԻԿԻՆ ՄՈՆԴԱԿԷՍ, Մոնդակէսի կին։
ՏԻԿԻՆ ԳԱԲՈՒԼԷՏ, Գաբուլէտի կին։
ՃԻՒԼԻԷԴԴԱ, Գաբուլէտի դուստր։
ԱՆԿԵԼԻՔԱ, Ճիւլիէդդայի սնուցիչը։

Վերոնայի քաղաքացիք. Երկու հակառակ Գերդաստանաց ազգական զանազան Մարդիկ ու Կանայք. Դիմակաւորք. Պահապանք. Պահանորդք եւ Սպասաւորք։

ՏԵՍԱՐԱՆԸ՝ *խաղարկութեան մեծ մասին մէջ՝ Վերոնա է. անգամ մ'ալ՝ հինգերորդ Արարուածին մէջ, Մանդուա։*

# ՀՌՈՄԷՈՍ ԵՒ ՃՈՒԼԻԷԴԴԱ.

## ՆԱԽԵՐԳԱՆՔ

*Երկու գերդաստանք, երկուքն հաւասար աստիճանով նման*
*Վերոնայի մէջ, ուր որ կը բերենք այժմ մեր տեսարան,*
*Հին ատելութեամբ հակառակելով նոր կռիւ յարձակէր,*
*Ազնիւ արիւնը անմաքուր կ'ընեն ազնուական ձեռքեր.*
*Այս երկու անհաշտ թշնամիներուն ընդերքին մէջէն*
*Աստղով վիճակեալ զոյգ մի տարփաւոր աշխարհէն կեանք կ'առնեն.*
*Որոնց տարաբաղդ ու ցաւակցելի անկն ու կործանումն,*
*Իրենց մահուամբը՝ կը թաղէ ծնողաց հակառակութիւնն:*
*Իրենց մահանշան սիրոյն սոսկալի անցքն ու դիպուածը,*
*Եւ իրենց ծնողաց սոսկ կատաղութեան շարունակ խէթը,*
*Որ, իրենց զաւկաց վախճանին, օգուտ բնաւ չէր ընէր,*
*Լոկ երկու ժամուան աս և տուրքն է թատերգութեան մեր.*
*Որուն թէ որ քիչ մ'ականջօք ժուժկալ աղէկ մտիկ ընես՝*
*Պակասութիւնը, մեր ջանքն կ'աշխատի շտկելու նոյնպէս:*

## ԱՐԱՐՈՒԱԾ Ա.

### ՏԵՍԱՐԱՆ Ա.

*Հասարակաց հրապարակ մի:*

ՍԱՄՓՍՈՆ, ԳՐԻԳՈՐ, սուսերով ու վահաններով զինուած:

**ՍԱՄՓՍՈՆ.** Գրիգոր, մաս-որ ածխանոց ենք մացեր:
**ԳՐԻԳՈՐ.** Մ'ըներ, դուն ալ, ըսես նէ որ ածխագործ պիտ' ըլլանք:
**ՍԱՄՓ.** Ըսել կ'ուզեմ որ, բարկութեան ելնենք նէ՝ սուրերը կըր-
նանք քաշել:

ԳՐԻԳ. Հո՜ն, քանի որ ողջ ես, պարանոցդ վզէդ կապէն դուրս քաշէ: *)

ՍԱՄՓ. Բարկութեան ելնեմ նէ, իսկոյն կը զարնեմ:

ԳՐԻԳ. Բայց զարնելու համար արագաշարժ չես:

ՍԱՄՓ. Մոնդակեան գերդաստանին մէկ շունը՝ իս բարկութեան կը շարժէ:

ԳՐԻԳ. Շարժիլը՝ տեղէն քաշուիլ է, ու քաջ ըլլալը՝ տեղը կենալն է. ուրեմն թէ որ կը շարժիս՝ ըսել է որ տեղէդ կը փախչիս:

ՍԱՄՓ. Այն գերդաստանին շներէն մէկն իս պիտի դրդէ †) որ կայնիմ. այն ժամանակ ես ալ Մոնդակէսի ո՛ր և իցէ մարդուն կամ աղջկան պատերուն վրայ կ'ինկնիմ:

ԳՐԻԳ. Այդ զքեզ տկար գերի մը կը ցուցնէ, ինչու որ տկարները պատերուն տակէն կ'երթան:

ՍԱՄՓ. Իրաւ ես. անոր համար է, որ կանայք աւելի տկար ըլլալնուն, պատին կողմ կը քաշուին. — վասն որոյ ես ալ Մոնդակեանց մարդիկը պատէն ասդին պիտի քաշեմ, ու իրենց աղջկունքը պատին վրայ պիտի հրեմ:

ԳՐԻԳ. Կռիւը՝ մեր տէրանց, և մեր՝ ու իրենց ծառայից մէջն է:

ՍԱՄՓ. Ամենը մէկ խօսք է. ես իմ բռնաւորութիւնս պիտի ցուցնեմ. երբոր մարդոց հետ ծեծկուիմ, աղջկանց հետ ալ անգթութեամբ պիտի վարուիմ. իրենց գլուխը պիտի կտրեմ:

ԳՐԻԳ. Աղջկա՞նց գլուխը.

ՍԱՄՓ. Անշուշտ, կոյս աղջկանց գլուխը, կամ իրեց կուսական գլուխը. ի՛նչ մտքի կ'ուզես նէ առ:

ԳՐԻԳ. Իրենք մտքի առնել պէտք են, իրենց զգալը:

ՍԱՄՓ. Իս զգան պիտի, քանի՛ որ կենալու կարող ըլլամ. իս կը ճանչնան որ հաղուագիւտ շանոսկոր մ'եմ:

ԳՐԻԳ. Հասկցանք, ձուկ չես եղեր. թէ որ միս ունենայիր քեզ

*) Ածխանոց, ածխափորձ, Բարձրաբերան և վեր-վար, իրարմէ գրեթէ քիչ տարբեր արտասանութիւն մ'ունին Անգղ. մէջ: Ծ. Թ.

†) Բարձրաբերան ելնել, արտաքոյ ըլլալ, շարժել, դրդել, Անգղ. մէջ ամէնն ալ մէկ բառով յայտնուած է, որ է Թու մուվ: Ծ. Թ.

Հեղինակնիս՝ իր խաղարկութեանց մէջ սանկ բառախաղութիւններ կ'ընէ յաճախ:

*թաղած ու չորցուցած ապուխտ պիտի կանչէին ։ Քաշէ՛ սուրդ, նայէ՛ Մոնդակեանց մարդոցմէ երկու հոգի կը գան ։*

ԱԲՐԱՀԱՄ և ՊԱԼԹԱԶԱՐ կը մտնեն.

ՍԱՄՓ. *Սուրս քաշեր եմ. կռուի՛նք, ես քեզ կռնակ կ'ըլլամ ։*

ԳՐԻԳ. *Ի՞նչպէս. կռնակդ դարձունես ու փախչիս ։*

ՍԱՄՓ. *Ինձմէ մի՛ վախնար դուն ։*

ԳՐԻԳ. *Չէ՛, հաւատացիր կը վախնամ ։*

ՍԱՄՓ. *Մենք իրաւունքը մեր կողմ քաշենք. թո՛ղ սկսին ։*

ԳՐԻԳ. *Ես քովերնէն անցած ժամանակս դէմքս կը ծռմրկեմ. ու իրենք ուզեն վրանին առնեն, ուզեն չառնեն ։*

ՍԱՄՓ. *Ու կը համարձակի՛ն որ. ես իմ բթամատս կը խածնեմ իրենց վրայ. թէ որ տանին՝ շատ բան, իրենց համար նախատինք մ'է ։*

ԱԲՐԱՀԱՄ. *Մե՞ր վրայ բթամատդ կը խածնես, պա՛րոն ։*

ՍԱՄՓ. *Ես իմ բթամատս կը խածնեմ, պա՛րոն ։*

ԱԲՐ. *Մե՞ր վրայ բթամատդ կը խածնես, պա՛րոն ։*

ՍԱՄՓ. *(Գրիգորին) Դատաստանը մեր կողմը կ'ըլլա՞յ, հա՛ ըսեմ նէ ։*

ԳՐԻԳ. *Չէ՛ ։*

ՍԱՄՓ. *Չէ՛, պարոն, ձե՞ր վրայ բթամատս չեմ խածներ, պա՛րոն. բայց բթամատս կը խածնեմ, պա՛րոն ։*

ԳՐԻԳ. *Կռի՞ւ կ'ուզէք, պա՛րոն ։*

ԱԲՐ. *Կռի՞ւ ըսիք, պա՛րոն. չէ՛, պա՛րոն ։*

ՍԱՄՓ. *Թէ որ կ'ուզէք, պա՛րոն, կայներ եմ. ձեր տէրերս տանձ չեն ժողուեր ։ Իմ ալ տէրս, ձերինին պէս ազնուական մ'է ։*

ԱԲՐ. *Սանկ ըսէք ։*

ՍԱՄՓ. *Միտքդ ի՞նչ է, պա՛րոն ։*

ՊԵՆՎՈԼԻՈ հեռուանց կը տեսնուի ։

ԳՐԻԳ. *Ի՞նչ ըսիք — սա՛նկ ըսէ ըսի՛ք. ահա՛ տիրոջս ազգականներէն մին կը գայ ։*

ՍԱՄՓ. *Հրամմեցէք, սա՛նկ ըսէք ըսի, պա՛րոն ։*

ԱԲՐ. *Սուտ կը խօսիք ։*

ՍԱՄՓ. Թէ որ մարդ էք, քաշեցէք, — Գրիգոր, ցուցուր զէնքերուդ վարպետօրէն զարնուածքները։ (կը կռուին)

ՊԷՆՎՕԼԻՕ. Խելօք կեցէք, յիմարնե՛ր. սուրերնիդ տեղերնին դրէք. ըրածնիդ չէք գիտեր։

ՏԻՊԱԼՏՈՍ կը մտնէ։

ՏԻՊԱԼՏՈՍ. Ատ ի՞նչ է, դուն ալ այս վատաբարոյ գիւղացւոց մէջ խօթուեր ես. դարձի՛ր, Պէնվօ՛լիօ, ու մահդ տե՛ս։

ՊԷՆ. Ես խաղաղցնել կ'ուզեմ. սուրդ տե՛ղը դիր, կամ այնպէս մի՛ գործածէ զայն՝ որ սա մարդիկն ինձմէ զատուին։

ՏԻՊ. Ադ ի՞նչ խօսք է. սուրդ քաշեր ես, ու հաշտութեան խօսք կ'ընես։ Ես այդ խօսքը կ'անարգեմ, ինչպէս որ կ'անարգեմ դժոխքը, բոլոր Մոնթակեանները և զքեզ. ինքզինքիդ եկո՛ւր, լի՛րբ։ (կը կռուին)

Երկու դերդաստանաց զանազան կողմնակիցներ կու գան ու կռուոյն մէջ կը մտնեն. անկէ ետք ՔԱՂԱՔԱՑԻՔ բիրերով վրայ կը հասնին։

Ա. ՔՂՔ. Պահապաննե՛ր, նիզակնի՛դ, զէնքերնի՛դ. կողմնակա՛նք, զարկէ՛ք. գետի՛ն զարկէք։ Անկցի՛ն Գաբուլեանք։ Անկցի՛ն Մոնդակեանք։

ԳԱԲՈՒԼԷՏ, իր տնեկազգեստով. և ՏԻԿԻՆ ԳԱԲՈՒԼԷՏ։

ԳԱԲ. Աս ի՞նչ աղմուկ է։ — Բերէ՛ք իմ երկայն սուրս, հօ՛։

ՏԻԿ. ԳԱԲ. Ցո՛ւպ մը, ցո՛ւպ մը. — ի՞նչ սուրդ կ'ուզես։

ԳԱԲ. Սո՛ւրս կ'ըսեմ. — ահա՛ ծեր Մոնդակէս կը գայ, և իր սրոյն երկաթը կը շողշողացնէ ինծի դէմ։

ՄՈՆԴԱԿԷՍ և ՏԻԿԻՆ ՄՈՆԴԱԿԷՍ։

ՄՈՆ. Գա՛րշելի Գաբուլէտ, — զիս մի՛ բռներ, թո՛ղ որ երթամ։

ՏԻԿ. ՄՈՆ. Քայլ մ'անդին չպիտի շարժիս տեղէդ որ թշնամւոյդ դէմ ելնես։

ԻՇԽԱՆԸ կը մտնէ, հետևորդներով։

ԻՇԽԱՆ. Ապստամբ ժողովուրդք, խաղաղութեան թշնամի՛ք, պղծապատող արենակցաց արիւն մտնող ամբարիշտնե՛ր, — չէ՞ք լսեր. — Ադ ի՞նչ է, հօ՛, մա՛րդ էք՝ թէ անասուն, որ ձեր կատ-

ղութեան՝ նեղութեանց ցաւոց վրայ ինկնող կրակը՝ ձեր երակներէն բղխող ծիրանացայտ աղբիւրներով կը մարէք. գետին զարկէք ձեր արիւնաուշտ ձեռքերէն ձեր արիւնարբու զէնքերը, մտիկ ըրէք ձեր սրտը ցաւած իշխանին դատավճիռը. — Այս երեք անգամ է որ փուճ խօսքէ մ'առաջ եկած քաղաքական կռիւները, քեզի համար ծեր Գափուլէտ, և քեզի համար, Մոնդակէօ, մեր փողոցներուն հանգստութիւնը վրդովեցին. և երեք անգամ Վերոնայի վաղեմի բնակիչները՝ իրենց տարիքին վայլած շնորհալի և աղուոր պաճուճանքներէն զրկեցին, որ ձեռօք իսկ ծեր եղած հինաւուրց կողմնականները գործեն որ խաղաղութեան ժամանակ ժանգահարեալ զէնքերնին ձեռք առնեն ու ձեր ժանգոտած ատելութեան մէջ մտնեն. ատոր համար, գիտցած ըլլաք, որ թէ որ նորէն մեր փողոցները տակնուվրայ ընէք՝ ձեր կեանքը՝ խաղաղութեան տուգանքը հատուցանէ պիտի։ Այս անգամ, թող ամենք բաներնին երթան. դուն Գափուլէտ, հետս եկուր, դուն ալ Մոնդակէս, այսօր օրհասա-րակէ՛տք մեր հասարակաց դատաստանարանն եկուր, որ այս եղած անցից վրայօք մեր դատողութիւնը լսես։ Դարձեալ կ'ըսեմ, ով որ խսկոյն ասկէ չմեկնիր, թող մահուան դատապարտուի։

(ԻՇԽԱՆՆ հետեւորդներով. ԳԱՓՈՒԼԷԹ, ՏԻԿԻՆ ԳԱՓՈՒԼԷԹ, ԴԻԲԱԼԹՈՍ, ՔԱՂԱՔԱՑԻՔ և ծառաները կ'ելնեն։)

ՄՈՆ. Այս հին գժտութիւնը ո՛վ նորէն ոտք հանեց. ըսէք նայիմ, եղբօրորդի, դուք հո՞ն էիք երբ վէճն սկսաւ։

ԲԷՆ. Ձեր ոսոխին ծառաները և ձեր սպասաւորները հոստեղ կռիւ ընելու վրայ էին, երբ վրայ հասայ. իսկոյն սուրս քաշեցի որ զիրենք զատեմ. Նոյն կէտին Դիպալտոս կրակ կտրած սուրը պատրաստազէն վրայ եկաւ, այս կերպով ինչպէս որ կռիւ ընելու հրաւէրներ կը կարդար ականջացս, նոյնպէս ալ զայն իր գլխուն չորս դին ճօճեցնելով՝ օդը կը կտրտէր, որով ուրիշ վնաս մը չէր կրնար ընել, բայց եթէ ինքզինք նախատելու համար սուլումունքներ հանել. Երբ այս միջոցներուս իրենց հարուածոց և բաղխմանց մէջ միջնորդութիւն ընելու կ'աշխատէինք, երկու կողմէն ալ մարդիկն աւելցան և սկսան զարնուիլ, մինչև որ իշխանն եկաւ ու թշնամիք զատուեցան։

ՑԻԿ. ՄՈՆ. Ո՛հ, ո՞ւր է Հռոմէոսը, այսօր տեսա՞ք զինք. շատ ուրախ եմ, որ այս կռուոյն մէջ չգտնուեցաւ։

ՊԷՆ. Տիեզերապայծառ արեւը իր ոսկեղէն պատուհանները արեւելքին կողմը բանալէն ժամ մ'առաջ՝ խելավրդով խորհրդածութիւններս դրդեցին զիս որ պտուտելու համար դուրս ելնեմ. նա՛-տեղ — փոքր անտառին մոլաթզենեաց ծայրը որ քաղքին արեւմտեան կողմը կ'ինկնի, այնքան կանուխ ժամանակ ձեր որդին տեսայ. դէպ' իրեն քալեցի. բայց ինք միտքս իմանալով՝ անտառին խուռզիներուն մէջ սպրդեցաւ. ես ալ՝ իր մտատանջ հակամիտութիւններն իմիններուս կշռելով, որոնք որքան մինակ մնայ մարդ այնքան կը շատնան, առանց իր յօժարութեանց դպչելու իմիններուս ետեւէն գնացի, և ինձմէ ուրախութեամբ փախչողէն՝ ուրախութեամբ խոյս տուի։

ՄՈՆ. Քանի՛ քանի առաւօտներ հոն տեսնուեցաւ ինք, որ առաւօտեան զովացին ցօղերը՝ իր արտասուքներովը կ'աւելցնէր, և իր խորունկ հառաչանքներովը՝ ամպերուն աւելի շոգիներ կը վերառաքէր. բայց այս ամենն ալ այնքան կանուխ կ'ընէ, որ հազիւ թէ համայնազուարճ արփին՝ արեւելեան ամենահեռու կողմերէն Արշալոյսին անկողնոյն ստուերաձիգ վարագոյրները քաշելու րոպէին վրայ՝ նայիս որ տրտմազգած զաւակս ալ՝ տուն կը դառնայ. լոյսէն կը փախչի, և իր սենեկին մէջ քաշուելով ինքզինք կը պահէ. պատուհանները կ'գոցէ, ցերեկուան կենսապարգեւ լոյսը կ'արտակղպէ, և արուեստակեալ գիշեր մի կը ձեւացնէ իր սենեակը, զիս ալ գիշերուան պէս մթութեան մէջ ձգելով. այս բնաւորութեան վերջը ցաւալի և չարագուշակ կրնայ ըլլալ՝ թէ որ համոզական խրատներով շարժառիթը չվերցուի։

ՊԷՆ. Ազնիւ հօրեղբայր, հրամանքնիդ պատճառը գիտէ՞ք։

ՄՈՆ. Ո՛չ գիտեմ, ո՛չ ալ իրմէ բան մի կրնամ իմանալ։

ՊԷՆ. Ամենեւին միջոց մի բանեցնելով ստիպեցի՞ք զինք։

ՄՈՆ. Թէ՛ ես, և թէ՛ ուրիշ շատ բարեկամներ. բայց ինք՝ ինքզինքին և իր կամացը խրատատուն է. — Ճշմարիտը ո՛րն է, չըսեմ — բայց ինքզինք այնպէս կը ծածկէ և այնպիսի կերպով գաղտնիք դուրս չհաներ, և այնքան ալ փորձուելէ և երեւան ելնելէն

կը փախչի՝ որպէս թէ, իր թարմ տերեւները օդին մէջ տարածե-լու կարող ըլլալէն առաջ՝ կամ իր գեղեցկութիւնը արեւուն նուիրելէն առաջ՝ իւր ծոցը ծլակեր որդ մի պարունակող ընձիւղի ճիւղ մ'ըլլար։ Թէ որ կարող ըլլամք գիտնալու թէ իւր ցաւերը ուրկէ առաջ կը գան, մենք ալ մեծաւ հաճութեամբ ձեռքերնուս եկածին չափ կ'աշխատիմք որ դարման տանիմք գիտցածովնիս։

ՀՌՈՄԷՈՍ հեռուանց կը մտնէ։

ԳԷՆ. Նայեցէք, ահա կը գայ. թէ որ կը հաճիք՝ մէկդի քաշուեցէք, ես՝ կամ իր տրտմութիւնները կ'իմանամ, և կամ կը մերժուիմ։

ՄՈՆ. Երանի՜ թէ կենալովդ՝ ականջօքդ ճշմարիտ խոստովանութիւն մի լսելու չափ բաղդաւոր ըլլայիր։ Քալեցէք, Տիկին, երթանք։ (ՄՈՆԴԱԳԷՍ Ն ՏԻԿԻՆԸ կ'ելլեն։)

ԳԷՆ. Բարի լոյս, հօրեղբօրորդի։

ՀՌՈ. Ցորեկը դեռ այդքան դեռատի՞ է։

ԳԷՆ. Հիմակ ժամն ինն զարկաւ։

ՀՌՈ. Ափսոս ինձ, տրտում ժամերը աչացս երկարատեւ կ'երեւան։ Հայրս էր այն որ շտապաւ գնաց հոսկէ։

ԳԷՆ. Հրամեցէք. — Ի՞նչ տրամութիւններ են որ Հռոմէոսին ժամերը կ'երկարաձգեն։

ՀՌՈ. Չունենալով զայնս՝ զորս ունենամ՝ կը կարճացնեն զանոնք։

ԳԷՆ. Սիրոյ մէջ ես։

ՀՌՈ. Ընկճեցայ —

ԳԷՆ. Սէրէ՞ն։

ՀՌՈ. Իմ սիրողիս շնորհներէն դուրս, որոյ սիրոյն մէջն եմ։

ԳԷՆ. Ափսոս, այդ սէրը՝ որ երեւոյթին մէջ անուշ կ'երեւի, փորձի մէջ այդքան ալ անագորոյն ու խստրմբեռ է եղեր։

ՀՌՈ. Ափսոս, այս սէրը՝ որոյ աչերը դեռ երիզակապ կը կենան, առանց աչաց՝ իւր կամաց համեմատ քայլընթաց մի պիտի տեսնէ։ Ո՞ւր պիտի ճաշենք։ — Ո՛հ, ափսոս ինձ։ — Այն կռիւը որ հոս էր սա—տեղ։ Բայց բան մ'ըսեր ինձ, ինչու որ ես ամեն բան լսեցի։ Այս տեղ ատելութեան հետ շատ գործ կայ տեսնելիք,

տակայն սիրոյ հետ մզ ամելի . — ի՛նչ , մ՛ղք . ո՛հ , կազպարոյց սէր . ո՛հ , սիրաշաղախ ատելութիւն . ո՛վ ոչնչէ նախ գոյացած ամեն ինչ . ո՛վ ծանրաբեռն թեթեւութիւն . անաչառ ունայնութիւն . ո՛վ չնորհատեսիլ ձեւերու խառնափնդոր քաոսութիւն . կապարեայ փետուր , լուսաւո՛ր մառախուղ , սառնապաղա՛ղ կրակ , ախտահամա՛կ առողջութիւն , հսկո՛ղ քուն , որոնք ոչինչ ըսել են իմ քով : — Այս իմ զգացած սիրովս՝ սէրը չեմ զգար ես ասոր մէջ : Խնդալիքդ չգա՞ր :

ՊԷՆ. Ոչ՛ , հօրեղբօրորդի , առաւել լալիքս կը գայ :

ՀՌՈ. Աղէ՛կ սիրտ . ի՞նչ բանի վրայ :

ՊԷՆ. Քու բարի սրտիդ ճմլկութեանց վրայ :

ՀՌՈ. Ցեսա՛ր . ատանկ կ՚ըլլայ աՀա սիրազանցութիւնը . — իմ ցաւերս՝ պինտ ծանրաբեռնեալ են սրտիս վրան , զորս կ՚ուզես որ քու աւելցուցածներովդ ալ բեռնապատկես . այդ սէրը , զոր կը ցուցնես ինձ , իմ ունեցած խիստ շատ ցաւերուս՝ ուրիշ ցաւեր ալ վրան կը դիզես : Սէրը՝ հառաչանաց դոլորշեաց հետ ելնող մուխ մ՚է , երբ մաքրուի՝ տարփաւորին աչքին մէջ կայծակնացայտ կրակ մ՚է , երբ սրտաբեկի՝ տարփաւորին արտասուօքը լճացած ծով մ՚է . ուրիշ ի՞նչ բանի նմանցնեմ . պինտ խոհեմաբարոյ խենդութիւն մ՚է , հեղձամղձուկ դառնութիւն մի և քաղցրաւինեալ անուշութիւն մ՚է : Մնաս բարեաւ , հօրեղբօրորդի : (Երթայ)

ՊԷՆ. Կեցի՛ր , ես ալ հետդ պիտի գամ . եթէ ոչ , թէ որ զիս այսպէս ձգես , ինձ անիրաւ բան մ՚ըրած կ՚ըլլաս :

ՀՌՈ. Գնա՛ բանդ դուն ալ Աստուած սիրես , ես ինքզինքս կորուսի . ես հոս չեմ : Ես Հռոմէոս չեմ , ան ուրիշ տեղ մ՚ըլլալ պէտք է :

ՊԷՆ. Իրաւ , շիտակն ըսէ՛ ինձ , Աստուած սիրես , ո՛վ է սիրողդ :

ՀՌՈ. Ի՞նչ . կ՚ուզես որ ըսեմ՝ ու հեծկլտամ :

ՊԷՆ. Հեծկլտա՞ս , չէ՛ , ինչո՞ւ պիտի հեծկլտաս . դո՛նէ մելամաղձոտ կերպով ըսէ՛ ինձ ո՛վ ըլլալը :

ՀՌՈ. Գնա՛ մելամաղձոտ հիւանդի մ՚աղաչէ որ իր կտակն ընէ . — ա՛խ , խօսքը գէշ կ՚ըստիպէ զիս երբ այդքան դժնդակ է . շիտակն ըսեմ , հօրեղբօրորդի , ես կին մի կը սիրեմ :

ՊԷՆ. Ցեսա՛ր հիմա լինայ մօտէն նշան առեր եմ, երբ մակա-թերեցի որ սէր կ'ընես ։

ՀՌՈ. Այդ լինաւոր դիպաղէտ ու շիտակ նշան առնող ես եղեր ։ Պլինա սիրուն կին մ'է գիտես ։

ՊԷՆ. Սիրելի հօրեղբօրորդի՛, վարպետութեամբ շիտակ առնուած նշանը՝ շուտով նպատակէտին կը հանդպի ։

ՀՌՈ. Բարի՛, դուն այդ նպատակէտին չկրցար հանդիպեցնել, վրիպեցա՛ր. ինք՝ Կուպիտոնի նետովը չզարնուիր, Արտեմիսի Ճարպիկութիւնն ունի. և ողջախոհութեան հզօր փորձառութեամբ աղէկ մ'ըսպառազինուած՝ սիրոյ տկար ու տղայական աղեղէն չվիրաւորուած կ'ապրի ։ Սիրահարական խօսքերէ չպաշարուիր և ոչ սիրայարձակ աչաց պատահման կը հանդուրժէ, ոչ ալ սուրբերն իսկ մոլորեցնող ոսկւոյ առջև՝ ծնրադրութիւն կ'ընէ. ո՜հ, ինք գեղեցկութեամբ հարուստ է. և աղքատութիւնն այս է միայն, որ երբ մեռնի՝ իր հարստութիւնն ալ գեղեցկութեամբ մեռնի պիտի ։

ՊԷՆ. Ուրեմն, երդում ըրած է որ միշտ ամուրհի մնայ ։

ՀՌՈ. Հրամերես, և այդ խնայողութեան մէջ ինքզինք կ'ըսպառէ. ինչու որ, գեղեցկութիւնը՝ իր անաչառութենէ ատամանջեալ, բոլոր յետագայ սերունդներէ կը խզէ գեղեցկութիւնը ։ Պինա սիրուն է և պինտ խոհեմ. խոհեմութեամբ այնքան սիրուն է, որ իս յուսահատեցնելով երջանկութեան կ'արժանանայ. երդմնազանցութեամբ սէր խոստացաւ, և այս խոստմանը մէջ՝ մեռած կ'ապրիմ որ հիմա զայն ըսելով ապրած մնամ ։

ՊԷՆ. Ինծի՛ խրատ առ, զինք մտքէդ անցունելը մոռցի՛ր ։

ՀՌՈ. Ո՛հ, սորվեցո՛ւր ինծի ինաւոր մոռնամ այս մտածմունքը ։

ՊԷՆ. Աչքերդ ազատ պահելով, ուրիշ գեղեցկութիւններ աչազննէ՛ ։

ՀՌՈ. Այդ այնպիսի միջոց մ'է, որ աւելի պիտի պարտաւորէ զեօ իրենը գերազանց է ըսելու. այն երջանիկ դիմակները, որ սիրուն տիկնանց ճակատները կը համբուրեն, սև ըլլալով՝ մեր միտքը կը բերեն որ գեղեցկութիւնը ծածկել կ'ուզեն. այն որ անգամ մը կը կուրանայ՝ չկրնար մոռնալ իր կորսուած աչքի լուսին թանկագին գանձը. ցուցո՛ւր ինծի հրաշատեսիլ կին մը, և հարցո՛ւր ինծի

*թէ իր գեղեցկութիւնը ինչ բանի կրնայ ծառայել, ոչ աղէկ բանի, եթէ ոչ, ձեռքիս մէջ եղած տոմսակի մը՝ որ անոր գեղեցկութիւնը կարդալու կարող կ'ըլլամ։ Ծառայ եմ. գտած ինձ ծառայութիւնը դաս չես կրնար տալ։*

ԲԷՆ. *Ես՝ այդ վարդապետութիւնը կամ կը հաստատեմ, և կամ պարտքովս կը մեռնիմ։* (Կ'ելնեն։)

## ՏԵՍԱՐԱՆ Բ.

*Փողոց մը։*

ԳԱԲՈՒԼԷԹ, ՊԱՐԻՍ — ԾԱՌԱՅ մը կը հետևին։

ԳԱԲ. *Մոնթակէմն ալ ինծի պէս պատժապարտութեան տակ ինկած է. ու կարծեմ որ մեզի պէս ծեր մարդոց համար դժուար բան չէ հաշտութիւն ընելը։*

ՊԱՐ. *Երկուքդ ալ պատուաւոր համարում ունիք. ու մեղք որ այսքան ժամանակէ ի վեր սիրով չէք վարուիր։ Բայց հիմակ, տէ՛ր իմ, իմ առաջարկութեանս ի՞նչ ըսելու էք։*

ԳԱԲ. *Ի՛նչ որ արդէն ըսի զայն կը կրկնեմ նորէն. զաւակս՝ աշխարհիս մէջ դեռ օտարուհի կը նմանի, ու տակաւին տասնուչորս տարուան փոփոխութիւնը տեսած չէ. թո՛ղ երկու գոռոզ ամառներ ալ անցնին, ու այնուհետև մտածենք թէ զինք հարս ընելու ժամանակն է։*

ՊԱՐ. *Իրմէ շատ աւելի նուաղահասակ աղջկունք՝ երջանիկ մայրեր եղած են։*

ԳԱԲ. *Եւ այնքան կանուխ կարգուողներն ալ պինտ շուտ աւրըւած են։ Աշխարհս՝ իմ բոլոր յոյսերս կլլեց, բաց իրմէ. և ինքը կ'ըսեմ, իմ աշխարհիս յուսալից տիրուհին է։ Բայց սիրտդ բաց իրեն, ազնիւ Պարիս, գնա իր սիրտը մտի՛ր նայէ, իր հաւանութիւնը՝ իմ կամացս հետ զուգընթաց է. իր համեհաւանութեան մէջ, իր ընտրութեան որոշմունքներուն հետ՝ իմ ալ հաւանութեանս կամահաճ և գոհունակ ձայներս կը միաբանին։ Այս գիշեր իմ հին սովորութեանցս համեմատ՝ խնճոյք մ'ունիմ, որ իմ սիրելի բարե-*

կամքներս հրաւիրած եմ, և դուն ալ հոն դտնուելով՝ կ՚ուզեմ որ հիւրերուն թիւն աւելցնես բարեդալստեամբդ։ Իմ խեղճ՝ տնակիս մէջ, դիտէ ու տես այս գիշերս, որ երկրաշրջիկ աստղերը՝ երկնից լոյսը կը խաւարցնեն. ինչպէս որ դալարեօք պճնազարդեալ Ապրիլը իւր գարշապարօք՝ կաղացեալ ձմեռուան վրայ քայլած ատեն ցոփասէր երիտասարդք կը հրճուին, նոյնպէս ալ դուն՝ այս գիշեր իմ տանս մէջ դեռաբոյս և նորածաղիկ երիտասարդուհեաց մէջ պիտի զուարճանաս. ամենուն մտիկ ըրէ, ամէնը տես, ու զայն միայն սիրէ աւելի, որ արժանաւորագոյնն է. թէև շատ ալ այս բազմութեան մէջ, իմինս, որ անոնցմէ մէկն է, սակայն իւր արժանաւորութեան կողմէ մէկն ալ չէ։ Քալէ, երթանք, — Ինծ նայէ, մանչ, գնա Վերոնան տակնուվրայ ըրէ ու սա մարդիկները դտի՛ր, որոնց անունները ասոր (Թուղթ մը կը տայ) մէջ գրուած են, ու ըսէ որ այս գիշեր տունս խնճոյք ունիմ, թող հրամայեն դան։

(ԳԱՊՈՒԼԷՏ և ՊԱՐԻՍ կ՚ելլեն։)

ԾԱՌ. Վերոնան տակնուվրայ ընեմ այն մարդիկը գտնեմ, որոնց անունները ասոր մէջ գրուած են։ Ասոր մէջ՝ — կօշկակարը՝ իր կանդունը, դերձակը՝ իր վերջինը, ձկնորսը՝ իր մատիտը և պատկերահանը՝ իւր ուռկանները պիտի բանեցնէ գրուած է. բայց ես այս մարդիկ փնտռել գտնելու խրկուած եմ, ու ասոնք գրող մարդուն ինչ անուն դրելն ալ կարդալու կարող չեմ երբէք։ Երթամ կարդացող մի գտնեմ։ — Ահա պատեհ ժամանակին հասան.

ՊԵՆՎՈԼԻՈ և ՀՌՈՄԷՈՍ կը մտնեն։

ՊԵՆ. Զայնդ կտրէ, դուն ալ, մէկ կրակը ուրիշ կրակի մ՚այրիլը կը շիջանէ, ցաւը՝ մէկ ուրիշի վիշտերէն կը թեթևնայ. երբ գլուխդ դառնայ՝ գլուխդ ետեւդ դարձուր և օգնութիւն կը գտնես. յուսահատական տրտմութիւն մի՝ մէկ ուրիշի վիշտերով կ՚աղէկնայ. աչքդ՝ մէկ բանէն մէկ ուրիշ բանի վրայ անկէ, ու կը նայիս որ հին բաներուն խորազդեաց թոյնը կը ջնջուի կ՚երթայ։

ՀՌՈ. Թաթենւոյդ տերևը՝ պինտ զօրաւոր սպեղանի մ՚է ադոր։

ՊԵՆ. Ի՞նչ բանի դէմ, կ՚աղաչեմ։

ՀՌՈ. Սրունքներուդ կոտրտուած ոսկորներուն դէմ։

*ԳԷՆ. Ինչո՞ւ, Հռոմէոս, խնդեցա՞ր։*

*ԻՌՈ. Չխնդեցայ, այլ՝ բանտի մէջ դրուած և առանց սնունդի պահուած, ծեծ կերած ու չարչարուած խնդէ մ'աւելի կապկպուեցայ։ Օ՛, բարի առաքեցար, բարեկամ։*

*ԾՌՑ. Աստուած կեանք տայ ձեր մեծապատուութեան, — կ'աղաչեմ, տէ՛ր իմ, կարդալ գիտէ՞ք։*

*ՀՌՈ. Այո՛, թշուառութեանս մէջ՝ բաղդս։*

*ԾՌՑ. Գուցէ այդ բանն առանց գրքի սորված էք. սակայն կ'աղաչեմ, ինչ որ տեսնէք կրնա՞ք կարդալ։*

*ՀՌՈ. Անշուշտ, թէ որ գիրերն ու լեզուն գիտեմ։*

*ԾՌՑ. Պինտ համով խօսք մ'ըսիք։ Աստուած ձեր բանն յաջողէ։*

*ՀՌՈ. Կեցի՛ր, մա՛րդ, ես կարդալ գիտեմ. (կը կարդայ)*

Սինեօր Մարդինօ եւ իւր կինը եւ աղջկունք. Անսելմոս կոմսը եւ իւր գեղեցիկ քոյրերը. որբեւարի Տիկին Վիդրուվիօ. Սինեօր Բլաչենդիօ եւ իւր սիրուն քրոջ-աղջիկները. Մերկուտիոս եւ իւր եղբայրը Վաղենտիանոս. հօրեղբայրս Գաբուլէտ, իւր կինը եւ աղջկունք. Հռոզալին՝ չնորհալի քեռաղջիկս. Լիվիան, Սինեօր Վաղենտիոս, Դիպալտոս իւր հօրեղբօրորդին. Լուչիօն եւ խնդումերես Հելենան;

*Պինտ աղւոր ընկերութիւն։ (Թուղթը ետ կը տայ) Ո՞ւր պիտի գան։*

*ԾՌՑ. Ահա՛, վերը։*

*ՀՌՈ. Ո՞ւր տեղ։*

*ԾՌՑ. Մեր տունը, կերակուրի։*

*ՀՌՈ. Որո՞ւ տունն է։*

*ԾՌՑ. Տիրոջս։*

*ՀՌՈ. Իրա՛ւ. ես այդ առաջուց հարցուցած ըլլալ պէտք էի։*

*ԾՌՑ. Հիմա ես հրամանոցդ առանց հարցնելու կը զրուցեմ, իմ տէրս՝ երեւելի Գաբուլէտ մեծատունն է. ու թէ որ հրամանքնիդ Մոնդակիւեանց ազգակից չէք նէ՝ հրամեցէք, Աստուած սիրէք, մէյմէկ գինի նետենք։ (կ'ելնէ։)*

ՊԷՆ. Գաբուլէթի այս հնաւոր խնճոյքին մէջ՝ սիրուն Հռոզալինն ալ հանդիսակից է, զոր այնքան կը սիրես, ու բոլոր Վերոնացիք գեղեցկութեանը համար վրան կ՚ըղձմայլին. գնա՛ կ՚ուզես նէ, ու հազուանշմար աչքով՝ բաղդատէ իր դէմքը ուրիշ մէկի հետ՝ զոր քեզ ցուցնեմ, և այն ժամանակ այլ ևս կարապիդ երգերը ագռաւի կարկաչ ըլլալը պիտ՝ իմանաս։

ՀՌՈ. Քանի որ աչացս բարեպաշտ կրօնքը այս սխալմունքը կ՚ընդունի, թո՛ղ արտասուքներս բոցերու դառնան. սակայն այս աչերը որք յաճախ ընկղմեցան և բնաւ երբէք չկրցան մեռնիլ, — որ թափանցիկ հերետիկոսներ ըլլան պիտի, թո՛ղ կեղծապաշտներու պէս այրին։ Իմ՛ սիրականէս աւելի գեղեցիկ. համայնատես արեւը՝ աշխարհ ստեղծուելէ ի վեր դեռ իւր նմանը տեսած չէ։

ՊԷՆ. Շո՛ւտ, իր քովը մէկը չեղած ատեն՝ աչքիդ աղուոր երեւցեր է. դուն զինքը՝ ինքզինք կշիռուն երկու աչքերուն մէջ՝ դրած ատենը տեսեր ես. բայց այդ բիւրեղեայ նժարներուդ մէջ՝ թող քո տարփաւորիդ սէրը և ուրիշ մէկ օրիորդի գեղեցկութիւնը կշռուի այս գիշեր, զոր երբ քեզ ցուցնեմ, տեսնես պիտի հանդէսին մէջ արձակած ճառագայթները, ու ան ատեն պիտ՝ իմանաս, որ քո աչաց աննման երեւցող բանը՝ հազիւ թէ անոր տալը հանելու չափ արժէք ունի։

ՀՌՈ. Երթամ պիտի, բայց ո՛չ թէ ատանկ գեղեցկութիւն մը տեսնելու, այլ՝ իմինիս գերազանցութեամբը տարած յաղթանակին ուրախութիւնը վայելելու։ (կ՚ելնեն։)

## ՏԵՍԱՐԱՆ Գ.

Գաբուլէտի տան մէջ սենեակ մի։

ՏԻԿԻՆ ԳԱԲՈՒԼԷՏ ԵՒ ՍՆՈՒՑԻՉ։

ՏԻԿ. ԳԱԲ. Դայեկուհի՛, ու՛ր է աղջիկս, հո՛ս կանչէ։

ՍՆՈՒՑ. Ճշմարիտ կ՚ըսեմ, երկոտասանամեայ կուսութիւնս վկայ, հիմա կանչեցի զինք, խաթո՛ւն. (կը կանչէ) — Ո՛ւր ես, գառ-

նուկ, ո՞ւր ես, աղաւնի տիկինս. — Տէր ողորմեա՛ — ո՞ւր է զա-
ցեր մեր օրիորդը. — ո՞ւր ես, Ժիւլիէ՛դդա։

ԺՈՒԼԻԵՏՏԱ և մ. ն.։

ԺՈՒԼ. Ի՞նչ է այն, ո՞վ կանչեց զիս։

ՍՆՈՒՑ. Մայրերնիդ։

ԺՈՒԼ. Հո՛ս եմ, մայրիկս, ի՞նչ կը հրամայէք։

ՏԻԿ. ԳԱՊ. Ահա՛ ինչ պիտ՝ ըսէի. — սնուցի՛չ, դուն քիչ մ'ա-
տեն բա՛նդ գնա, մենք գաղտնի խօսք մ'ունինք. — Չէ՛, ինձ նայէ,
սնուցիչ, եկո՛ւր, եկո՛ւր. հիմա միտքս ինկաւ, դուն ալ մտիկ ըրէ
մեր խորհուրդը։ Գիտես, որ աղջիկս՝ իր ծաղիկ հասակին մէջն է։

ՍՆՈՒՑ. Շիտակն ըսեմ, մինչև մէկ ժամ իջ տարիքը կրնամ ը-
սել։

ՏԻԿ. ԳԱՊ. Դեռ տասնուչորս տարեկան չկայ։

ՍՆՈՒՑ. Տասնուչորսը ակռաներէս կը բրցնէի. սակայն ասանկ
կ'ընեն աշխարհիս ցաւերը, միայն չորս հատս մնացեր են. — Տասն
ու չորսին չմտա՛ւ. քա՛ հիմա Ս. Պետրոսի տօնին քանի՞ օր մնաց։

ՏԻԿ. ԳԱՊ. Տասնուհինգ օրէ աւելի կամ պակաս։

ՍՆՈՒՑ. Աւելի կամ պակաս՝ տարուոյն բոլոր օրերուն մէջ, Ս.
Պետրոսի Ճրագալոյցը՝ գիշերը կ'ըլլայ, այն ժամանակ տասնուչոր-
սին պիտի մտնէ։ Քա՛ Շուշան ու ինք՝ — Աստուած բոլոր Քրիս-
տոնէից հոգիները լուսաւորէ, — մէկ տարօք էին քա՛։ — Է աղէկ,
Շուշան՝ հիմա Արքայութիւնն է. հետս ինտո՛ր աղէկ կ'երթար քա՛։
Բայց, ինչպէս որ ըսի, Ս. Պետրոսի Ճրագալոյցին գիշերը՝ տասնու-
չորսը պիտի մտնէ, տասնուչո՛րս, հասկցա՞ք. քա՛ իմ աղէկ միտքս
է։ Տասնումէկ տարի առաջ, ուր է, միտքերնիդ է, քա՛ գետնա-
շարժ մը չեղա՞ւ, ահա՛ Ճիշդ այն ժամանակին էր որ ծծէն կտրե-
ցինք. — քա՛ մոռքէս չելներ, քա՛. տարուոյն Ճիշդ այն օրն էր. ին-
չո՞ւ գիտէք, ես այն օրը ծծերուս պտուկնքը օշինդր քսեցի ու ա-
ղաւնոցին պատին տակ արևուն մէջ նստայ, Տէրս և դուք՝ այն ժա-
մանակ Մանթուա գացեր էիք. — տեսա՞ք, իմ խելքս ծո՛վ է քա՛,
ծո՛վ։ Բայց ինչպէս որ ըսի, երբոր ծիծերուս պտուկնքը բերանը
առւի ու լեղի հա՛մն առաւ, խե՛ղճ երեխայ, երեսը դէմքը ծամռը-

կելով շուտով ծիծը բերնէն հանեց ու այնքան լացաւ ճւճւաց որ աղաւնոցը տեղէն շարժեց. ալ հարկ չէ ըսելը, որ գլուխս գնաց։ Ահա՛ այն ատենէն մինչև հիմա տասնումէկ տարի է. ինչու որ ինքն-իրեն ոտքի վրայ կրնար կայնիլ. չէ՛, խաչ—որ, ինք իր գլխուն աս-դին անդին ալ կրնար տըմպըլ մըմպըլ վազվըտել. ինչու որ, օր մ'առաջ ալ՝ ինկեր ու ճակատը ծակուեր էր. այն ատեն էրիկս — Աստուած ողորմի հոգոյն, քա՛ ինտո՛ր ծիծաղասէր մարդ էր քա՛ — աղջկեկը վեր վերցուց. Հա՛, ըսաւ, դուն առանկ երես-ի վրայ կ'իյնա՞ս, երբ խելքդ գլուխդ գայ՝ կռնակիդ վրայ ալ պիտի՝ իյնաս, հա՛, անանկ չէ՞, Ճիւլ, հա՞։ Ու Աստուածածին վկայ, պզտիկ սատանայեկը ձայնը կտրեց ու հա՛ ըսաւ քա՛. Նայեցէ՛ք որ հիմա կատակը իրաւ կ'ըլլայ. Ճշմարիտ որ հազար տարի ալ ապրիմ, բնաւ միտքէս չեմ հաներ քա՛. Անանկ չէ՛, Ճէ՛ւլ, ըսաւ. ան չըդիկ սատանայեկն ալ՝ լացը կտրելով հա՛ չըսէ՞ քա՛։

ՏԻԿ. ԳԱՊ. Ա՛լ կ'օգտէ, բերանդ գոցէ՛, կ'աղաչեմ։

ՍՆՈՒՑ. Ճշմարիտ ասանկ եղաւ, Տիկի՛ն. քանի որ միտքս բե-րեմ, քա՛ ձայնը կտրէ ու հա՛ ըսէ՝ խնդալէն ուրիշ բան չեմ կըր-նար ընել որ. հապա ճակտին մէջ տեղը՝ պզտիկ աքլորի մը հաւ-կթին չափ ուռեցք մ'ունենայ ու խոց մը բացուի ու ճվիկ ճվկի գալով լայ, անկէ ետք, Հա՛, ըսէ էրիկս, երեսիդ վրայ կ'իյնա՞ս. մեծնաս նէ՝ կռնակիդ վրայ ալ իյնալու կ'սորվիս, հա՛, անանկ չէ՛, Ճէ՛ւլ, հա՛, ըսէ, քա՛ վայ գլխուս, ան ալ ձայնը կտրէ ու հա՛ ըսէ՛։

ՃԻՒԼ. Դուն ալ ձայնդ կտրէ՛, կ'աղաչեմ, ծծմայրս, կա՛րճ ըրէ։

ՍՆՈՒՑ. Կարճ ընենք, լմնցաւ հա՛։ Աստուծոյ օրհնենքը վրա-նիդ ըլլայ. քա՛ քեզի պէս ուրիշ աղուոր երեխայի մը ծիծ չտուեր էի որ. Աստուած մայ հարս ըլլալդ ալ տեսնեմ, ալ անկէ աւե-լի բանի չեմ բաղձար։

ՏԻԿ. ԳԱՊ. Հապա ես ալ այդ պիտ՝ ըսէի։ — Հիմա ինծի ըսէ՛ նայիմ, Ճիւլեէդդա աղջի՛կս, ինտո՞ր ես, կարգուիլ չե՞ս ուզեր։

ՃԻՒԼ. Այդ ինծի համար այնպիսի պատիւ մ'է, որուն վրայօք բնաւ չեմ մտածեր։

ՍՆՈՒՑ. Պատիւ ըսի՛ր. ես քու ծծմարդ չըլլայի նէ՝ պիտ՝ ըսէի որ իմաստութիւնը կաթին հետ ծծեր ես։

ՏԻԿ. ԳՈՐ. Է՛յ հիմա՝ ալ կարգուուքը նայինք. Հոս տեղս Վերոնայի մէջ քեզմէ նուազ տարեկան պատուաւոր օրիորդները արդէն զաւակաց տէր եղան. իմ հաշուովս, այդ հասակէդ աւելի պզտիկ եղած ժամանակս, ես քու մայրդ էի, որ հիմա դուն դեռ կոյս մնացեր ես։ Ես քեզի կարճ խօսք մ՚ըսեմ. կտրիճ Պարիսին միտքը քեզի հետ կարգուիլ է։

ՄՆՈՒՏ. Տեսա՛ր մարդը, պզտիկ խաթունս, մարդ կ՚ըսեմ, մա՛րդ. քա՛ն գիտես որ մոմէ թափուած է, քա՛ն։

ՏԻԿ. ԳՈՐ. Վերոնայի մէջ ամառուան ծաղիկ կը նմանի։

ՄՆՈՒՏ. Քա՛, հա՛, քա՛, սուտափինա ծաղիկ կը նմանի, գիտես որ ծաղիկ մ՚է։

ՏԻԿ. ԳՈՐ. Ի՞նչ կ՚ըսես, այս ազնուականը բանիդ կը գա՞յ, այս գիշեր մեր խնճոյքին մէջ պիտի տեսնես զինք. երիտասարդ Պարիսի դէմքին հատորը լաւ մը կարդա՛, և անոր մէջ գեղեցկութեան գրիչով գրուածներէն հաճութիւն զգա՛. զննադիտէ՛ իւր ամէն մէկ ներդաշնակաւոր դիմագծութիւնները և տես թէ ինտոր մէկ մէկը մէկալ մասին չափակարգութիւն փոխ առած է. սակայն այս սիրուն հատորին մէջ ո՛րքան մթին խրթնութիւններ կան նէ՝ բոլորն ալ իր աչաց լուսանցքին մէջ բացատրուած պիտի գտնես [1]։ Սիրոյ այս թանկագին մատեանը, որու թերթերը տակաւին կապուած չեն, այս տարփալին կ՚ըսեմ, իր գեղեցկութեան պատիւն աւելցնելու, միայն կազմը պակաս է։ Ձուկը՝ դեռ ծովուն մէջն է [2]. ասկէ զատ, արտաքինը՝ ներքին գեղեցկութիւնը ծածկելու ըլլայ նէ՝ աւելի պատիւ կը գտնէ։ Այս գիրքը կ՚ըսեմ, շատ մարդոց աչքին փառաւոր հանդիսացուց ոսկեդիր պատմութեանց պարծանքը՝ զոր ոսկեղէն ճարմանդները գրքին մէջ կը պահեն։ Ահա՛ դուն ալ այս կերպով, իրեն հետ կարգուելով իր պարունակութեանց մասնակից կ՚ըլլաս և ինքզինքդ ալ անկէ պակաս բան մը չես ըներ։

[1]) Հին գրոց վրայ՝ բացատրութիւնները հասարակօրէն լուսանցքներուն մէջ տպուած էին։ ԲՆ.

[2]) Այսինքն, դեռ որսացուած չէ, որու կաշին միայն հարկաւոր կ՚ըլլար, որ կազմուի։ ԲՆ.

ՄՆՈՒՑ. Անկէ պակաս. քա՛, անկէ աւելի բան մի կ՚ընէ չե՛ս ը-սեր. կնիկները էրիկ մարդոցմով կ՚աճին։

ՑԻԿ. ԳԱԲ. Կարճ խօսք մ՚ըսէ. պիտի կրնա՞ս սիրել Պարիսը։

ՃՈՒԼ. Թէ որ նայիլը սիրելը կը թելադրէ, սիրելու նայիմ պի-տի, կ՚օգտէ միայն որ իմ մէկ խորունկ աչք նետուածքէս աւելի, ձեր հաւանութիւնը՝ զայն թռցնել տալու զօրութիւն չտայ։

ԾԱՌԱՑ Դ կը մտնէ։

ԾՌՑ. Խաթո՛ւն, հիւրերը եկան, կերակուրը սեղանն է, ձեզ կ՚ըսպասեն, պզտիկ խաթունս հարցուցին, խոհանոցին մէջ հազար ու մէկ անէծք կը կարդան դայեկուհւոյն, ամեն բան պարտուպատ-րաստ է. հիմա ես ալ սեղանին վրայ կայնելու պիտ՝ երթամ. կ՚ա-ղաչեմ, հրամայեցէք, ետեւէս մ՚ուշանաք։

ՑԻԿ. ԳԱԲ. Հիմա ետեւէդ կը գանք. Ճիւլիէդդա, կոմսը մեզ կ՚ըսպասէ։

ՄՆՈՒՑ. Գնա՛, աղջի՛կ, գնա՛. երջանիկ օրերուդ երջանիկ գիշեր-ներ ալ աւելցո՛ւր։ (կ՚երթեն։)

## ՏԵՍԱՐԱՆ Դ.

Փողոց մի։

ՀՌՈՄԷՈՍ, ՄԵՐԿՈՒՑԻՈՍ, ՊԵՆՎՈԼԻՕ՝ հինգ-վեց դիմակաւորներով, ջահա-կիրներով և ուրիշ մարդոցմով։

ՀՌՈ. Ի՞նչ ընենք. արդեօք երթալնուս համար պատճառանքներ գտնելով ներողամտութիւններին խնդրե՞նք, թէ ելլենք պարզապէս ներս մտնենք առանց ձայն հանելու։

ՊԷՆ. Ասանկ երկարաբանութեան թուականները հին են[1]. մենք՝ աչքերնիս բարակ երիզով մի կապուած Կուպիտոնի պէս՝ ներկուած փայտի շերտէ շինուած թաթարական աղեղնիս շալկած չպիտ՝ եր-թանք որ ագռաւասնոյցի պէս՝ տիկինները փախցնենք մեզմէ. և ո՛չ ներս մտած ժամանակնիս՝ գրքի մը յառաջաբանութիւնը սերտ ըրած

[1]) Այսինքն, երկայն բարակ խօսելու տեղն չէ։ Թն.

ու ետևէն յուշարքերի մի կրկնախօսութիւնները լսելով՝ գողդղական ձայներով արտասանելու խօսքեր չպիտ՝ ըսենք, այլ՝ համարձակ ներս կ'մտնենք, ինտոր կ'ուզեն նէ այնպէս վարուին թող, մենք ալ նոյն աչքով կը նայինք իրենց, բանդ նայէ, դարձապար մի կ'ընենք, անկէ ետք ծառայ եմ ։

ՀՌՈ. Ջահ մի տուէք ձեռքս [1]). Ես պարելու մարդ չեմ. ու թէև ես ծանր եմ, այլ լոյսը [2]) կրնամ տանիլ ։

ՄԵՐԿ. Չէ՛, Հռոմէոս, մենք քո պարելդ կ'ուզենք, սիրելիս ։

ՀՌՈ. Հաւատա՛, ես չեմ ուզեր. դուք՝ կաքաւու շղուականներ ունիք նուրբ ներբանափոկով, ես՝ կապարեայ սիրտ մ'ունիմ, որով այնպիսի կերպով գետինը զամուած եմ՝ որ տեղէս չեմ կրնար շարժիլ ։

ՄԵՐԿ. Դուն տարփաւոր ես, Կուպիտոնի թևերը փոխ առ ու մարդոց չկրցած սահմաններէն անդին սլացիր ։

ՀՌՈ. Իր նետերէն պինտ խոր խոցուած եմ, ու իր թեթև թևերով չեմ կրնար ճախրել. այնպէս ալ կապուած կաշկանդուած եմ, որ վրաս ծանրացած ցաւոց վրայէն՝ թիզ մ'ալ վեր չեմ կրնար սլանալ և սիրոյ ծանր բեռին տակ՝ կը ճնշուիմ կ'երթամ ։

ՄԵՐԿ. Անոր մէջ ընկղմելով՝ սիրոյ վրայ ծանրութիւն ըլլալու էիր, ինք գողտրիկ տղայ մ'է, քեզ չկրնար դիմանալ ։

ՀՌՈ. Սէրը գողտրիկ տղա՞յ է. սէրը՝ պինտ խստաբարոյ, պինտ դժնդակ, պինտ աղմկայոյզ բան մ'է, ու փուշի պէս կը ծակծկէ ։

ՄԵՐԿ. Թէ որ սէրը քեզի հետ խստութեամբ կը վարուի, դուն ալ հետը խստութեամբ վարուէ. քեզ խթէ նէ՝ դուն ալ զինք խայթխթէ, այն ատեն կը յաղթես սիրոյ ։ (Ծառայներուն) Դիմակ մի տուէք ինձ որ դէմքս մէջն անցունեմ ։ (դիմակը կը դնէ ։) Դիմակը դիմակ դրուեցաւ — հոգ չէ, թող երթայ հիմա հետաքրքիր աչք մի տգեղութիւններս դիտէ. ահա հիմա խոժոռադիմութիւններս զիս տեսնելով պիտի շառագնին ։

[1]) Ջահակիր մի՝ դիմակաւորներու որ և է խումբերուն մէջ մտնելու իրաւունքն ունի եղեր ։ Թն.

[2]) Լոյս և թեթև նոյն բառն են ։ Ծ. Թ.

ՊԷՆ. Քալեցէ՛ք, զարնենք, մտնենք. ու ներս՝ մտածնուս պէս՝ թող ամեն մէկն իր սրունքներուն վստահի ։

ՀՌՈ. Ջահ մը տուէ՛ք ինձ. թող այս թեթեւասիրտ խենդերը երթան և անզգայ պրտուները[1]) իրենց զարշապարովը խաղտեցնեն, ինչու որ ես նախահայրական առածով մը խրատուած՝ ճրագ կը բռնեմ որ ականատես ըլլամ, — այսպիսի բարեյաջող խաղ տեսած չունէի ես բնաւ. իմ բանս լմնցաւ ։

ՄԵՐԿ. Խփէ՛, գիտե՞ս գործակալները երբեմն ինչ կ՚ըսեն՝ պարտապահանջները, անհանդարտ ընող մկներ կը նմանին, ու թէ որ դուն ալ հիմա մեզ պարտապահանջի պէս անհանդարտ ըլլա՛ս ընելու նէ՝ [2]) մենք ալ (աղնուութենէդ հեռի) այս ցեխաշաղախ սիրոյ մէջէն դուրս կը քաշենք զքեզ, ուր մինչև ականջներդ խրեր ես ։ Քալեցէ՛ք, ցորեկ է զարձեր, հօ՜ ։

ՀՌՈ. Չէ՛, տանկ մ՚ըսեր ։

ՄԵՐԿ. Ըսել կ՚ուզեմ, որ ցորեկ ատեն ճրագ վառելու պէս՝ ջահերը փուճ տեղ կը հատնին կ՚երթան ։ Մեր ըսածը աղէկ մտքի առ, ինչու որ, մեր դատողութիւնը հինգ անգամ ալ ատոր մէջ տեսնուի՝ մեր հինգ խելացի խօսքերը հազիւ թէ անգամ մը տեղի կ՚ունենան ։

ՀՌՈ. Հիմա մեզի պէս ալ, դիմակահանդէսը երթալով մտքերնիս աղէկ է, սակայն խելացութիւն չէ ։

ՄԵՐԿ. Ըլնէ մէկն ալ ինչո՞ւ համար ըսէ նէ ։

ՀՌՈ. Ես այս գիշեր երազ մը տեսայ ։

ՄԵՐԿ. Ես ալ տեսայ ։

ՀՌՈ. Դուն ի՞նչ տեսար ։

ՄԵՐԿ. Ես տեսայ որ երազատեսները շատ անգամ սուտ կը ըլլուցեն ։

ՀՌՈ. Իրաւ կ՚ըսես . այսու ամենայնիւ անկողնոյ մէջ քնացած տեղերնին ճշմարիտ բաներ կ՚երազեն ։

[1]) Հին ժամանակները սովորութիւն կայ եղեր, որ սենեակներուն տախտակամածները պրտուեայ փսիաթներով կը ծածկեն եղեր ։ Թն.

[2]) Բանս լմնցաւ, պարտապահանջ և անհանդարտ ընել գրեթէ նոյն արտասանութիւնն ունին անգղ. մէջ ։ Ծ. Թ.

ՄԵՐԿ. Երազիս մէջ տեսայ՝ որ Մաբ[1]) Թագուհին հետդ է եղեր. այս Մաբ Թագուհին՝ յուերժահարսանց մանկաբարձն է ու քաղաքական ատենակալի մի ցուցամատն անցուցած մատանւոյն ակնէն քարէն աւելի մեծ հասակով մարդու չերևար. իւր կառքը՝ պզտիկ մանր հիւղեայ երիվարներով լծուած է և ննջող մարդոց քթին մօտէն կ՚անցնի. անիւներուն շառաւիղները՝ մամուկներուն երկայն սրունգներով շինուած են. վրայի ծածկոցը՝ մարախներու թեւերէն, երասանները՝ ամենափոքր սարդերու ոստայնէն. երիվարներուն վիզը կախուած մահիկեղջիւրները՝ լուսնի ճառագայթարձակ շառաւիղներէն. խարազանին կոթը՝ ծղրիտի ոսկորէն և ծայրի լարափունջը՝ անոր մորթէն. իւր կառապետը գորշազգեաց պզտըլտիկ մժեղ մ՚է, որ թերանինջ օրիորդի մի մատը խածնելէ ետք բռնուած պզտըլտիկ կլորիկ լուի մի կէսին չափ ալ մեծ չէ. իւր կառքը՝ կաղինի մի փուճ կեղևն է, զոր սկիւռ ատաղձագործը հիւսնած է, կամ՝ որդ վարպետին գործն է, որոնք մտքէ դուրս ժամանակէ ի վեր՝ յուերժահարս տիկնանց կառագործներն են: Ահա այս վիճակով՝ ամեն գիշեր տարփաւորաց ուղեղներուն մէջէն քաւուաքայլ վազելով կ՚անցնի, որ ետքէն սիրոյ երազներ տեսնեն:

Թէ որ պալատականաց ծնկներուն վրայէն անցնի՝ իսկոյն մեծամեծ պաշտօններու վրայօք երազներ կը տեսնեն. դատաւորաց մատներուն վրայէն անցնի՝ իսկոյն իրենց վարձահատուցման վրայ կ՚երազեն. տիկնանց շրթունքներուն վրայէն անցնի՝ անմիջապէս պագուըտուքներ կը ցնորեն. սակայն Մաբ՝ շատ անգամ, երբոր կը նայի որ ասոնց շունչը քաղցրաւենիներով արատաւորեալ է, բարկանայ նէ՝ խոցեր լսկ բանալով կը չարչարէ զիրենք: Երբեմն կը հանդիպի որ արքունական անձի մի քթին վրայէն կը վազէ, ասոր վրայ, կը նայիս որ ան ալ մեծ աստիճանի հասնելու անուրջ մի կ՚երազէ. երբեմն ալ՝ տասանորդն առնուած խոզի մի պոչով կը գայ և խորունկ քունի մէջ եղած եկեղեցականի մի քթին ծակերը կը խտղտեցնէ, անատեն ան ալ ուրիշ վիճակի մի հետևելու ցնորքներ կ՚երազէ. երբեմն իր կառքը զինուորականի մի շնչիքին վրայէն

[1]) Խպըլիկ?

կ՚անցունէ, նայիս որ ան ալ՝ թշնամեաց կոչափողը խողխողելու, թերդերու մէջ յարձակելու, դարանակալութիւններ ընելու, Սպանիա շինուած թուր կախուելու, մինչև թերանը լցուած բաժակներով կենսըմպումի գինի խմելու երազներ կը տեսնէ. ասոր վրայ մէկ մ՚ալ յանկարծ թմբուկին ձայնը առածին պէս՝ վեր կը ցատկէ ու կ՚արթննայ, ու այս կերպ զարհուրանօք մէկ—երկու աղօթք կը մրմրայ ու նորէն կը քնանայ։ Այս՝ այն Մաբն է, որ գիշեր ատեն ձիոց բաշերը կը բզկտէ և աղտոտ ու խառնիխուռն հերաց մէջ՝ պարիկներու հերացցունքը կը խառնաշփոթէ, որոնք անգամ մ՚որ քակուին՝ չարագուշակ դժբաղդութիւն կը սպառնի։ Ամենէ մեծ կատաղութիւնն այն է որ երբ կոյս աղջկունք իրենց կռնկին վրայ պառկած կ՚ըլլան, անոնց վրան կ՚ինկնի[1]) ու նախ ինք դաս կը տայ իրենց, որ կնիկ ըլլալու ժամանակնին՝ ինտոր պիտի դիմանան ծանր բեռի տակ։ Ա՛յս է այն —

ՀՌՈ. Կ՚օգտէ, կ՚օգտէ, Մերկուտիօս, հասկցանք, ոչինչ բաներ կը զրուցես։

ՄԵՐԿ. Հապա երազներու վրայ կը զրուցեմ, որոնք ուրիշ բան չեն, բայց եթէ անպիտան ուղեղներու զաւակներ, փուճ երևակայութեան պտուղներ՝ որք օդին դոյութեան պէս նուրբ և հողմէն աւելի յորդողդ են, որ դուցէ հիմա իսկ՝ հիւսիսային սառնապատ կողմերուն վրայ իր շունչը փչելէն բարկացած՝ ետ կը փախչի ու հարաւային ցօղատարափ կողմերուն վրայ կը դարձնէ իր դէմքը։

ՊԷՆ. Այդ հովը որ կը զրուցես՝ զմեզ շատ հեռու կը ձգէ. արդէն ընթրիքնին լմնցուցած ըլլալ պէտք են ու մենք ալ պինտ ուշ պիտի հասնինք։

ՀՌՈ. Վախնամ որ պինտ կանուխ է. երևակայութիւնս ինձ դիտես թէ կ՚ըսէ, որ այս գիշերուան խնճոյից զեղխութեանց հետ՝ դեռ աստղերուս մէջ կախուած ճակատագրիս դժբաղդութեանց ահեղտալի թուականը՝ դառնութեամբ սկսի պիտի, ու ցաւալի կորուստի կամ տարաժամ մահուան մի պատճառաւ՝ սրտազօգիս մէջ կղպուած ձանձրալի կեանքիս պայմանաժամը վերջացնէ։ Բայց Ան՝

[1]) Որ է մղձաւանջը։

որոյ ձեռաց մէջն է իմ կենընթացից ուղղութիւնը, թող նաւուս առագաստներն ալ կառավարէ ։ Քալեցէ՛ք, զեղխասէր աղնուականք։

ՊԷՆ. Զարկէ՛ք թմբուկները ։ (կ'ելլեն ։)

# ՏԵՍԱՐԱՆ Ե.

**ԳԱՊՈՒԼԷՏ**ի տան մէջ սրահ մի ։

**Ե**րաժիշտք պատրաստ՝ կ'սպասեն ։

ՍՊԱՍԱՒՈՐՆԵՐ կը մտնեն ։

Ա. ՍՊԱՍ. Թօփիկն ո՞ւր է, ինչո՞ւ չգար որ սեղանը վերցնենք. ծո՛յլը, պնակ փոխէ՞, պնակ սրբէ՞. Աստուած չընէ ։

Բ. ՍՊԱՍ. Երբ ամեն շնորհք մէկ կամ երկու մարդոց ձեռք անցնին ու այն ձեռքերն ալ լուացուած չըլլան, անշնորհք բան մի կ'ըլլան, ճշմարիտ ։

Ա. ՍՊԱՍ. Վերցո՛ւր սա յօղաթոռները, անդի՛ն տար պնակներուն դարանը[1]), պնակները աղէկ նայէ չձգես չկոտրտես. կ'աղաչեմ, խնամի՛, ինծի կտոր մի նշաքաքար պահէ՛. նաև, գիտեմ որ կը սիրես զիս, սա դռնապանին ըսէ՛ որ Գերձակենց Շուշանը, Հեղինէն — Անտոնը և Թօփիկը թող տայ որ ներս գան ։

Բ. ՍՊԱՍ. Շո՛ւտ ըրէ, մա՛նչ, շո՛ւտ ըրէ ։

Ա. ՍՊԱՍ. Ձեզ կը նային, ձեզ կը կանչեն, ձեզ կ'ուզեն, ձեզ կը փնտռեն մեծ սենեակէն ։

Բ. ՍՊԱՍ. Տասն ձեռք չունինք որ ամեն տեղ հասնինք ։ — Շո՛ւտ ըրէ՛ք, տղա՛յք, հա՛. կտոր մի ձեռքերնիդ շարժեցէ՛ք. ո՛վ որ վերջի մնայ՝ թող ամեն բան վերցնէ տանի ։ (Ետև կը քաշուին ։)

ԳԱՊՈՒԼԷՏ և այլն, հրաւիրեալներով և դիմակաւորներով կը մտնեն։

ԳԱՊ. Աղնուականնե՛ր, բարի՛ եկաք. ոտքերնին կոշկոռ չունեցող տիկինները ձեզի հետ գլուխնին պիտի տաքցնեն. — Հա՛, հա՛, աղ-

[1]) Սեղան մի՝ որու վրայ պատրաստ մաքուր պնակ կ'ըլլայ և անկիւն մի կը դըրուի եղեր ժամանակաւ ։ Թն.

րի՛ք Տիկիններ. Հիմա ձեզմէ ո՛վ պիտի մերժէ կաքաւելը, և այն տիկինը որ նազապաշէր կ'ընէ՝ կընամ երդում ընել որ մատները կոշտ կոշտ ունի։ Խօսքերս դպա՞ն ձեզ։ Բարի եկայք, ազնուականներ, ես ալ ատենօք երեսս դիմակ անցուցի ու սիրուն օրիորդաց ականջներուն՝ սիրաբանական հաճելի փսփսուքներ ըրի. ո՞ւր է հիմա այն օրերը. անցա՜ն, անցա՜ն։ Բարի եկաք, ազնուականներ։ Երաժիշտներ, սկսէ՛ք նայինք։ Տե՛ղ ըրէք, տե՛ղ բացէք, բացուեցէք, աղջի՛կներ, պարեցէ՛ք նայինք։ (Երաժիշտները կը նուագեն ու հանդիսականք կը պարեն։) Ուրիշ ճրագ ալ բերէ՛ք, սպասաւորներ. սեղանները դո՛ւրս հանեցէք ու կրակը մարեցէ՛ք, սրահը արդէն շատ տաքցած է։ — Երանի՜ մեզ, այս յանկարծական խնջոյքն ինձ ուրախալի կերպով կը զուարճացնէ. չէ՛, չէ՛, նստի՛ք, նստի՛ք, սիրելի Գաբուլէտ հօրեղբայր. մե՛ր երկուքնուս ալ կաքաւելու ժամանակն անցած է. ո՞րքան ատեն է որ դուք ու ես մէկտեղ դիմակ դրուեցանք ու պարահանդէս գնացինք. մտքերնի՞դ է։

Բ. ԳԱԲ. Ճշմարիտ որ, երեսուն տարի մ'ըլլալու է։

Ա. ԳԱԲ. Չէ՛, ինչ կ'ըսէք դուք ալ, մեր Լուչենցիոյի հարսանեաց գիշերը չէ՞ր որ դիմակաւորեցանք. Հոգեգալուստը որչափ շուտ կ'ուզէ թող գայ, երբ գալու ըլլայ՝ հազիւ քսանուհինգ տարի ըլլալու է։

Բ. ԳԱԲ. Աւելի է, աւելի. իր տղան աւելի մեծ է, տէ՛ր. երեսուն տարեկան մի կայ։

Ա. ԳԱԲ. Ի՞նչ կ'ըսէք. դեռ երկու տարի առաջ իր տղան անչափահաս էր։

ՀՌՈ. Ո՞ր տիկինն է այն, որ նա պարասպետին թեւը կը փառաւորէ։

ՍՊԱՍ. Չեմ գիտեր, տէ՛ր իմ։

ՀՌՈ. Ո՛հ, ջահերուն օրինակ կ'ըլլայ որ աւելի պայծառ վառին. իր գեղեցկութիւնը գիշերուան այտից վրայ այնպէս ճառագայթարձակ է, ինչպէս որ Եթեովպացուհւոյ[1]) մ'ականջէն կախուած թանկագին գոհարեղէն օղ մի. սքանչելի գեղեցկութիւն մ'ունի՝ որ

[1]) Իբր խափշկուհի։ Թն.

հասարակ գործածութեան համար պինտ ծանր է և հասարակութեան համար՝ պինտ սուղ։ Այս սիրուն օրիորդը իւր ընկերուհեաց խըմբին մէջ տեղ՝ երամ մ՚ագռաւներու մէջ ձիւնափետուր աղաւնիի պէս կ՚երեւայ. կեցի՛ր կաքաւը լմննայ, և իւր կայնած տեղը միտքս պահեմ և իմ կոշտ ձեռքս երջանիկ ընեմ իւր ձեռքին դպցնելով։ Սիրտս մինչև հիմա սէր մ՚ըզգացա՞ծ էր արդեօք. աչե՛րս, երդմնացա՛նց եղէք, ինչու որ ես մինչև այս գիշերս՝ ճշմարիտ գեղեցկութիւն տեսած չէի երբէք։

ԴԻԲ. Սա մարդուն ձայնէն կ՚իմացուի որ Մոնդակեան մ՚է. — Մա՛նչ, թուրս հոս բեր. — սա ի՞նչ ըսել է, գարշելին դէմքը անճռունի դիմակով մի ծածկէ ու ելնէ հոս գալու համարձակի, որ մեր հանդէսին վրայ խնդայ ու պատիւը ոտքի մ՚ընէ։ Հիմա, մեր գերդաստանաց պատուոյն ու բովանդակութեան վրայ կ՚երդնում ճշմարիտ՝ որ մեղք չեմ սեպեր մէկ զարնելով զայն մեռցնելը։

Ա. ԳԱՊ. Ի՞նչ կայ, ի՞նչ եղար, եղբօրորդի, ի՞նչ բանի համար կը կրակոտիս։

ԴԻԲ. Հօրեղբա՛յր, սա մարդը Մոնդակեան մ՚է. լիրբը հարկածպտեալ եկեր է, որ այս գիշերուան մեր ուրախազուարճ խնճոյքին վրայ խնդայ։

Ա. ԳԱՊ. Երիտասարդ Հռոմէոսը չէ՞ այն։

ԴԻԲ. Նոյն ինքն, աներես Հռոմէոսն է։

Ա. ԳԱՊ. Հանդարտ կեցի՛ր, սիրելի եղբօրորդի, մի՛ դպչիր իրեն, պինդ քաղաքավար ազնուականի պէս կը վարուի չե՞ս տեսներ. ու ճշմարիտն ըսե՛մ, բոլոր Վերոնացիք կը գովեն զինք՝ առաքինի ու կենցաղագէտ երիտասարդ մ՚ըլլալուն համար. քաղքիս բոլոր հարստութիւնն ալ տային՝ իմ տանս մէջ իր վրայ պզտիկ արատ մ՚իսկ բերել չէի տար։ Անոր համար համբերութիւն ըրէ՛, երեսը մի՛ նայիր, այս է իմ կամքս, ու թէ որ կամքս կը պատուես՝ խնդումերես եղի՛ր ու հեռացուր քեզմէ այն կնճիռը, որ զուարճահանդիսի մէջ շնորհք չառներ։

ԴԻԲ. Պինտ աղէկ շնորհք կ՚առնէ, երբ ասանկ լիրբ հիւր մը կ՚ըլլայ. չեմ կրնար տանիլ իրեն։

Ա. ԳԱՊ. Պէտք է որ տարուի իրեն։ Հայդա՛, անդէ՛տ տղայ. —

ես քեզ տարուի պիտի կ'ըսեմ. — բանդ գնա նայիմ. — Հոս տեղս տանուտէրն ո՞վ է, ե՞ս եմ, թէ դու. գո՛ւրս ել. իրեն չես կըրնար տանի՛լ, հէ՞: Տէ՛ր ողորմեա, հիւրերուն ուրախութիւնը տակն ու վրա՛յ պիտ' ընես. կռիւ հանել կ'ուզես հա՛, չըլլար, չըլլար:

ԴԻՊ. Հօրեղբա՛յրս, ամօթ է:

Ա. ԳԱԲ. Քալէ՛, քալէ՛, հաստգլուխ ես եղեր. — այս թեթեւամտութիւնդ ետք փոթորիկ մի պիտի հանէ գլխուդ. գիտե՞ս ինչ կ'ընեմ: Տակաւին դէմ կենալո՞ւ ես. մ'երկնցուներ, ատենն անցաւ: — Շա՛տ աղէկ բան ըսիք, սիրելիներս: — Բա՛նդ գնա նայիմ, գնա՛՝ կամ խելօք կեցիր: — Ճրա՛գ բերէք, ուրիշ ճրագ ալ բերէ՛ք, ամօթ չըլլայ: — Քեզ կը խելօքցնեմ, ի՛նչ ըսիր: — Զեզ տեսնեմ, ուրախութի՛ւն ուրախութեանց:

ԴԻՊ. Բռնի համբերութիւնս՝ կամակոր բարկութեանս դէմ պատահած՝ բոլոր մարմինս դող կը հանէ: Ես կ'ելնեմ կ'երթամ, բայց այս անվայել բռնամուծումը՝ որ հիմա անուշ կ'երեւի իրեն, կրնայ ետքը դառն ատելութեան մի փոխուիլ: (Կ'ելնէ:)

ՀՌՈ. (Ճիւլիէթթային) Թէ որ անարժան ձեռքովս այս սուրբ մասունքը կը պղծեմ, ահա անոր քաղցր ապաշխարութիւնն ինչ է. — իմ երկու կարմրած ուխտաւոր շրթունքս՝ պատրաստ կեցեր են, որ այս անհեթեթ շօշափումը՝ մեղմակորդ համբուրիւ մի քաւեն:

ՃԻՒԼ. Ազնիւ ուխտաւոր, ձեռքերնիդ պինտ յանցաւոր կը սեպէք, որ այս կերպովս՝ իր պարտուպատշաճ ջերմեռանդութիւնը կ'արտայայտէ. վասն զի սուրբերն ալ ձեռքեր ունին՝ որոնց կըրնան դպչիլ ուխտաւորները ու թաթ զթաթի ըլլալը՝ ապաշխարաւէր ուխտաւորաց երկրպագութիւնն է:

ՀՌՈ. Կարծես սուրբերը շրթունք չունի՞ն ինչպէս ջերմեռանդ ուխտաւորները:

ՃԻՒԼ. Շրթունք ունին, ուխտաւո՛ր. բայց աղօթքի մէջ գործածել պէտք են զանոնք:

ՀՌՈ. Ո՛հ, ուրեմն, սիրո՛ւն սրբուհի, թո՛ղ շրթունքն ալ ձեռքերուն ըրածն ընեն. ահա՛ կ'աղաչե՛ն, շնորհեցէք իրենց, որ չըլլայ թէ հաւատքը՝ յուսահատութեան դառնայ:

ՃԻՒԼ. Սուրբերն անշարժ կը կենան, թէև աղաչանաց ունկնդիր կ'ըլլան։

ՌՈՄ. Ուրեմն մի՛ շարժիք, երբ այս կերպով շրթամբքս խնդրուածոյս արդիւնքը կ'ընդունիմ, ու ձերիններովդ մեղքս կը քաւուի։

(զայն համբուրելով։)

ՃԻՒԼ. Թող ուրեմն շրթունքս՝ առած մեղքերնին պահեն։

ՌՈՄ. Ուրեմն շրթունքէս մեղքե՞րս առիք․ այս ինչ անուշութեամբ գործուած մեղք է․ մեղքս ետ տուէք նորէն։

ՃԻՒԼ. Դուք հաշուեգրքէն կը համբուրէք։

ՍՆՈՒՑ. Խաթուն, մայրերնիդ ձեզ բան մը պիտ՝ ըսէ։

ՌՈՄ. Իւր մայրն ո՞վ է։

ՍՆՈՒՑ. Չէ՞ք գիտեր, կորի՜ճ զաւակ․ իւր մայրը՝ տանտիկինն է․ ինտո՛ր բարի, ինտո՛ր խելացի, ինտո՛ր առաքինի խաթուն մ'է գիտէ՞ք․ ես՝ կաթ տուած եմ իւր աղջկան որու հետ զրուց կ'ընէիք․ ձեզ բան մ'ըսեմ,, հէ՜ — սաոր հետ կարգուողը չզղջար։

ՌՈՄ. Գաբուլեա՞ն է․ ո՛հ, թանկագին առևտուր․ կեանքս՝ թըշնամիոյս պարտուոր եմ մնացեր։

ՊԷՆ. Ելէ՛ք, երթանք․ պինտ զուարճալի ժամանակն ալ հիմա է։

ՌՈՄ. Վախնամ, իրաւ անանկ․ անհանգստութիւնս ալ չափազանց է։

Ա. ԳԱԲ. Չէ՛, ազնուականներ, երթալ չըլլար, կեցիք նայինք, տակաւին պզտիկ ճաշկերոյթ[1]) մ'ալ պիտ՝ ընենք։ — Իրաւ պիտի երթա՞ք․ ինչո՞ւ համար այսքան շուտ․ ուրեմն, շնորհակալ եմ ազնուական տեարք, ամենէդ ալ մեծապէս շնորհակալ եմ․ գիշեր բարի։ — Ասկէց ալ քանի մի ջահ բերէ՛ք․ — քալե՛նք նայինք, երթանք պառկինք։ Ա՛հ, Տէր Աստուած (Բ. Գաբուլէթին), իրաւ որ ժամանակն ուշացեր է, երթամ հանգստանամ, քնանամ։

(Ամէնք կ'ելլեն բաց ՃԻՒԼԻԵՏՏԱՅԷ ու ՍՆՈՒՑՉԷՆ։)

ՃԻՒԼ. Հո՛ս եկուր, դայեկուհիս․ ո՞վ է սա ազնուականը։

ՍՆՈՒՑ. Ծեր Տիբերիոսին տղան ու ժառանգն է։

ՃԻՒԼ. Հապա այն ո՞վ է, որ հիմա դռնէն դուրս կ'ելնէ։

[1]) Պտղոց, գինւոյ ևայլն պզտիկ կերուխում մը։ Թն.

ՍՆՈՒՑ. Մեղա՜յ, չե՛մ գիտեր. ան ա՛լ խելքովս երիտասարդ Բէ-դրուքիոն է կ՚ըսեմ.

ՃՈՒԼ. Հապա այն միւսը՝ որ ետեւէն կ՚երթայ ու պարել չէր ուզեր.

ՍՆՈՒՑ. Չեմ գիտեր.

ՃՈՒԼ. Գնա՛, անունն հարցո՛ւր. — Թէ որ կարգուած է, խիստ հաւանական է որ գերեզմանս՝ հարսանեկան անկողինս ըլլայ.

ՍՆՈՒՑ. Անունը Հռոմէոս է. ու Մոնդակեան մ՚է, որ ձեր թըշնամւոյն մէկ հատիկ զաւակն է.

ՃՈՒԼ. Իմ մէկ հատիկ սիրոյս՝ իմ մէկ հատ թշնամւոյս զաւակն է եղեր. առանց ճանչնալու պինտ կանուխ տեսայ՝ բայց պինտ ուշ ճանաչեցի. Նորաքանչ ծնունդ սիրոյ, որ ատելի թշնամի մը սիրելու կը պարտաւորէ զիս.

ՍՆՈՒՑ. Այդ ի՞նչ ըսել է, այդ ի՞նչ խօսք է.

ՃՈՒԼ. Հիմա պարապետի մը հետ կաքաւելու ատեն՝ իրմէ սովրած ոտանաւոր խօսքերս են.

Ներսէն կը պոռան. Ճիւլիէ՛դդա.

ՍՆՈՒՑ. Հիմա, հիմա. — շո՛ւտ ըրէ, քալէ երթանք. բոլոր օտարականները գացին. (կ՚ելլեն.)

ԴԱՍԵՐԳՈՒՔ կը մտնեն.

Հիմա նախկին տարփանքն իր դագաղին մէջն է,
Ու նոր սէր կը բացուի որ իւր ժառանգն ըլլայ.
Այն՝ որ վրայ սէրն լացաւ, եւ մեռնիլն աչքը չէ,
Ալ՝ սիրուն չերեւար՝ Ճիւլիէդին սիրոյ վրայ.
Հռոմէոս սիրուած է, ու նորէն կը սիրէ,
Նոյնպէս եւ տեսութեան կիրքէն հրապուրուած.
Ըսպասուած աղիտիցն պէտք է տրտունջ ընէ,
Սիրողն՝ յանհեղ կարթից գողնայ սիրոյն քաղցր խայծ.
Ըստ որում թշնամի, չը կըրնար մերձ երթալ
Որ ընէ զայն խոստմունքն՝ զորս սիրողք կը երդնուն.
Օրիորդն՝ նոյն սիրով, բայց միջոցն չըներեր ալ,
Որ իր նոր սիրողին հետ ընէ տեսութիւն.
Բայց կիրքն 'րենց ուժ կը տայ, ժամանակն՝ կը ներէ,
Որ երկու ներհալներն սիրով բարեխառնէ.

(կ՚ելլեն.)

# ԱՐԱՐՈՒԱԾ Բ·

## ՏԵՍԱՐԱՆ Ա·

ԳԱՊՈՒԼԷՑի պարտէզին մօտ բաց տեղ մի։

ՀՌՈՄԷՈՍ կը մտնէ։

ՀՌՈ. Ասկէ անդին կրնամ անցնիլ, քանի որ սիրտս հոս է։ Ե՛տ դարձիր, ապուշ հողեղէն, ու քո կենդրոնդ գտի՛ր։

(Պարտէզին վրայէ մագլցելով՝ միւս կողմը վար կը ցատկէ։)

ՊԷՆՎՈԼԻՕ — ՄԵՐԿՈՒՑԻՈՍ կը մտնեն։

ՊԷՆ. Հռոմէ՛ոս, հօրեղբօրորդի՛ Հռոմէոս։

ՄԵՐԿ. Այն խելացի է. ճշմարիտ վկայ՝ տուն գացած պառկած է։

ՊԷՆ. Այն այս կողմը վազեց, ու սա պարտէզին պատին վրան ելնելով ներս ցատկեց. կանչէ՛ զինք, սիրելի Մերկուտիոս։

ՄԵՐԿ. Ոչ միայն պիտի կանչեմ, այլ և բոլոր սատանաները գլուխը պիտի ժողվեմ հիմա. — Հռոմէ՛ոս, քմահաճութի՛ւն, անխելքութի՛ւն, կի՛րք, տարփածո՛ր. ցո՛նէ հառաչանքի մի կերպարանքով երևցիր աչերնուս. ցո՛նէ մէ՛կ յանգ մ՚ըսէ միայն ու գոհ ըլլամ. միայն ափսո՛ս ինձ մի պոռա. կամ, «էրը՝ ողամնեանքի հետ ցուցայանգ ըրէ՛ միայն. մեր խնամի Ափրոդիտէին մի միայն անուշիկ խօսք մ՚ըսէ, ու իր հաւկուր որդւոյն ու ժառանգին հենգնանուն մի տո՛ւր միայն, այն կտրիճ Ադամ Կուպիտոնին՝ որ երբ Գովփէթուա[1]) թագաւորը աղքատ աղջիկը կը սիրէր՝ վրան այնքան վարպետութեամբ դիպեցուց նետը։ — Չլսեր, չդնդար, տեղէ՛ն չշարժիր. սատկե՛ր է լակոտը. երդում ձգեմ վրան. — Հռոմէ՛ոս, Հռոզալինի կենդանի աչերը սիրես, իր բաց ճակատը սիրես, կարմրափայլ պրկունքը սիրես, նեղ ոտքերը սիրես, շիփ-շիտակ սրունք-

[1]) «Թագաւորն ու Աղքատ աղջիկը» անուամբ հին պարերգութեան մի կը նկատի այս պարբերութիւն։ Թն.

ները սիրես ու անոր մօտ եղած տեղուանքը սիրես՝ քու ընական կերպարանօքդ մեր աչաց երեցիր ։

ՊԷՆ. Թէ որ ձայնդ լսէ՝ պիտի բարկանայ ։

ՄԵՐԿ. Ըսածներս չեն բարկացներ զինք . գիտե՞ս երբ բարկանալ պէտք էր , երբ իր սիրողին ներկայութեան տարօրինակ ոգի մի հանելով կեցնէի , մինչև որ սիրողն ալ սատանաները կանչելով աներևոյթ ընել տար առջևէն . թէ որ այսպէս ընէի՝ ինչ որ ըսէիր իրաւունք ունենայիր . բայց ես պարկեշտ ու քաղաքավար կերպով մ'իր սիրողին անուամբը միայն կանչեցի՝ որ ինքզինք երևան հանէ ։

ՊԷՆ. Քալէ՛ երթանք . այն ինքզինք այս ծառերուն մէջ պահեց , որ գիշերուան լռութեան հետ իր մելամաղձոտ բնութիւնը յարմարցնէ ։ Իւր սէրը կոյր է , ու մթութեան հետ լաւ կը զուգայարմարի ։

ՄԵՐԿ. Թէ որ սէրը կոյր է , նշանակէտին չկրնար դիպեցնել ։ Հիմա կ'երթայ զղերբենւոյ մի տակ կը նստի , ու մտքէն կ'ըսէ որ երանի թէ իր սիրողն ալ զղեար ըլլար , ինչպէս որ աղջիկունք ալ իրարու հետ խօսիլ խնդ՛ալու ժամանակնին մէկզմէկ զղեր կը կանչեն ։ — Հռոմէոս , գիշեր բարի ։ — Երթամ , անկողինս մտնեմ . այս բաց օդին մէջ պառկիլը ինծի համար պինդ ցուրտ անկողին է ։ Քալէ՛ նայինք , երթա՞նք պիտի ։

ՊԷՆ. Քալէ՛ երթանք , ինչու որ փուճ բան է զինք հոս տեղ փնտռելը , չե՞ս նայիր որ աչքերնուս երևալ չուզեր ։

(կ'ելլեն ։)

## ՏԵՍԱՐԱՆ Բ.

**ԳԱՊՈՒԼԷՏի** պարտէզը .

ՀՌՈՄԷՈՍ կը մտնէ ։

ՀՌՈ. Խոցերու վրայ կը խնդայ այն՝ որ բնաւ խոցուած չէ ։

ՃՈՒԼԻԷԴԴԱ՝ վերէն պատուհանէ մը կ'երեւի ։

Բայց , կեցի՛ր նայինք . սա պատուհանին մէջ ցոլացող լոյսն ինչ է . արդեօք արևե՛լքն է , ուրկէ Ճիւլիէդդա արեւը կը ծագի ։ Ե՛լ ,

պայծառդ արև, ու սպաննէ նախանձ լուսինը՝ որ արդէն իսկ ցաւերէն հիւծեալ ու Թալկացեալ է, նայելով որ քեզի պէս պաշտուհին՝ իրմէ շատ աւելի սիրուն է. բայց դուն իւր պաշտուհին[1]) մ՚ըլլար. քանի որ ինք նախանձ է. իւր վեստալեան շքահանդերձը գոյնը նետած ու բղիկ բղիկ եղած է, զոր խենդերը միայն կը հագնին. փարատէ զայն իրմէ: — Ո՛հ, տարփուհիս է. ա՛հ, արդեօք գիտէ՞ տարփուհիս ըլլալը: Կը խօսի՛, բայց բան մ՚ալ չըսեր. հոգ չէ. իւր աչերը զրուց կ՚ընեն, պատասխանեմ պիտի: — Խիստ յանդուգն եմ եղեր, ինծի հետ չխօսիր. բոլոր երկնից մէջ երկու շողշողափայլ աստղեր գործ մ՚ունենալով՝ կը Թախանձեն իւր աչերը, որ մինչև ետ դառնալնին, անոնց շրջանակաց մէջ փայլփլին: Թէ որ աչերը երկինքն ըլլային և աստղերն ալ իւր գլխուն վրայ՝ կարծեմ որ իւր այտից պայծառուԹիւնը ամօԹապարտ կ՚ընէր այս աստղերը, ինչպէս որ այգալոյսը՝ ճրագը: Թէ որ աչքը երկինքն ըլլար՝ օդային տարածուԹեան մէջ այնպիսի արեգակնացայտ լուսոյ ճառագայԹներ պիտ՚ արձակէր որ Թռչունները պիտի կարծէին Թէ գիշեր չէ ու գեղգեղէին պիտի: Տե՛ս, ինտո՛ր իւր այտը ձեռքին վրայ է կռԹնցուցեր. ո՛հ, երանի՛ Թէ ձեռքին անցուցած ձեռնոցն ըլլայի որ այտին դպչելու կարող ըլլայի:

ՃԻՒԼ. Ափսո՛ս ինձ:

ՀՌՄ. Բա՛ն մ՚ըսաւ. — Ո՛հ, խօսէ նորէն, լուսափիւռ հրեշտակ. ինչու որ դուն՝ գլխուս վրայ եղած գիշերուան մէջ այնպէս փառաւոր կ՚երևաս, ինչպէս որ երկնից Թևատարած պատգամաւոր մի՝ մահկանացուաց հիացմունքին ու երկնապիշ սպիտակադարձ աչաց կ՚երևի, որոնք կռնկահակ նայուածքով՝ աչերնին վեր տնկած կ՚ապշին կը մնան, երբ այն ալ՝ դանդաղասլաց ամպերը կը ճեղքէ կ՚անցնի, և օդային անհուն անդնդոց մէջ սաւառնաԹև կը ղօղի:

ՃԻՒԼ. Ա՛հ, Հռոմէ՛ոս, Հռոմէ՛ոս. ինչո՞ւ համար Հռոմէոս ես. ուրացի՛ր հայրդ ու մերժէ այդ անունը. եԹէ ոչ, Թէ որ չես ուզեր՝ երդո՛ւմ ըրէ որ կը սիրես զիս, ու ես ալ այն ատեն Գապուլեան չեմ:

[1]) Լուսնի կամ Արտեմեայ քրմուհի: Թն.

ՀՌՈ. (մէկ կողմ) Ալ ասկէ աւելի բան լսեմ, թէ ասոր պատասխան տամ։

ՃՈՒԼ. Միայն անունդ է՝ որ ինծի թշնամի է. — դուն գրեթէ դու ինքդ ես ու ոչ թէ Մոնդակեան։ Ու Մոնդակեան ըսածդ ալ ի՞նչ է. ո՛չ ձեռք է, ո՛չ ոտք, ո՛չ բազուկ է, ո՛չ դէմք և ոչ մարդոյս մարմնոյն վերաբերեալ ուրիշ մէկ մասն է։ Ա՛հ, ուրիշ անուն մ՚առ. անունի վրայ ի՞նչ կայ։ Մեր վարդ ըսած ծաղիկը, ուրիշ որ և է անուն մի տայինք, ո՞չ ապաքէն դարձեալ իւր անուշահոտ բուրմունքը պիտի ծաւալէր։ Ասանկ ալ Հռոմէոսը՝ Հռոմէոս կոչուած չըլլար, առանց իւր անուանը, իւր վրայ ունեցած սիրելի կատարելութիւններէն զրկուած չպիտ՚ ըլլար. — Հռոմէո՛ս, հանէ՛ նետէ՛ անունդ. և այդ անուանդ տեղ՝ որ քու և ոչ մէկ մասդ է՝ ինքզինքս բոլորովին առ։

ՀՌՈ. Ես խօսքդ կը բռնեմ. զիս միայն տարփաւորդ կանչէ՛, ու նորէն մկրտուած կ՚ըլլամ. ալ այսուհետև ես Հռոմէոս չեմ։

ՃՈՒԼ. Բայց դուն ի՞նչպէս մարդ ես, որ գիշերուան մթութեան մէջ կաղ ի կաղ կը գաս և գաղտնիքս բերնէս կը կորզես։

ՀՌՈ. Անունով՝ չեմ գիտեր թէ ի՞նչպէս իմացնեմ թէ ո՛վ եմ. անունս՝ սիրելի սրբուհիս, ինծի ատելի է, ըստ որում քեզ թշնամի է. գրուած ըլլար՝ այդ խօսքը պատռէի պիտի։

ՃՈՒԼ. Ականջներս՝ դեռ այդ լեզուին արտասանութեան հարիւր խօսքերն անգամ չկլլեցին. սակայն ձայնը կը ճանաչեմ. դուն Հռոմէոսը չե՞ս ու Մոնդակեան չե՞ս։

ՀՌՈ. Ո՛չ մէկն եմ և ոչ մէկալը, թէ որ երկուքն ալ քեզ հաճելի չերևար, սիրուն հրեշտակս։

ՃՈՒԼ. Ըսէ՛ ինծի, ինտո՛ր հոս եկար, ու ի՞նչ բանի համար. պարտէզին պատերը բարձր են ու մագլցելն ալ դժուար. թէ որ հոդ տեղ քեզ ազգականներէս մին տեսնէ և ո՛վ ըլլալդ իմանայ՝ գիտնաս որ մահդ անհրաժեշտ է։

ՀՌՈ. Սիրոյ թեթևաթռիչ թևերով այս պատերուն վրայէն անցայ. վասն զի, քարեղէն կոպարները՝ սիրոյ արգելք չեն կրնար ըլլալ. ու ի՞նչ որ սէրը կարենայ ընել՝ դարձեալ սէրն է որ զան ընելը փորձելու կը համարձակի, անոր համար, ազգականներդ ինծի չեն կրնար արգելք ըլլալ։

ՃԻՒԼ. Թէ որ քեզ հոս տեսնեն, կ'ըսպաննեն զքեզ։

ՀՌՈ. Ափսո՜ս. ինծի համար՝ աւելի քո աչքէդ վտանգ կայ, քան թէ իրենց քսան հատ սուրերէն. միայն անգամ մ'անուշութեամբ նայիս ինձ՝ իրենց թշնամութեան դէմ զիս կը զինես։

ՃԻՒԼ. Բոլոր աշխարհք ալ տային՝ քեզ հոս տեսնելնին չէի ուզեր։

ՀՌՈ. Իրենց աչքին չերեւալու համար՝ գիշերուան վերարկուս վրաս առած եմ. միայն թէ դուն սիրէ զիս, ու թող անոնք զիս հոս գտնելու ըլլան. նախադաս կը սեպեմ որ կեանքս՝ իրենց ատելութեամբը աւելի աղէկ վերջ մ'ունենայ, քան թէ քո սէրէդ զրկուած՝ մահս երկարաձգի։

ՃԻՒԼ. Ո՞վ առաջնորդեց քեզ որ այս տեղս գտնես։

ՀՌՈ. Սէրը՝ որ նախ ներշնչեց ինձ ճամբան գտնելու. ինք՝ ինձ խրատ տուաւ, ես ալ իրեն աչերս տուի։ Թէեւ նաւուղիղ չեմ, սակայն ամենէ հեռաւոր ծովեզերքներն իսկ ըլլայիր, զորս անհուն ովկիանոսք կը լուան, դարձեալ ետեւէդ պիտ' իյնէի որ քեզի պէս խնչքը ձեռք անցունելու համար ամեն վտանգ աչքս առնեմ։

ՃԻՒԼ. Գիտես որ գիշերուան դիմակը երեսիս վրան է, եթէ ոչ՝ այս գիշեր քեզ բոլոր ըսածներս լսելուդ համար կուսական շառագնութիւն մ'այտիս վրան տեսնէիր պիտի. Ձեւակերպութեամբ կեղծէի պիտի, պիտի կեղծէի ու կեղծակերպութեամբ ըսածներս ուրանայի պիտի։ Բայց երթան բարեա՛ւ փուճ յարգանքը։ Կը սիրե՞ս զիս. գիտեմ որ հիմա — Այո՛ պիտ' ըսես, ու խօսքդ պիտ' առնեմ. այսու ամենայնիւ, երդում ընես նէ ալ օրին մէկն երդմնազանց կրնաս ըլլալ. Դիոս՝ կը խնդայ կ'ըսեն տարփաւորաց սուտ երդմանց վրայ։ Ա՛հ, սիրուն Հռոմէոս, թէ որ զիս կը սիրես՝ խոստովանէ ինձ հաւատարմաբար. ու թէ որ կարծես թէ պինտ հեշտեաւ զիս պատրեցիր, դէմքս պիտի կախեմ, պիտի դժկամակիմ ու քեզ չէ՛ պիտ' ըսեմ. այն ատեն դուն ալ պիտ' ըսկսիս սիրոյ երդմամբ խոստովանութիւն ընել, ուրիշ կերպով, աշխարհք ալ տան չըլլար։ Ճշմարիտ կ'ըսեմ, սիրուն Մոնդակեան, սիրակիզեալ եմ քեզմէ, ասոր համար հիմա դուցէ կարծես թէ թեթեւամիտ եմ. բայց, հաւատա ինձ, ազնուականս, որ զիս աւելի հաւատարիմ պի-

տի դտնես քան փայլն ուհիները՝ որք ամօթխած երեւալու հարպիկութիւնն ունին։ Այս ալ խոստովանիմ, որ աւելի ամօթխած կըրնայի երեւալ, թէ որ յանդէտս իմ՝ ճշմարիտ սիրոյս եռանդը բերնէս լսած չըլլայիր. անոր համար, ներէ ինձ, ու իմ ինքնանուիրութիւնս մի վերընծայեր թեթեւ սիրոյս, զոր մթին գիշերը՝ այս կերպով երեւան հանեց։

ՀՌՈ. Անուշիկ օրիորդ, նա օրհնեալ լուսնին վրայ, որ սա պըտղատու ծառոց գագաթները կ'արծաթազօծէ, երդում կ'ընեմ—

ՃՈՒԼ. Ո՛հ, լուսնին վրայ երդում մ'ըներ, յեղյեղուկ լուսնին վրայ մ'երդնուր՝ որ իր բոլորածիր շրջանին մէջ, ամեն ամիս կը փոփոխի, կը վախնամ որ մի գուցէ սէրդ ալ նոյնպէս փոփոխական ըլլայ։

ՀՌՈ. Ի՞նչ բանի վրայ երդում ընեմ։

ՃՈՒԼ. Բնաւ երդում մ'ըներ. այլ թէ որ երդում պիտ՝ ընես, քո վեհանձն անձիդ վրայ երդում ըրէ, որ իմ հեթանոսութեանս աստուածն է, ու այն ատեն հաւատամ քեզ։

ՀՌՈ. Թէ որ սրտիս սիրախանդ սէրը—

ՃՈՒԼ. Չէ՛, չէ. երդում մ'ըներ. Թէեւ քեզի հետ ըլլալուս համար չափէ աւելի ուրախ եմ, սակայն այս գիշեր քեզի հետ այս դաշինքն ընելու հաճութիւն չունիմ. պինտ յանդգնական, պինտ անխոհեմ, պինտ յանկարծական ու պինտ կայծակնանման է, որ —փայլակեց խօսքն ըսել է առաջ՝ գոյութիւնը կը դադրի։ Գիշեր բարի, սիրականս։ այս սիրոյ կոկոնը՝ որ ամառնային շնչով կը հասուննայ, թող նորէն իրարու հանդիպելու ժամանակնիս պինտ չընորհափթիթ ծաղիկ մ'երեւայ։ Գիշեր բարի, գիշեր բարի. թող սրտիս մէջ տիրող քաղցր հանգստութիւնն ու խաղաղութիւնը՝ քու սրտիդ մէջն ալ հանգչի։

ՀՌՈ. Ո՛հ, ասանկ դժկամահաճ թող տալով զիս երթամ պիտի։

ՃՈՒԼ. Այս գիշեր ի՞նչ կամահաճութիւն կրնաս ունենալ։

ՀՌՈ. Մեր փոխադարձ սիրոյ անկեղծ խոստումը։

ՃՈՒԼ. Ես իմս տուի քեզ արդէն՝ ինձմէ խնդրելէդ առաջ։ ու կ'ուզէի որ գարձեալ տալու կարող ըլլայի։

ՀՌՈ. Ե՞տ առնել կ'ուզես զայն. ու ի՞նչ պատճառի համար, սիրելիս։

ՃՈՒԼ. Որպէս զի ազատ ըլլամ, ու զայն նորէն քեզ տալու կարենամ: Բայց և այնպէս, արդէն ստացածիս դարձեալ կը բաղձամ. քո վրայ տածած շնորհասիրութիւնս՝ ծովու պէս անհուն է ու սէրս ալ անոր պէս խորունկ. որքան շնորհեմ քեզ, այնքան շատ կ'ունենամ, ըստ որում երկուքն ալ անվերջանալի են: (Սնուցիչը կը կանչէ ներսէն) Ներսէն ձայն մի կը լսեմ. մնաս բարեաւ, ազնիւ սիրականս: — Հիմա, հիմա, դայեկուհիս: — Սիրելի Մոնդագեանս, հաւատարիմ մնաս: Պահ մի կեցիր, հիմա նորէն կը գամ: (կ'ելնէ:)

ՀՌՈ. Ո՛վ օրհնեալ գիշեր, ո՛վ ամենօրհնեալ գիշեր: Բայց գիշեր ըլլալուն՝ կը վախնամ որ բոլոր ասոնք ցնորք չըլլան, ու այսքան շողոմական քաղցրութիւններն ալ սուտ չըլլան:

ՃՈՒԼԻԷԴԴԱ նորէն կը գայ վերը:

ՃՈՒԼ. Երեք խօսք ալ ըսեմ քեզ, սիրելի Հռոմէոս, ու անկէ ետք ալ իրաւցնէ գիշեր բարի: Թէ որ սիրոյդ հակամիտութիւնները պատուաւոր են ու միտքդ ամուսնութիւն է, երբ քեզ վաղը մարդ մի գտնեմ ու խրկեմ՝ հետն իմացուր ինձ, թէ ո՛ւր տեղ և ի՛նչ ժամանակ կ'ուզես որ հարսանեաց պսակն ընենք. այն ժամանակ իմ բոլոր բաղդս քո ոտքիդ տակը կը դնեմ ու բոլոր աշխարհք ետևէդ կը գամ, ամենասիրելի տէրս:

ՍՆՈՒՑ. (Ներսէն) Խա՛մթուն:

ՃՈՒԼ. Հիմա կը գամ. — բայց թէ որ միտքդ բարի չէ, ես կ'աղաչեմ—

ՍՆՈՒՑ. (Ներսէն) Խա՛մթուն:

ՃՈՒԼ. Է՛ հասկցանք, եկայ. — որ հետապնդութիւնդ դադրեցընես ու զիս իմ տրտմութեանցս մէջ թողուս. վաղը քեզ մարդ կը խրկեմ:

ՀՌՈ. Հոգիս վկայ—

ՃՈՒԼ. Հազար անգամ գիշեր բարի: (կ'ելնէ:)

ՀՌՈ. Հազա՛ր անգամ թշուառացայ՝ լոյսէդ զրկուելով. — Սէրը՝ դէպի սէր կը վազէ, ինչպէս դպրատան աշակերտք իրենց գըրքերուն. բայց սիրողը սիրողէն կը զատուի՝ ինչպէս աշակերտք կախած դէմքով դէպի դպրատուն: (Կամաց կամաց երթալով:)

ՃՈՒԼԻԷԹԹԱ նորէն կը գայ վերը։

ՃՈՒԼ. Սո՛սթ, Հռոմէ՛ոս, սո՛սթ։ — Ա՛հ, ինչո՞ւ բազէպանի պէս չեմ կրնար որ սա բազէն[1]) ետ կանչեմ ու որսամ։ Գերութիւնը՝ խեղդուկ ձայն կ'ունենայ ու բարձր ձայն չկրնար հանել. եթէ ոչ, հիմա Արձագանգին օդադինթ ձայնը՝ իւր բնական անձաւներուն մէջ իմ ձայնէս աւելի հեղձամղձուկ պիտի դառացնէի, սիրելի Հռոմէոսիս անունը իրեն կրկնել տալով։

ՀՌՈ. Հոգիս է որ անունս կը տայ։ Ցարփաւորաց լեզուները՝ որքան արծաթաձայն քաղցրութեամբ կը հնչեն գիշերով, ինչպէս որ ներդաշնակաւոր երաժշտութիւնը՝ ուշադիր ականջներուն։

ՃՈՒԼ. Հռոմէ՛ոս։

ՀՌՈ. Սիրանո՛յշս։

ՃՈՒԼ. Վաղը ժամ քանիի՞ն խրկեմ քեզ մարդը։

ՀՌՈ. Ժամն իննին։

ՃՈՒԼ. Անպատճառ. տակաւին քսան տարի կայ մինչև այն ատեն։ Մոռցայ. քեզ ի՞նչ բանի համար ետ կանչեցի ես։

ՀՌՈ. Թո՛ղ սպասեմ հոս մինչև որ միտքդ գայ։

ՃՈՒԼ. Հոս տեղ սպասելդ տեսնելով բոլորովին մոռնամ պիտի, քանի որ քո սիրելի ընկերութիւնդ որքան սիրելս միտքս բերեմ։

ՀՌՈ. Ես ալ՝ առաւել ևս պիտի սպասեմ, որ ալ աւելի քեզ մոռցնել տամ, ես ալ նոյնպէս մոռնալով իմ տունս՝ բաց ասկէ։

ՃՈՒԼ. Գրեթէ առաւօտ է եղեր, ու կ'ուզէի որ գացած ըլլաս. սակայն զակատեալ զքօսասէրէ մ'ալ չեմ տարբերիր, որ ձեռքն եղած գերի թռչունը՝ շղթայակապ խեղճ կալանաւորի պէս ձեռքին մէջէն ուրիշ բանի համար թող չտար որ երթայ ոստոստէ, բայց եթէ կապուած մետաքսեղէն թելը քաշելով նորէն իւր քով բերելու, և անոր ազատութեան վրայ ունեցած սիրոյն նախանձաբեկութիւնն յայտնելու։

ՀՌՈ. Երանի՜ թէ թռչունդ ըլլայի։

ՃՈՒԼ. Ես ալ այնպէս, սիրելիս. սակայն չէի ուզեր, ըստ ո-

[1]) Արու բազէն։ Թն.

րում զքեզ այնքան պիտի զգուէի որ պիտի ճզմուէիր։ Գիշե՛ր բարի, գիշե՛ր բարի։ Այնքան քաղցր ցաւ մ'է ինձ քեզմէ զատուիլս, որ մինչև առաւօտ ալ կենայի՝ գիշեր բարի պիտ՛ ըսէի։ (կ'ԵԼՆԷ։)

ՌՈՄ. Քունն աչերուդ վրան, ու հանգստութիւնը սրտիդ մէջ բնակին։ — Երանի՜ թէ քունն ու հանգստութիւնն ես ըլլայի, որ այսպիսի քաղցրութիւնը վայելել տայի։ Հիմա ելնեմ հոգևոր հօրս խուցն երթամ, իր օգնութիւնը խնդրեմ ու բաղդաւոր վիճակս պատմեմ։ (կ'ԵԼՆԷ։)

## ՏԵՍԱՐԱՆ Գ.

*Հայր* **ԼԱՒՐԵՆՑԻՈՍ***ի խուցը։*

Հայր ԼԱՒՐԵՆՑԻՈՍ կը մտնէ ձեռքը կողով մը։

Հ. ԼԱՒ. Գորշակն այգը՝ կնճռադէմ գիշերուան վրայ կը ժպտի, իր լուսեղէն շառաւիղները արևելեան ամպերը նարօտախայտելով. ու ճառագայթախառն մթութիւնը՝ երերացող գինովի պէս, Տիտանայ[1]) անուոց առջև, ցերեկեան շաւիղներէն կը հեռանայ. Հիմա արևն իր տօչորակէզ լոյսն աշխարհի վրայ ծաւալելէ, ու ցերեկը կենդանացնելէ, և գիշերային խոնաւաթոր ցօղը ցամքեցնելէ առաջ՝ երթամ սա մեր ուռեննեայ կողովը մահաբեր խոտերով և թանկագին ծաղիկներով լեցնեմ։ Երկիրս՝ որ բնութեան մայրն է, իր գերեզմանն է. և իր հողաթաղ գերեզմանն ալ՝ իր արգանդն է. ահա՛ իր արգանդէն ելած բազմատեսակ զաւակներն ենք մեք, որ իր կաթը ծծած ատեննիս՝ իր բնական ծոցը կը գտնեմք. շատեր կան որ զանազան առաքինութեանց համար, և մէկն ալ չըկայ որ քանի մ'առաքինութեանց համար՝ մէկը մէկալէն չզերազանցէ, այսու ամենայնիւ ամէնքն ալ իրարմէ կը տարբերին։ Ո՛հ, ինտո՛ր մեծապանծ է այն զօրաւոր առաքինութիւնը, որ խոտերուն, տնկոց, քարանց և իրենց հարազատ տեսակներուն մէջ թաղուցեալ է. ինչու որ, աշխարհիս երեսը գոյացածներուն մէջ այնքան անպիտան բան մը չկայ, որ աշխարհիս մասնաւոր օգուտ մը չընծայէ,

[1]) Արև։ Թն.

տասանկ ալ այնքան օգտակէտ բան մ'ալ չկայ, որ իր սովորական գործածութենէ զրկուելով՝ իւր հարազատութիւնը չկորսնցնէ, չարաչար գործածութեամբ։ Առաքինութիւնը՝ չեղագործուի նէ՝ ինքնիրեն մոլութիւն մի կը դառնայ. և երբեմն ալ մոլութիւնը՝ գործքովը յարգը կ'աւելցնէ։ Սա փոքրիկ ծաղկին փոխոկին մէջ՝ թոյն ալ կայ, դեղորէական զօրութիւն ալ կայ. ինչու որ հոտոտելու ըլլաս՝ բուրմունքը բոլոր անդամները կը կազդուրէ, համն առնելու ըլլաս՝ իւր հիւթովը ամեն զգայութիւնները կ'ըսպաննէ։ Դեռ երկու տասանկ հակառակ թշնամիներ, բուսեղէնաց վրայ եղածնուն պէս, մարդոց վրայ ալ կը տիրապետեն, որոնք են շնորհքը և դժկամակութիւնը. և ուր որ ասոնց վատթարագոյնը մէկալէն աւելի կը տիրազօրէ՝ մահուան քաղցկեղը շուտ մ'այն տունկը կ'ուտէ կ'ըսպառէ։

ՀՌՈՄԷՈՍ կը մտնէ։

ՀՌՈ. Բարի լոյս, տէ՛ր հայր։

Հ. ԼՈՒ. Օրհնեալ ըլլայ. Այս ինչ առաւօտեան լեզու է որ այսօքան քաղցրութեամբ կը բարևէ զիս։ — Կորիճ որդեակ, այսպէս կանուխ անկողնոյդ ողջոյն տալիր, պիտ՝ իմացուէր որ գլուխդ հիւանդոտ է. հոգը՝ ամեն ծեր մարդոց աչաց մէջ կը հսկէ, և ուր որ հոգը կը բնակի՝ հոն քունը երբէք ապաստանարան չգտներ, բայց ուր որ անհոգատար երիտասարդը անվրդովուղեղ քնով իւր անդամները կ'երկնցնէ, հոն՝ ոսկեդարեան քունը կը տիրապետէ. ասոր համար, քո այգաղարթոյց արթնութիւնդ ինձ հաւատալի կերպով մակաբերել կը տայ որ վրդովխառնութիւնդ քեզ կանուխ է արթնցուցեր. կամ, եթէ ոչ, ահա հիմա շիտակն ըսեմ, — այս գիշեր մեր Հռոմէոսն անկողին չէ մտեր։

ՀՌՈ. Վերջին ըսածդ շիտակ է, բայց հանգստութիւնս խիստ անվրդով էր։

Հ. ԼՈՒ. Աստուած թողութիւն շնորհեսցէ. Հռոզալինի հե՞տ էիր։

ՀՌՈ. Չէ՛, տէր հայր, Հռոզալինի հետ չէի. ես արդէն այդ անունը և այդ անուան մորմոքները մոռցայ։

Հ. ԼՈՒ. Շատ լաւ, օրհնեալ զաւակ. հապա ո՞ւր գնացիր ուրեմն

ՀՌՈ. Հիմա իմացնեմ քեզ որպէս զի նորէն չհարցնես ։ Ես իմ թշնամեացս խնճոյքը գնացի. հոնտեղ՝ յանկարծ վիրաւորեցայ մէկէ մի ու այն ալ ինձմէ վիրաւորեցաւ. մեր երկուքնուս ապաքինութիւնը՝ քո սուրբ դարմանիցդ օգնութեանը կարօտ է ։ Հիմա իմացի՛ր, հա՛յր սուրբ, որ ատելութիւն մի չունիմ սրտիս մէջ, ու նայէ ինչպէ՛ս ինծի հետ՝ թշնամւոյս համար ալ բարեխօսութիւն կ'ընեմ ։

Հ. ԼԱՒ. Օրհնած, աւելի պարզ զրուցէ՛ որ դիտաւորութիւնդ իմանամ. չե՞ս գիտեր որ առեղծուածաւոր խոստովանութիւնը՝ խորհրդաւոր արձակում կը գտնէ ։

ՀՌՈ. Ուրեմն բացէ ի բաց իմացնեմ քեզ որ սրտիս անգին սէրը՝ հարուստ Գաբուլէտի սիրուն աղջկան վրայ դրի, և իւր ալ սրտագին սէրը՝ իմ վրայ մնաց։ Մենք ամեն բան տնօրինած ենք, միայն թէ նայինք սրբութիւնդ ալ ամուսնութեան սրբազան արարողութիւնները ինչպէս պիտի տնօրինէ ։ Մենք իրարու հետ երբ, ո՛ւր տեղ և ինտո՞ր տեսնուելնիս, խօսակցելնիս և իրարմէ երդում առնելնիս՝ ճամբան քեզ կը պատմեմ ։ Բայց ամեն բանէ առաջ սա կ'աղաչեմ, որ մեզ այսօրս պսակելու բարեհաճիս ։

Հ. ԼԱՒ. Ո՛վ երանելի Սուրբ Ֆրանչիսկոս, այս ի՞նչ փոփոխութիւն է ։ Այդքան շուտով աչքէ հանեցի՞ր Հռոզալինը զոր այնքան շատ կը սիրէիր ։ Չըսե՞նք թէ երիտասարդաց սէրը իրաւցնէ իրենց սրտին մէջ չէ՛, այլ իրենց աչերուն մէջն է ։ Տէ՛ր ողորմած Աստուած, քո նիհարցած այտերդ՝ ո՛րքան արտասուաջրերով լուացուեցան, այն ո՛րքան աղեջուրեր էին որ պարապ տեղ հոսելով փճացան որ սէրը ձեռք բերեն, որոյ համն իսկ չառիր ։ Դեռ արեւը իւր ճառագայթները լաւ մի չկրնար սփռել քո հանած հառաչանացդ մուխերուն պատճառաւ, և քո վաղեմի հեծկլտանքներդ դեռ իմ ծեր ականջներուս մէջ կը վժան ։ Ահա՛ տես, այտիդ վրան հին արտասուացդ մէկ արատանիշն իսկ մնացեր է որ դեռ սրբուած չէ ։ Թէ որ երբեք դուն՝ դու ինքդ էիր, և այս վիշտերն ալ քո՛դ էին, դո՛ւն և այս վիշտերը՝ բոլորն ալ Հռոզալինայ համար էին. հիմա փոխեցի՞ր միտքդ, թէ որ կրնաս՝ հանէ՛ բերնէդ այս խօսքը — երբ մարդիկ լքանին, թէ որ կանայք պակաս գըտնուին՝ պակասաւոր չեն ։

ՀՌՈ. Դուն զիս շատ անգամ յանդիմանեցիր, Հռոզալինը սիրելուս համար։

Հ. ԼՕՒ. Զափէն աւելի սիրելուդ համար յանդիմանեցի, որդեակ, ոչ թէ սիրելուդ համար։

ՀՌՈ. Ու խրատ տուիր որ սէրս թաղեմ։

Հ. ԼՕՒ. Ո՛չ թէ գերեզմանի մէջ, այլ՝ մէկը գաղտնի պահէ, որ միւսը միշտ ձեռքդ ըլլայ ըսի։

ՀՌՈ. Կ'աղաչեմ մի՛ յանդիմաներ զիս. հիմակ սիրածս՝ շնորհացս դէմ շնորհք, ու սիրոյս դէմ սէր կը փոխարինէ. միւսն ասանկ չըրաւ։

Հ. ԼՕՒ. Ո՛հ, սիրողդ լաւ գիտէր, որ քո սէրդ դասը բերնուց սերտ ըրած էր ու հեգել չէր գիտեր։ Բայց քալէ՛ նայինք, անդրոշամիտ որդի, հետս եկուր, ես քեզ միայն մէ՛կ բանի համար պիտ' օգնեմ, ինչու որ, թէ որ այս զուգակցութիւնը տեղի ունենայ, այնքան երջանիկ վախճան մի պիտ' արտադրէ, որ ձեր գերդաստանաց ատելութիւնը՝ ճշմարիտ սիրոյ պիտի փոխուի։

ՀՌՈ. Ի սէր Աստուծոյ, շո՛ւտ ըէ, երթա՛նք. վայրկեան մ'իսկ չեմ կրնար կորսնցնել։

Տ. ԼՕՒ. Խոհեմաբար ու կամաց քալողին ոտքը չգթիր. ընդհակառակը, շուտ վազողներուն ոտքերը կը սկրդին։ (կ'ելնեն։)

# ՏԵՍԱՐԱՆ Դ.

Փողոց մի։

ՊԷՆՎՕԼԻՕ և ՄԵՐԿՈՒՑԻՈՍ կը մտնեն։

ՄԵՐԿ. Ո՞ր սատանային ծակն է մտեր Հռոմէոսը. — այս գիշեր տուն չեկե՞ր է։

ՊԷՆ. Իւր հօրը տուն չէ գացեր. իւր ծառային հետ տեսնուեցայ։

ՄԵՐԿ. Ա՛հ, այն քարասիրտ Հռոզալինայ ինչ ըսեմ, այն դեղնած աղջկան, որ խեղճ երիտասարդը այնքան կը խոշտանգէ, որ անպատճառ պիտի խենդեցնէ զայն։

ՊԷՆ. Դիպալտոս, ծեր Գաբուլէտի ազգականը՝ անոր հօրը տուն մարտադիր մի խրկեր է։

ՄԵՐԿ. Մենամարտութիւն կայ, ճշմարիտ որ։

ՊԷՆ. Հռոմէոս պատասխան տալ պէտք է։

ՄԵՐԿ. Գիր գիտնալէ ետք, ով որ կ՚ուզէ ըլլայ, նամակի մի պատասխան կրնայ տալ։

ՊԷՆ. Ի՛նչ կ՚ըսես, նամակը գրողին պատասխան տայ պիտի թէ իր յանդգնութեան դէմ ինչպէս կը յանդգնի։

ՄԵՐԿ. Ափսո՜ս, խեղճ Հռոմէոս՛; արդէն մեռած մարդուն մէկն է, որ սպիտակ աղջկան մի սև աչքէն նետահարեցաւ և անոր սիրահրապոյր երգովը ականջէն զարնուեցաւ. իր սրտին սլաքը՝ զաչացու աղեղնաքարշ տղուն քաշած նետին զօրութենէ իր սիրտը վիրաւորեց. ասանկ մարդը Դիպալտոսի դէմ կրնա՞յ ելնել։

ՊԷՆ. Դո՞ւն ալ, Դիպալտոսն ո՞վ է։

ՄԵՐԿ. Կատուներուն իշխանէն[1]) ալ պատուական մարդուն մէկն է, ճշմարիտ։ Հը՛. անանկ քաջ մ՚է որ պատուականաբար մարդ կը մեռցնէ։ Խաղերով խաղ կանչելու պէս, ժամանակին, միջոցներուն և համեմատութեանց մեծ ուշադրութիւն կ՚ընէ, քիչ մ՚իր նիսակորձին վրայ կը դադարի, ու մէկ, երկու, կ՚ըսէ՝ երրորդին կուրծքին մէջ կը մխէ. հասկցածդ չէ, հեռուանց մետաքսեղէն կոճակի մի վրայ նշան առնող սպանդապետին մէկն է, իրաւցնէ մենամարտիչ մ՚է, մենամարտի՛չ. առաջին կարգի բարի-զաւակ ազնուական մ՚է, ճշմարիտ, վերոյիշեալ առաջին և երկրորդ տեսակ արհեստներուն մէջ։ Հը՛. տեսնէք մէկհեղ սուրն ինչպէս կը խաղցնէ, լակոտը, այն բասսադօ, բունթօ րեվերսօ և հէյը[2])։

ՊԷՆ. Ի՞նչը։

ՄԵՐԿ. Ի՞նչ գիտնամ ես. մէկ շատ նորասէր հակիթներու կոտրատելով, կակազելով համովիկ-համովիկ խօսքեր զրուցելը[3]) այն անուշիկ մանուշիկ արտասանութիւնները և նորելուկներ հնա-

[1]) Տե՛ս «Աղուէսին Ռէյնարդոս» ըսուած պատմութիւնը՝ թն.

[2]) Զինամարզութեան մէջ գործածուած բառեր։ թն.

[3]) Այս տեղ Հեղինակն իր ժամանակին նորելուկաբանները կը պախարակէ։ թն. Ասոնց յարմարցուցինք մէկ մասը։ Ծ. Թ.

լեզուներուն ամենաքաղցրութիւնը․ Հապա՛ Աստուած վեր վկայ ըլլայ գիտեմ ինչ պատուական պողպատ ունեցող սուր մ'է, գեղանի ինչ շնորհալի մարդ մ'է, ինչ շնորհալի անառակուհի մ'է ըսելները։ Ի՛նչ ըսել է, բարեկամս, վշտալի բան մը չէ՞ այն օտարասէր ճանճերէն նեղուիլը․ այն նորելուկասէր փէնտօմներէն, որոնք իրենց նեղ տաբատներուն մէջ այնքան հաճութիւն կ'ըզգան, որ մեր լայնուարձակ ու հին ճիպոններուն մէջ բաւական տեղ չեն կրնար գտնել։ Հապա իրենց մէկ երկու խօսքին միջոցը քորփօնէ մոսո ըսելը, պօն, պօն, ըսելները։

ՀՌՈՄԷՈՍ կը մտնէ։

ՊԷՆ․ Ահա՛ Հռոմէոսը, ահա՛ կը գայ Հռոմէոս։

ՄԵՐԿ․ Առանց թեփի՝ չոր հունկա կը նմանի խեղճը։ — Ո՛վ գէր ու պարարտ միս, այդ ինչպէս չորցեր ձկնացեր ես։ — Հիմա ճիշդ Բէդրարգայի խելքէն յորդած մարդոց կարգն անցնելու արժանի չէ՞, տես անգամ մը․ Լաուրա՝ աստր տարփուհւոյն քով խոհակերուհի մ'եղած ըլլար պիտի, թէև ան՝ իրմէ շատ աւելի պատուաւոր սիրող մ'ունէր որ Տիտոսը՝ Թօնթօշի հետ յանգեցնէ․ Կղէոպատրան՝ գնչուապարտի հետ․ Հեղինէն և Հերոնը՝ կաւատուհիներու և շնացողներու հետ․ Թիզպէն՝ գորշակնի հետ, և այլն․ բայց հիմա այս խօսքերն ընելու ատենը չէ։ — Պարո՛ն Հռոմէոս, ահա՛ քո գաղղիական բոնժուռիդ գաղղիական պոնժուռ մը։ Երէկ գիշեր մեզ պինտ աղուոր խաղ մը խաղացիր։

ՀՌՈ․ Բարև երկուքնուդ ալ։ Ես ձեզի ի՞նչ խաղ խաղացի։

ՄԵՐԿ․ Քնանամի խաղը, տէ՛ր իմ, քնանամի՛․ խելքդ չըզգա՞ց։

ՀՌՈ․ Ներէ՛ ինձ, սիրելի Մերկուտիոս․ գործս պինտ մեծ էր և իմ գտնուածիս պէս ասանկ պարագայի մը մէջ՝ մարդ կրնայ քաղաքավարութիւնը ոտքի տակ առնել։

ՄԵՐԿ․ Այդ խօսքը՝ այս քո գտնուածիդ պէս պարագայի մը մէջ՝ մարդ խողի մսին վրայ գձկուելու կը պարտաւորի ըսելու պէս բան մ'է։

ՀՌՈ․ Ըսել է — խոնարհութիւն ընելու։

ՄԵՐԿ․ Պինտ քաղաքավարութեամբ խելքդ տեղ ըրաւ։

ՀՌՈ․ Ամենաքաղաքավար արտայայտութեամբ։

ՄԵՐԿ. Անշուշտ. ես ալ յարդարանութեանց պէտք անոյշ գոյն ունիմ։

ՀՈՐ. Ծաղկա՞նց պէս։

ՄԵՐԿ. Հապա։

ՀՈՐ. Անոր համար հողաթափներս աղւոր ծաղիկներու պէս փունջեր ունին եղեր։

ՄԵՐԿ. Դո՛ւն ալ, Աստուած սիրես, հիմա այնքան կատակ պիտի ընես հետս, որ հողաթափներդ պիտի հինցնես, որու բարակ տակ-կաշին մաշուելէն ետքն իսկ, կատակը պարզապէս եզական բանի պէս կը մնայ գործածուելէն ետքն ալ։

ՀՈՐ. Ո՜վ եղածալ տափակաշիով շինուած կատակ, որ պարզութեանն համար միայն եզական է[1])։

ՄԵՐԿ. Քովերնիս եկո՛ւր, սիրելի Պէնվոլիօ, խելքս պինտ այնքան հեռուն չհասնիր։

ՀՈՐ. Խարազանէ՛ ու խթէ՛, որ աւելի շուտ հասնիս, եթէ ոչ՝ յաղթեցի կը պոռամ։

ՄԵՐԿ. Թէ որ խելքդ սագարշաւ կ՚ընէ, բանդ լմնցած է. ինչու որ դու քո զգայարանացդ միայն մէկին մէջ՝ հաւաստի եմ, որ իմ հինգիս մէջ եղածներէն աւելի սագութիւն ունիս։ Հիմա զիս սագի տե՞ղ պիտի դնես։

ՀՈՐ. Թէ որ սագի պէս սեպուած չըլլայիր իմ քովս, երբէք ուրիշ բանի տեղ դրուած չպիտ՝ ըլլայիր։

ՄԵՐԿ. Այդ կատակիդ համար ականջդ պիտի խածնեմ։

ՀՈՐ. Մ՚ըներ, գուն ալ, ազնիւ սագ, մի խածներ։

ՄԵՐԿ. Խելքդ պինտ թթու խնձոր մ՚է եղեր. պինտ կծու հիւթ ունի գիտե՞ս։

ՀՈՐ. Ու կարծես որ սիրուն սագի մը մէջ լեցնելու չափ բաւական չէ՞։

ՄԵՐԿ. Հօ՛, ինչ ըսել է, ուլենայ կաշիի նման խելք մ՚է, որ մէկ բթաչափ նեղութիւնը՝ մէկ կանգունի չափ լայնութեամբ կը տարածի։

1) Այս պարբերութեանց, ինչպէս և հետևեալց մէջ, Հեղինակնիս վարպետօրէն այնպիսի բառախաղութիւններ կ՚ընէ որոնք իրարու պէտք մեզ արտատանութիւն ունին։ Ծ. Թ.

ՌՈՄ. Ես ալ հիմա այդ լայնութեամբ բառով կը տարածեմ խելքդ, որ սագ բառին յարուելով՝ քու գէր և լայն սագ մ'ըլլալդ կը ցուցնէ։

ՄԵՐԿ. Շատ ապրիս. հիմա ասոնք սիրոյ համար հառած հառաչանքներէդ աւելի աղէկ չե՞ն. ահա հիմա ընկերասէր եղար, տեսար. հիմա ահա դուն Ռոմէոն ես. ալ հիմա դուն՝ դու եղար, թէ արուեստակութեամբ և թէ բնութեամբդ. ինչու որ, այդ յիմար սէրդ փախուկի մը կը նմանի որ վեր-վար վազելով ծակ մը կը փնտռէ որ իր ձագը մէջը պահէ։

ԲԷՆ. Կեցի՛ր հոդ, կեցի՛ր հոդ։

ՄԵՐԿ. Դուն կ'ուզես որ պատմութիւնս մազի թելով կարեմ։

ԲԷՆ. Հապա դուն ալ պատմութիւնդ պինտ երկնցնել ուզեցիր։

ՄԵՐԿ. Ո՛հ, կը սխալիս, թելը կարելու վրայ էի, ինչու որ պատմութեանս ծայրին հասեր էի ու ճշմարիտն ալ, միտքս այն էր, որ վերջաբան մ'ընեմ։

ՌՈՄ. Այս ինչ հաճելի ուրախութիւն է։

ՍՆՈՒՑԻՉ և ՊԵՏՐՈՍ կը մտնեն։

ՄԵՐԿ. Քո՛ղ մը, քո՛ղ մը, քո՛ղ մը։

ԲԷՆ. Երկու հատ, երկու. մէկ շապիկ ու մէկ կնիկի շապիկ։

ՍՆՈՒՑ. Պետրո՛ս։

ՊԵՏ. Հ'ամէ։

ՍՆՈՒՑ. Պետրո՛ս, հովահա՛րս[1])։

ՄԵՐԿ. Տո՛ւր, Պետրո՛ս, կ'աղաչեմ, որ երեսը ծածկուի. ինչու որ, երկու երեսներուն աւելի աղուորը՝ հովահարին երեսն է։

ՍՆՈՒՑ. Բարի լոյս գայ վրանիդ, ազնուական պարոնայք։

ՄԵՐԿ. Բարի'րիկուն գայ վրադ, ազնուուհի սիրունիկ խաթուն։

ՍՆՈՒՑ. Վա՛յ գլխուս, գիշեր եղա՞ւ որ։

ՄԵՐԿ. Հապա՛, անկէ ալ վար չէ իրաւ որ. ինչու կ'ըսէք նէ՝ թուացոյցին երկայն բանը ճիշդ կէսօրին վրան կայներ է հիմա։

[1]) Հին ժամանակները սովորութիւն կար որ սպասաւորք տիկնանց հովահարները կրեն։ Թն.

ՍՆՈՒՑ. Աստուած ձեզ բարի՛ տայ, այդ ի՞նչ խօսք է, ինտո՞ր մարդ էք դուք։

ՀՌՈ. Այնպէս մարդ մի, սիրուն խաթունիկ, որ ինքզինք աւըրըշտկելու համար ստեղծեր է Աստուած։

ՍՆՈՒՑ. Մաս-որ շիտակ խօսք ըսիք. — հի՛, ինքզինք աւըրշտկելու համար, կ'ըսէ, քա՛։ — Ազնուականնե՛ր, ձեզմէ մէկը կրնա՞յ ըսել ինձ որ երիտասարդ Հռոմէոսն ո՞ւր կրնամ գտնել։

ՀՌՈ. Ես կրնամ ըսել. բայց երիտասարդ Հռոմէոսը՝ փնտռելու ելնելէդ ի վեր որքան ալ երիտասարդ էր նէ՝ մինչև զինք գտնելդ հիմա ինք աւելի ծերացաւ. այդ անուամբ ուրիշ մէկ աւելի գէշը չգտնուելուն համար՝ ես ամէնէ կրտսերն եմ։

ՍՆՈՒՑ. Այդ ի՞նչ աղէ՜կը խօսիք։

ՄԵՐԿ. Աստուա՛ծ սիրես, աւելի գէշը աղէ՞կ է. աղէկ խօսք հասկցող ես եղեր, ճշմարիտ-որ. խելքդ ո՞ւր է, խելքդ գլուխդ բե՛ր։

ՍՆՈՒՑ. Տէ՛ր իմ, թէ որ հրամանքնիդ ինքն էք, ձեզի գաղտնի զրուց մ'ունիմ։

ՊԷՆ. Անշուշտ ընթրիքի մի հրաւիրելու համար միտքն ընելու եկած է։

ՄԵՐԿ. Ի՞նչ, խնամութի՛ւն, խնամութի՛ւն, հա՛, խնամուհի՛. աւսանկ բաներ, հա՛։

ՀՌՈ. Է՛յ, դուն ի՞նչ հասկցար ասկէ որ. քու ձեռքդ ի՞նչ անցաւ։

ՄԵՐԿ. Բան մի չանցաւ, տէր իմ, նապաստակ չէ, տէր իմ, այլ՝ պահքուան կարկանդակի մէջ դրուած նապաստակ մի, որ ուտուելէն առաջ թթուած ու հոտած է։

Մէկ մըքըլոտած չոր նապաստակ,
Եւ մէկ ճոտած ճին նապաստակ.
Մեծ պաճոց մէջ է լաւ ճաշակ.
Բայց նապաստակ մ'որ կը ծըթոի՝
Քսանի ճամար շատ գայ պիտի,
Նախ քան գուտուիլն երբ մըքըլոտի:

Հռոմէո՛ս, ձեր հօրը տուն կ՚երթա՛նք. մենք այսօր հոն ճաշելու միտք ունինք։

ՀՌՈ. Ես ալ ետեւնէդ կը գամ։

ՄԵՐԿ. Մնաք բարեաւ,
խաթուն պառաւ,
սիրուն պառաւ,
մնաք բարեաւ.
համով պառաւ,
աղւոր պառաւ[1])։

(ՄԵՐԿՈՒՑԻՈՍ Ու ՊԷՆՎՕԼԻՕ կ՚ելլեն։)

ՍՆՈՒՑ. Վ՛երջ, կորի՛ք ասկէ։ — Կ՚աղաչեմ, տէ՛ր իմ, ըսէք ինձ, ո՞վ էր այս անշահ-ապուր մարդը, որ բերնէն ելածը չէր գիտեր։

ՀՌՈ. Դայեկուհի՛, ազնուականին մէկն է, որ շաղակրատելը շատ կը սիրէ, ու մէկ վայրկենի մէջ՝ ամսուան մի մէջ ըսել ուզածէն աւելի կը խօսի։

ՍՆՈՒՑ. Մսի՛ գլխուն. թէ որ ինծի համար բան մ՚ըսաւ, գիտցած ըլլայ, որ չէ թէ իրեն պէս լկտի՛, այլ քսան իրեն պէս անհամ-ապուրներ ալ ըլլան, բնութիւննին կը շիտկեմ. թէ որ ես չշիտկեմ, շիտկողներ կրնամ գտնել։ Անամօթ լի՛րբը։ Ի՞նչ, ինծի ո՞վ գիտցաւ, իր տասը կուտնոց գրրացուհիներուն տե՛ղ կը դնէ՛, թէ իր բարի-պտուղ ընկերներէն կը կարծէ։ — Դո՛ւն ալ էշու պէս քովս կայնէ՛, ու ամեն չպիտու վրաս ուզածնին ընելու անոնց ձեռքը կը ձգե՛ս, տեղ մը չփախչիս։ ... տեսնելիս ականջներդ տնկէ՛ մտիկ ըրէ։

ՊԵՑ. Ես մարդ չտեսայ որ սրտին ուզածը խօսի վրանիդ. թէ որ լսէի, իսկոյն կը քաշէի սուրս, ճշմարիտ որ. կրնամ ըսել որ ես ալ ուրիշ մարդոց պէս շուտով սուր քաշելու կը համարձակիմ, երբ սաստիկ կռիւի մէջ առիթ գտնեմ, այսու ամենայնիւ իրաւունքը միշտ իմ կողմս բռնելով։

ՍՆՈՒՑ. Խե՛ղն անիծած. այնքան սիրտս խաղաց, որ ձեռքս ոտքս դող ելաւ։ Աներես լկտի՛ն։ — Կ՚աղաչեմ, տէ՛ր իմ, հրամանք-

[1]) Հին երգի վերջադարձ մը։ Թն.

նուդ քան մի պիտ՝ ըսեմ. ու ինչպէս որ լաւ հրամանքնուդ, իմ երիտասարդուհի տիկինս խրկեց ես որ փնտռեմ զձեզ. ինձ պատուիրեց որ ըսեմ. հա՛, այն չեմ ըսեր. բայց առաջ կեցիք ձեզ քան մ՚ըսեմ, թէ որ զինք խենդերու արքայութիւն պիտի տանիք. ինչպէս որ կ՚ըսեն, խեղճ աղջկան պինտ մեծ մեղք պիտ՝ ըլլայ, ինչպէս որ կ՚ըսեն, ինչու որ այն գոհարի կտոր աղջիկը դեռ պզտիկ է. անոր համար ալ, թէ որ հետը երկու երեսութեամբ պիտի վարուիք, ճշմարիտ կ՚ըսեմ, որ ատոր պէս անգին աղջիկ զաւակներու պինտ գէշ եղած կ՚ըլլայ, ու պինտ մեծ չարագործութիւն կը սեպուի։

ՀՌՈ. Դայեկուհի՛, քու տիկնոջդ և իշխանուհիդ իմ կողմէս բարև ըրէ՛. քեզ խօսք կը տամ որ—

ՍՆՈՒՑ. Հասկցայ, բարի սիրտ ունիք, ճշմարիտ. ես գիտեմ իրեն ըսելուքս. Տէ՛ր իմ ողորմած Աստուած, որքան ուրախ ըլլալու է տիկինս։

ՀՌՈ. Ի՞նչ պիտ՝ ըսես իրեն նայիմ, դայեկուհի՛, դուն խօսքս միտիկ չըրիր։

ՍՆՈՒՑ. Պիտ՝ ըսեմ որ, տէ՛ր իմ — խօսք տուիք. որ, ինչպէս որ ես ալ կ՚ըղգամ, պինտ ազնուաբար առաջարկանուէր մ՚է։

ՀՌՈ. Պիտ՝ ըսես որ այսօր օրհնա՛բանէ՛ աք գալու և խոստովանանք մ՚ըլլալու ճամբան նայի. Հայր Լաւրենտիոսի խուցը թող գայ, ու հոն տեղ խոստովանուելէ ետք՝ պիտի պսակուի հետս։ Ա՛ռ, ասիկ ալ քու աշխատութեանդ համար։

ՍՆՈՒՑ. Չէ՛, չէ՛, տէր իմ, ճշմարիտ չըլլար, մէկ սաակ չեմ առներ։

ՀՌՈ. Պիտ՝ առնես, կ՚ըսեմ, ա՛ռ սա։

ՍՆՈՒՑ. Օրհնա՛բանէ՛աք, անանկ չէ՛, տէ՛ր իմ. շատ աղէկ, հոն կը գտնուի այն։

ՀՌՈ. Նաև կեցի՛ր, բարի դայեկուհի, գնա՛ աբբայանոցին պատին ետև սպասէ, աւելէ մինչև մէկ ժամ մարդս պիտի գայ քեզ հոն գտնէ, ու հետը՝ սանդղոց առանձնանմերուն պէս հանգոյցաւ կապ չուաններ պիտի բերէ, որոց միջոցաւ գիշերուան պինտ մութ ատեն՝ իմ ամենաբարձր դերերջանկութեանս պիտի վերելակեմ։

Երթաս բարեաւ ։ — Բերնէդ խօսք չելնէ, ու ես քու վարձքդ կը տամ։ Երթաս բարեաւ ։ — Խաթունիդ բարեւ ըրէ ։

ՍՆՈՒՑ. Աստուծոյ օրհնենքը վրանիդ ըլլայ ։ — Ձեզ բան մ՚ալ ըսեմ, տէ՜ր իմ։

ՀՌՈ. Ի՞նչ պիտ՚ ըսէիր, սիրելի դայեկուհի ։

ՍՆՈՒՑ. Ձեր մարդը գաղտնապահ է ։ Գիտէ՞ք խօսք մը կայ որ կ՚ըսեն, թէ — երկու հոգի խորհուրդ կրնան պահել, թէ որ մէկը մէջերնէն դուրս հանեն ։

ՀՌՈ. Ադար վրայ հոգ մ՚ընէր. իմ մարդս այնքան հաւատարիմ է որ պողպատ կը նմանի ։

ՍՆՈՒՑ. Ձեզ ուրիշ բան մ՚ալ ըսեմ, տէր իմ. գիտէ՞ք որ խաթունիս պէս սիրունելու օրիորդ չկայ — Տէ՜ր ողորմած Աստուած — երբոր պզտլիկ բան մ՚էր, — հը՜, գիտէ՞ք հօս տեղ Պարիս անունով ազնուականին մէկը կայ, այն մարդը աղջկան վրայ աչք չանկէ՞. բայց օրիորդը, խե՜ղճ աղջիկ, սատանայ մը տեսնէ աւելի աղէկ ունի քան թէ զայն ։ Երբեմն զինք կը բարկացնեմ ու կ՚ըսեմ որ Պարիսի պէս ազնիւ մարդ չկայ ու տեսնէք ինծմէ կը փըրփըրի. բայց այս ալ ըսեմ ձեզ ճշմարիտ, որ սաւանի ըսածիս պէս, կը դեղնի ու դեփ-դեղին կ՚ըլլայ ։ Հռետին ու Հռոմէօս նոյն գիրերով չե՞ն սկսիր երկուքն ալ ։

ՀՌՈ. Է՛հ, դայեկուհի, ադկէ ի՞նչ կ՚ելնէ. երկուքն ալ Հռով կ՚ըսկսին ։

ՍՆՈՒՑ. Ա՛հ, ծիծաղասէր. շներուն սաանկ կ՚ըսեն ։ Շներուն Հռ կ՚ըսեն ։ Ձէ՛, իմ գիտցածս, ուրիշ գիրով սկսիլ պէտք է ձեր անունը ։ Բայց գիտցած ըլլաք որ պինտ սիրուն խօսքեր կը զրուցէ Հռետինի և Հռոմէօսի վրայօք, զորս լսելու ըլլաք շատ պիտի հաճիք ։

ՀՌՈ. Խաթունիդ բարեւ ըրէ ։ (կ՚ելնէ ։)

ՍՆՈՒՑ. Անշուշտ, հազարաւոր բարեւներ ։ — Պե՛տրոս ։

ՊԵՏ. Հ՚ամէ ։

ՍՆՈՒՑ. Պե՛տրոս, ա՛ռ հովահարս, ու առջեւէս քալէ ։ (կ՚ելնեն ։)

# ՏԵՍԱՐԱՆ Ե.

## ԳԱՊՈՒԼԷՏի *պարտէզը։*

ՃՈՒԼԻԷԹԱ կը մտնէ։

ՃՈՒԼ. *Ժամը՝ ինն կը զարնէր, երբ դայեկուհին խրկեցի, որ մինչև կէս ժամ ետ դառնալու խօսք տուաւ։ Գուցէ զինք գտած չէ. ո՛չ, ան ալ չպիտի՛ ըլլայ, — խեղճը, կաղ է. բայց սիրոյ պատգամաւորները մտածութեանց պէս արագաթռիչ ըլլալ պէտք են, որոնք՝ իրարու ետև շարուած բլուրներուն ետևէն ստուերները ետ քշող արևուն ճառագայթներէն տասն անգամ աւելի շուտ կը ցատկեն. ահա ասոր համար է որ Սիրոյ կառքը թեթևաթև աղաւնիներ կը քաշեն, և ասոր համար է որ Կուպիտոն՝ հողմահանգոյն թևեր ունի։ Հիմա արևը՝ այսօրուան ճանապարհորդութեանը ամենաբարձր բլուրին վրան է, ու իննէն մինչև տասներկու՝ դեռ երեք երկայն ժամեր կան. — պառաւն ալ տակաւին չերևցաւ։ Թէ որ ան ալ երիտասարդութեան աւիւնն ու ջերմարիւնն ունենար՝ ռումբի պէս երագաթիռ կ'ըլլար ու խօսքերս՝ ափուճի պէս սիրողիս կը տանէր ու սիրողէս ինձ կը բերէր. բայց զառամութիւնք՝ ինչպէս որ շատերը կարծեն, թերմահ ըսել է. ու կապարի պէս յամրաշարժ, դանդաղ, ծանր և գունատեալ է։*

ՍՆՈՒՑԻՉ և ՊԵՏՐՈՍ կը մտնեն։

*Փառք քեզ Աստուած, ահա՛ կը գայ։ — Ո՛հ, անուշիկ դայեկուհիս, ի՞նչ նոր լուր ունիս։ Իրեն հանդիպեցա՞ր։ Սա մարդուդ ճամբայ տո՛ւր։*

ՍՆՈՒՑ. *Պետրո՛ս, գնա՛ դուռը կայնէ՛։* (ՊԵՏՐՈՍ կ'ելնէ։)

ՃՈՒԼ. *Հիմա, ըսէ՛ նայիմ, անուշիկ դայեկուհիս. — ո՛հ, Աստուած իմ, այդ ինտո՞ր դէմքդ կախեր ես։ Թո՛ղ տրտում լուրեր ըլլան, դուն ուրախութեամբ զրուցէ՛ զանոնք։ Բայց թէ որ բարի լուրեր ունիս, հաճելի լուրերուն երաժշտութիւնը կ'ամչցնես այդպէս կախած դէմքով հնչեցնելով։*

ՍՆՈՒՑ. Վա՜հ, մարեցա՜յ. քիչ մը թո՛ղ որ հանգստանամ. — ահ, Աստուած, ոսկորներս ցաւեցան։ Այն որքան տեղ քալեցի։

ՃՈՒԼ. Երանի թէ, դուն իմ ոսկորներս ունենայիր, ես ալ՝ քու լուրերդ. էհ, ըսէ՛ նայինք, կ՚աղաչեմ, խօսէ. սիրելի դայեկուհիս, անուշիկս, խօսէ նայիմ։

ՍՆՈՒՑ. Տէ՜ր ողորմեա։ Այդ ինչ նեղսիրտ էք. քիչ մը չէ՞ք կրնար համբերել։ Չէ՞ք տեսներ որ շունչս հատեր է։

ՃՈՒԼ. Ի՞նչպէս շունչդ հատեր է, որ շունչովդ կ՚ըսես թէ շունչդ հատեր է։ Այդ կցկցական խօսքերդ՝ որ յապաղմանդ համար կ՚ընես, ինձ ըսելու պատմութենէդ աւելի երկայն քշելով կը կցկցես։ Բարի՞ լուրեր են թէ գէշ. սա պատասխանը տո՛ւր ինձ. կա՛մ մէկը և կա՛մ միւսն ըսէ, ու մանրամասն պարագաներուն կ՚ըսպասեմ ետք. Աստուծոյ սիրոյն համար, սիրտս հանգիստ ըլլայ, բարի՞ են թէ գէշ։

ՍՆՈՒՑ. Բարի՛. քա՜ն ինչ մարդ էք ընտրեր, քա, դուք մարդ ընտրել չէք գիտեր, հա՛. քա, Հռոմէոսը, չէ՛, այն չէ ըսածս որ. քա իրեն պէս շնորհքով մարդ չտեսեր էի որ, քա, անանկ սրունքներով մարդ չկայ. քա՜ն ինչ ձեռքեր են, այն ինչ ոտքեր, այն ինչ մարմին է, — քա ըսելիք չկայ, մարդու մը չեմ կրնար նըմանցնել որ։ Քաղաքավարութիւնը վերջին աստիճանն է չըսեմ — բայց, սա ձեզի հաւտացնեմ որ գառնուկի պէս հեզ է։ Գնա՛, քա աղջիկ, բանդ գնա՛. Աստուծոյ աղօթք ըրէ։ — Ի՞նչ. արդէն ճաշ ըրի՞ք։

ՃՈՒԼ. Չէ՛, չէ՛։ Բայց ես ատոնք քեզմէ աղէկ գիտեմ. ատոնք ինձ պէտք չեն։ Մեր ամուսնութեան վրայօք ինչ ըսաւ։

ՍՆՈՒՑ. Վա՜հ Աստուած, գլուխս ինտո՛ր կը ցաւի՛, այս ինչ եղեր է գլուխս։ Անանկ մէկ պինդ պինդ կը զարնէ՝ որ գիտես թէ պիտի բրդի կտոր կտոր ըլլայ։ Հապա կռնակս. — մարի՛կ, մարի՛կ, կռնա՛կս, մա՛րիկ, կռնա՛կս։ — Ի՛նչ ըսեմ, Աստուած բարինիդ տայ, որ զիս դուրս խրկեցիք, ու հոն հոս վազվզելով հոգիս հանեցի։

ՃՈՒԼ. Իրաւ որ, կը ցաւիմ որ աղէկ չըլլալուդ պատճառ եղայ. բայց, սիրուն դայեկուհիս, անուշիկս, սիրելիս, ըսէ՛ նայիմ, քեզ ինչ ըսաւ սիրողս։

ՍՆՈՒՑ. Ձեր օրիորդը՝ պարկեշտ ազնուականի պէս, քաղաքավար, քաղցրաբարոյ, շնորհալի ու Ճշմարիտ կ'ըսեմ, առաքինի մարդու պէս ըսաւ որ. — Ո՞ւր է մայրերնիդ։

ՃԻՒՂ. Մայրս ո՞ւր է. — Ո՞ւր պիտի ըլլայ, ներսն է. ինչն ո՞ւր կ'ուզես որ ըլլայ։ Այդ ինչ ապուռՃուպառ պատասխաններ են. Ձեր օրրողը՝ պարկեշտ ազնուականի պէս, ըսաւ որ, — ո՞ւր է մայրերնիդ։

ՍՆՈՒՑ. Վա՜հ, Տէր ողորմած Աստուած. խա՜թուն, այդ ինչ անհամբերութեամբ սիրտերնիդ կը նեղանայ։ Հի՛. վա՜յ գլխուս. քիչ մը սրտերնիդ հանդարտ բռնեցէ՛ք. իմ ցաւած ոսկորներուս մատակարարած ոպեղանիներնիդ ա՞յս է։ Ալ այսուհետեւ ձեր գլխուն Ճաշը դուք ինքնին տեսէ՛ք։

ՃԻՒՂ. Է՛, չէ, մի՛ բարկանար, կ'աղաչեմ, — աղէ՛, ըսէ՛ նայիմ, Հռոմէոսն ինչ ըսաւ։

ՍՆՈՒՑ. Այսօր երթալ խոստովանանք ըլլալու հրաման առի՞ք։

ՃԻՒՂ. Առի՛։

ՍՆՈՒՑ. Ուրեմն, վազեցէ՛ք Հայր Լաւրենտիոսի խուցը գացէ՛ք. հոն տեղ ձեզ կնութեան առնել ուզող փեսայու մի կ'ըսպասէ. տեսա՞ք հիմա ինչպէս բո՛րբոքեռանդ արիւններդ այտերնուդ վրան երեւցաւ. լուր մի չառնեն, Աստուած փրկէ, իսկոյն ծիրանի գոյն մի կ'ըզգենուն։ Շո՛ւտ ըրէ՛ք եկեղեցի վազեցէ՛ք. ես ալ ուրիշ կողմ երթամ, որ սանդուխք մի գտնեմ, որով ձեր սիրողը՝ գիշերուան մթութեան մէջ թռչնոյ մի բոյն պիտի մագլցէ. ձեր գործը տեսնողն ես եմ, որ դուք իմ միջոցաւս վայելէ՛ք, բայց այս ծանր բեռը գիշերը դո՛ւք պիտի վերցնէ՛ք։ Գնացէ՛ք, ես երթամ Ճաշեմ. դուք ալ տէր հօր խուցը վազեցէ՛ք։

ՃԻՒՂ. Վազեմ երթամ գերերջանիկ բաղդիս. — մնաս բարեաւ, սիրելի դայեկուհի։

(Կ'ԵԼԼԵՆ։)

## ՏԵՍԱՐԱՆ Զ.

Հայր ԼԱՒՐԵՆՑԻՈՍի խուցը։

Հայր ԼԱՒՐԵՆՑԻՈՍ և ՀՌՈՄԷՈՍ կը մտնեն։

Հ. ԼԱՒ. Աստուած տայ, որ այս օրհնեալ միութեան վրայ երկինք ժպտի, որ ետքն ալ ինքզինքնիս չմեղադրենք։

ՀՌՈ. Ամէն, ամէն։ Բայց ինչ կերպ փորձանք կ'ուզէ հանդիպի՝ զինք տեսնելու մէկ կարճատև բոպէի մէջ զգացած անչափ հաճոյութեանս հաւասար չկրնար գալ. դուն միայն նուիրական խօսքերով զմեզ ձեռք-ձեռքի տուր, անկէ ետք սիրատպան մահն ինչ որ կ'ուզէ թող ընէ, կ'օգտէ միայն՝ որ զինք իմ կինս կոչեմ։

Հ. ԼԱՒ. Այդ բուռն հաճոյութիւնները՝ բուռն վախճաններ կ'ունենան, և իրենց յաղթութեան կէտին կը փճանան, որպէս թէ կրակ ու վառօդ ըլլային, որք իրարու դպչածնուն պէս՝ կ'ըսպառին։ Ամենաքաղցր մեղրն իսկ իւր փափկահամութեանը մէջ քարշախորժութիւն մի կ'ունենայ, և իւր համին մէջ՝ ախորժակը կը զզուեցնէ։ Անոր համար սէրդ քիչ մի չափաւորէ. ահա այս կերպով սէրը երկարատև կ'ըլլայ։ Պինտ շուտ երթողն ու պինտ կամաց քալողը՝ երկուքն ալ գրեթէ մէկ ատեն կը հասնին։

ՃՈՒԼԻԷԴԴԱ կը մտնէ։

Ահա հարսնցուն կը գայ։ — Ո՜հ, այսպիսի թեթև ոտք մի՝ երբեք չպիտի հինցնէ յաւիտենական ապառաժը. սիրող մի՝ ամառուան ջերմատապ օդին մէջ հոն հոս վազվզող ոստայններուն մէջ կրնայ թռչտիլ ու վար իսկ չինկնիլ. ահա որքան թեթև բան է ունայնութիւնը։

ՃՈՒԼ. Բարի՛ իրիկուն, հոգևոր խոստովանահայրս։

Հ. ԼԱՒ. Աղջիկս, Հռոմէոս մեր երկուքնուս համար ալ, շնորհակալ պիտ՛ ըլլայ քեզմէ։

ՃՈՒԼ. Ես ալ իրմէ նոյնպէս, եթէ ոչ իր շնորհակալութիւնները չափէն աւելի պիտ՛ երևան։

ՀՈՌ. Ա՛հ, Ճիւլիէդդա, թէ որ ուրախութեանդ չափն իմինիս պէս կուտուած է ու դուն աւելի շատ խելք ունիս զան նկարագրելու, քաղցրացո՛ւր ուրեմն շնչովդ այս դրացի օդը, և թո՛ղ քո լեզուիդ դաշնակաւոր երաժշտութիւնը՝ երևան հանէ երկու սիրելեաց ասանկ բաղձալի հանդիպման համար փոխադարձաբար զգացուած ու երևակայուած երջանկութիւնը։

ՃՈՒԼ. Երևակայութիւնները՝ առաւել արդեամբ քան թէ խօսքով հարուստ ըլլալով, իրենց իսկութեամբը կը պարծին և ոչ թէ պաճուճանօք։ Անոնք՝ աղքատ մարդիկ կը նմանին որ իրենց աւուրչէքին հաշիւը կրնան ընել. սակայն իմ ճշմարիտ սէրս այնպիսի չափազանց աստիճանի հասած է, որ իմ հարստութեանցս գումարին կէսը՝ չեմ կրնար հաշուելով գումար մի ձևացնել։

Հ. ԼԱՒ. Քալեցէք, քալեցէք, հետս եկէք, որ կարճ գործ մի տեսնենք. ինչու որ, ներեցէք համարձակութեանս, մինչև որ սուրբ եկեղեցին ձեր երկուքը չզուգէ՝ դուք մինակ մնալ պէտք չէք։

(Կ'ԵԼՆԵՆ։)

# ԱՐԱՐՈՒԱԾ Գ.

## ՏԵՍԱՐԱՆ Ա.

Հասարակաց հրապարակ մի։

ՄԵՐԿՈՒՑԻՈՍ, ՊԷՆՎՈԼԻՕ, Պուլչինելլա մը և Սպասաւորներ իր ձեռնէն։

ՊԷՆ. Կ'աղաչեմ, սիրելի Մերկուտիոս, ե՛տ քաշուինք. այսօր օդը տաք է. Գաբուլեաններն ալ դուրսն են, թէ որ իրենց հանդիպինք՝ կապավէճէ չպիտի կրնանք խոյս տալ, վասն զի այս տաք օրերը՝ մարդոյս խենդ արիւնը կ'եռացնեն։

ՄԵՐԿ. Դո՛ւն ալ, գիտե՞ս որու նմանեցար հիմա — այն մարդոյ՝

որ երբոր պանդոկի մը մէջ մտնեն, սուրերնին վրանէն հանածնուն պէս՝ սեղանին վրայ կը զարնեն, Աստուած մեզի նոյնը չընէ պոռալով. բայց երբ մէկ՝ մէկ մ'[illegible]երկու կը խմեն չեն խմեր՝ սուրերնին քաշող քաշողի կ'ըլլա[illegible], թէեւ ճշմարիտն ըսենք, սուր քաշելու հարկ մ'իսկ չըլլայ։

ՊԷՆ. Է՛հ, եսատանկ մարդո՞ց կը նմանիմ։

ՄԵՐԿ. Դո՛ւն ալ, Աստուած վկայ, Իտալիոյ մէջ քեզի պէս երկչոտ կրակոտ գլուխներ շա՛տ, որ լեղիդ բռրդածին պէս բարկութեան կ'ելնես. ու բարկութեան ելածիդ պէս լեղիդ կը պատռի։

ՊԷՆ. Ինտո՞ր ըսիր։

ՄԵՐԿ. Հը՛հ. թէ որ քեզի պէս ուրիշներ ալ գտնուէին, շատ չանցած, մէկը չպիտի մնար, ինչու որ, մէկը՝ զմիւսը պիտ՝ ըսպաննէր։ Ինտո՞ր մարդ ես դուն, որ ուրիշ մարդու մը մօրուքին մէջ՝ քու մօրուքէդ մէկ թել աւելի կամ մէկ թել պակաս գտնուելուն համար կռիւ կը յարուցանես։ Քու քովդ կռիւը բան մ'ըսել չէ. մարդ սխալի ու քովդ կաղին մը կոտրէ նէ՝ հետը կռիւի կը բռնուիս, թէ ինչու՞ համար աչքիդ գոյնով եղած պտուղը կոտրեց ըսելէ ուրիշ պատճառ մը չգտնելով։ Եւ ո՞ր աչքն է այն, որ քու կինէդ զատ, ասանկ կռիւ մը նկատէ։ Գլուխդ կազամլէճներով լեցուն է, ինչպէս հաւկիթ մը՝ որ հիւթով լեցուն է. սակայն գլուխդ, կազամլիճելով այնքան ծեծ կերած է, որ լքկած հաւկիթի պէս պարպուած է։ Դուն ատենօք ճամբուն մէջ մարդու մը հետ կռիւ փնտռեցիր արեւուն մէջ երկնցած պառկած շունդ՝ հազալովը արթնցուցեր է ըսելով։ Դուն չէ՞իր դերձակին վրան ինկնող ու հետը կռիւ ընողը, Զատկէն առա՞ջ նոր բաճկոն մը հագած ըլլալուն համար, ուրիշ չե՞մ գիտեր որու հետն ալ՝ նոր հողաթափները հին ժապաւէններով կապած ըլլալուն համար։ Ասոնք չես նայիր՝ ելեր ինծի խրատ կը տաս որ կռիւ չընեմ։

ՊԷՆ. Թէ որ ես ալ քեզի պէս կռուասէր մ'ըլլայի, կեանքիս անչարժստացուածքը ո՛ր և իցէ մարդու, միայն մէկ ժամ ու քառորդի համար վարձու կը տայի։

ՄԵՐԿ. Անշարժ ստացուածքը, ո՛հ, անշա՛րժը։

ԴԻՊԱԼՑՈՍ և ուրիշներ կը մտնեն:

ՊԷՆ. Ճշմարիտ Աստուած, ահա Գափուլեթեանները կը գան:

ՄԵՐԿ. Ճշմարիտ որ, հոգս իսկ չէ:

ԴԻՊ. Քովս եկէք, ինչու որ հետերնին խօսիմ պիտի: — Բարեւ, պարոնայք, ձեզմէ մէկուն խօսք մը պիտ' ընեմ:

ՄԵՐԿ. Մեզմէ մէկուն միայն մէկ խօսք. գոնէ քովը բան մ'ալ յարէ. խօսք մ'ու ծեծ մ'ընէ:

ԴԻՊ. Առանկ բաներու մէջ բաւական յաջողակ պիտի գտնէք զիս, պարոն, թէ որ ինծի պատճառ մը տաք:

ՄԵՐԿ. Եւ առանց պատճառ մը տրուելու, դուք պատճառ մը չէ՞ք կրնար գտնել:

ԴԻՊ. Մերկուտիոս, Հռոմէոս և դուն մէկ անշահ ձայնի վրայ կ'երթաք:

ՄԵՐԿ. Մէկ անշահ ձայնի վրայ ըսիր. ինչ, մենք անշահ նուագածուներ ենք. թէ որ զմեզ անշահ նուագածուներու տեղ կը դնես, նայէ որ անշահ ձայներէ զատ ուրիշ բան չլսես. ահա իմ քնարաղեղս, ահա, տեսա՞ր, այս քեզ կաքաւել կը տայ. — Հո՛հ, նայէ սատր, անշահ ձայնը որն է:

ՊԷՆ. Հիմա հոստեղ ասանկ խօսքեր ընելու տեղը չէ, չէ՞ք նայիր որքան անցուդարձ կայ. կամ առանձին տեղ մը քաշուինք, կամ ձեր տարբերութեանց վրայ պաղ կերպով վիճաբանութիւն մ'ընենք, եթէ ոչ իրարմէ զատուինք. հոս ամեն մարդուն աչքը մեր վրայ տնկուած է:

ՄԵՐԿ. Մարդոց աչերը՝ տեսնելու համար ստեղծուած են, թող երթան ուզածնուն չափ մեր վրայ տնկուին. ես տեղէս չեմ դնդար, ես, որ մարդոց հաճութիւն բաշխեմ:

ՀՌՈՄԷՈՍ կը մտնէ:

ԴԻՊ. Լա՛ւ, քեզի հետ գործ չունիմ, պարոն, ահա իմ մարդս կը գայ:

ՄԵՐԿ. Ճշմարիտ կը կախուիմ, թէ որ ինք ձեր համազգեստներէն ունի. թէ որ դուք մարդ էք՝ բացը ելէ՛ք, ու ան ալ ձեր ետեւէն կը գայ. այսու պայմանաւ միայն՝ ձեր ազնուութիւնն ալ զինք իր մարդը կրնայ կոչել:

ԴԻԲ. Հռոմէոս, քու վրայ ունեցած ատելութիւնս՝ զքեզ — վատ կոչելէ ուրիշ յարմարաւոր խօսք մը չկրնար գտնել։

ՀՌՈ. Դիպալտոս, զքեզ սիրելու պարտաւորող առիթը՝ բարկի տեղ ասանկ մէկ խօսք մ'ըսելովդ կատղութեանս ալ ելնելուն խիստ շատ արգելք կ'ըլլայ։ — Վատ՝ չեմ բնաւին. վասն որոյ ծառայ եմ. կը նայիմ որ զիս չես ճանչեր։

ԴԻԲ. Մանչիկ, այդ խօսքերը՝ ինծի ըրած նախատինքներդ չեն կրնար սրբել, անոր համար ետ դարձիր ու քաշէ սուրդ։

ՀՌՈ. Կը բողոքեմ, որ ես երբէք զքեզ նախատած չեմ. այլ՝ երեւակայելու կարացածէդ ալ աւելի կը սիրեմ, ու մինչեւ որ զքեզ սիրելուս պատճառը իմանալուդ ժամանակը գալը՝ ձայն մի հաներ. վասն որոյ, սիրելի Գաբուլեան, որ անունը իմինիս պէս սիրելի է ինծի, այսչափով գոհ եղիր։

ՄԵՐԿ. Ո՛հ, հանդարտաբարոյ, անպատուաբեր ու կոպիտ հնազանդութիւն։ Ալլա սթօգադա[1]) սուրը խօսք կը հասկցնէ ու կռիւը կը վերջանայ։ (Սուրը կը քաշէ) Դիպալտոս, մուկ որսացող, դէմս պիտ' ելնես։

ԴԻԲ. Դուն ինծի հետ ինչ առնելիք տալիք ունիս։

ՄԵՐԿ. Ազնուամեծար թագաւոր կատուց, քեզմէ բան մը չեմ ուզեր, բայց եթէ ինը հոգիէդ մին. որպէս զի այսուհետեւ ինծի հետ վարուելուդ համեմատ՝ քովդ մնացած միւս ութը ճանկռտեմ։ Սա սուրդ ականջներէն բռնածիդ պէս պատեանէն դուրս հանէ, շուտ ըրէ, թէ որ չես ուզեր որ դուրս քաշելէդ առաջ՝ թուրս ականջացդ քով շհահիւն չհանէ։

ԴԻԲ. Պատրաստ եմ։ (Սուրը քաշելով։)

ՀՌՈ. Ազնիւ Մերկուտիոս, սուրդ տեղը դիր։

ՄԵՐԿ. Հրամմէ, պարոն, համակդ տեսնենք։ (կը կռուին։)

ՀՌՈ. Քաշէ սուրդ, Պէնվօլիօ. սա մարդոց զէնքերուն դէմ կեցիր։ — Պարոնայք, ամօթ է, այս ինչ խայտառակութիւն է. — Դիպալտոս — Մերկուտիոս։ — Չէ՞ք գիտեր որ իշխանը մասնաւորապէս արգիլեց Վերոնայի փողոցներուն մէջ ասանկ անվայել արիւնահեղութիւնները. — կեցի՛ր, Դիպալտոս. սիրելի Մերկուտիոս։

(ԴԻԲԱԼՏՈՍ իւր կողմնակիցներով կ'ելնէ)

1) Իտալական բառ սպաննական։ Բն. Իբր է սուր առնելէ։

ՄԵՐԿ. Ո՛հ, վիրաւորեցայ. — Աստուած երկու գերդաստանաց ալ պատիժը տայ։ — Ձեռքէ կ'երթամ։ — Գնա՜ց այն, ու վէրք մի չառա՜ւ։

ՊԷՆ. Ի՞նչ. վիրաւորեցա՞ր։

ՄԵՐԿ. Հա՛պա՛, հապա՛. ճանկռտուածք մ'է, ճանկռտուածք. Յիրաւ որ պզտիկ բան ալ չէ։ — Ո՞ւր է սպասաւորս։ — Գնա՛, ծօ՛, վիրաբոյժ մի բեր շո՛ւտ։ (Սպասաւորը կ'ելնէ։)

ՀՌՈ. Սի՛րտ առ, մա՛րդ. վէրքդ անվտանգ ըլլալու է։

ՄԵՐԿ. Չէ՛, անշուշտ հորի մի չափ խորունկ բացուած չէ, և ոչ ժամին դրան պէս լայն, բայց բաւական բան ալ է՝ գլուխս փորձանք մի կրնայ բերել. վաղը եկուր ինծի հարցուր անգամ մի ու տե՛ս թէ գերեզմանի մարդ չե՞մ։ Ես այս աշխարհիս մէջ թթուեցայ ալ, ճշմարիտ։ Գեհենին տակն անցնին երկու գերդաստաններն ալ։ Հը՛հ, նայէ՛ հեղ մի վիճակս, շուն մի, մուկ մի, մկնիկ մի, կատու մ'այսպէս ճանկռտելովը մարդ մեռնի՛։ Չպիտու մի, շանլակոտ մի, վատ մ'որ թուաբանական հաշուով մարդ կը մեռցնէ։ — Ձեր գործն ի՞նչ էր որ մեր մէջը մտաք։ Ես ձեր բազուկին տակէ վիրաւորուեցայ։

ՀՌՈ. Իմ միտքս աղէկ ընել էր։

ՄԵՐԿ. Պէնվօ՛լիօ, սա տեղ մօտ տուն մի տա՛ր զիս, եթէ ոչ պիտ' ինկնիմ մարիմ։ Գեհենին տա՛կն անցնի՛ Գաբուլեաններն ալ Մոնդակեաններն ալ։ Նայէ՛ անգամ մի, զիս որդանց կուր ըրին։ Բանս լմնցած է, ճշմարիտ որ լմնցած է։ — Անիծեա՛լ գերդաստաններ։ (ՄԵՐԿՈՒՑԻՈՍ և ՊԷՆՎՕԼԻՕ կ'ելնեն։)

ՀՌՈ. Ափսո՛ս ազնուական մարդուն, որ իշխանին մօտ ազգականը և իմ անկեղծ բարեկամս է, իմ պատճառաւս մահառիթ վէրք մի առաւ. անունս ալ՝ արատեցաւ Դիպալտոսի մարդասպանութեամբ, Դիպալտոսի՝ որ ժամէ մ'ի վեր ազգականս է։ — Ա՛հ, սիրուն Ճիւլիէդդա, գեղեցկութիւնդ կնատեց զիս ու քաջութեանս պողպատը՝ քաղցրաբարոյ բնութեանս մէջ թաթխել տալով փափկացուց զայն։

ՊԷՆՎՕԼԻՕ նորէն կը մտնէ։

ՊԷՆ. Ո՛հ, Հռոմէ՛ո, Հռոմէ՛օ, քաջ Մերկուտիոսը մեռա՛ւ։

իւր վսեմատենչ հոգին՝ որ խիստ արտաժամ երկիրս անարգեց, հիմա ամպերուն շունչը կ'առնէ։

ՀՌՈ. Այսօրուան սեւ ճակատագիրը՝ ուրիշ չար օրերու ալ նկատմունք ունի. այսօր դժբաղդութիւնն սկսաւ, ուրիշներ վերջ տալ պէտք են։

ՏԻԲԱԼՏՈՍ նորէն կը մտնէ։

ՊԷՆ. Ահա կատղած Տիպալտոսը նորէն ետ կը դայ։

ՀՌՈ. Ինք ո՛ղջ է, յաղթութիւն տարած, ու Մերկուտիոս մեռած. — հեռացի՛ք ինծմէ երկի՛նք ու խոնհեմընթաց քաղցրութիւն. հրաշեայ կատղութիւն, հիմա իմ առաջնորդս եղի՛ր։ — Արդ՝ Տիպալտո՛ս, ե՛տ առ քո վէրը ըսած խօսքդ, զոր պահ մ'առաջ ինծ ուղղեցիր. և ըստ որում Մերկուտիոսի հոգին՝ քիչ մը բարձր մեր գլխոց վերեւ կը թուչտի, սպասելով որ քուկինդ ալ երթայ հետն ընկերութիւն ընէ, հետեւաբար, կա՛մ դուն, կա՛մ ես, և կա՛մ երկուքս մէկէն՝ քովը երթալ պէտք ենք։

ՏԻԲ. Դո՛ւն, գարշելի պատանի, դո՛ւ որ հոս իրեն ընկերացար՝ դուն իր քովը երթալ պէտք ես.

ՀՌՈ. Ահա ա՛յս վերջ մի կրնայ տալ։

Կը խառնէն. ՏԻԲԱԼՏՈՍ կ'իյնայ։

ՊԷՆ. Փախի՛ր, Հռոմէո՛ս, գնա՛. Քաղաքացիք ոտք ելան ու Տիպալտոս մեռաւ. մ'ապշիր մի՛ կենար. — Իշխանը քեզ ձեռք անցունէ նէ՝ մահուան պիտի դատապարտէ։ — Մի՛ կենար, փախի՛ր, խոյս տուր։

ՀՌՈ. Ո՛հ, բաղդին ձեռք խաղալիկ մ'եմ դարձեր։

ՊԷՆ. Ի՞նչ կեցեր ես։ (ՀՌՈՄԷՈՍ կ'ելլէ։)

Քաղաքացիք նորէն կը մտնեն։

Ա. ՔԱՂ. Մերկուտիոսը մեռցնողն ո՞ր կողմ փախաւ. այն մարդասպան Տիպալտոսը ո՞ր կողմէն փախաւ։

ՊԷՆ. Ահա՛ Տիպալտոս՝ գետին փռուած։

Ա. ՔԱՂ. Ո՛տք ել նայիմ, պա՛րոն, քալէ՛ հետս եկուր. յանուն Իշխանին կ'արգելադրեմ զքեզ. հնազանդէ։

ԻՇԽԱՆԸ՝ Պաշտօնեայներով, ՄՈՆՏԱԿԻՍ, ԳԱԲՈՒԼԷՏ, Էրենց կանանց և ուրիշ մարդոց հետ կը մտնեն։

ԻՇԽ. Ո՞ւր են այս վէճին եղեռնաւոր թշուառականները։

ՊԷՆ. Վեհազնիւ իշխան, այս աղետալի կռուըտուքին բոլոր եղերական մանրամասնութիւնները ես կրնամ պատմել ձեզ։ Ահա՛ սա տեղ փռուած կեցած է երիտասարդ Հռոմէոսէն սպաննուած մարդը, որ ձեր ազգական՝ քաջ Մերկուտիոսը մեռցուց։

ՏԻԿ. ԳԱԲ. Դիպալտո՛ս, եղբօրորդի՛ս. — ո՛հ, եղբօրս զաւա՛կը. — Թշուառագո՛յժ տեսարան. ափսո՛ս ինձ, սիրելի ազգականիս արի՛ւնն է թափեր։ — Իշխա՛ն, թէ որ արդարասէր ես՝ մեր արեան փոխարէն Մոնդակեանց արիւնը թափէ։ — Ո՛հ, եղբօրորդի՛, եղբօրորդի՛։

ԻՇԽ. Պէնվօ՛լիօ, ո՞վ սկսաւ այս արիւնահեղ կռիւը։

ՊԷՆ. Դիպալտոս՝ որ ահա՛ տապաստանկ պառկած է և որ Հռոմէոսի ձեռօք սպաննուեցաւ։ Հռոմէոս՝ նախ հետը անուշութեամբ վարուեցաւ, ու վէճին չնչին բան մ՚ըլլալը յիշեցնելով ձեր բարձրութեանն ալ կամաց հակառակ ըլլալը պնդեց։ — Սակայն բոլոր այս խօսքերը, որքան ալ քաղցրաբարոյ եղանակով, հանդարտ նայուածքով ու խոնարհաբար ծունկ չոքած ըսաւ նէ ալ՝ Դիպալտոսի անսանձ ոխը չկրցաւ հանդարտեցնել, որ այս խաղաղասէր յորդորանաց դէմ ունկնախից՝ սուրը քաշածին պէս վրան դիմեց ու անոր սուր ծայրը քաջ Մերկուտիոսի կուրծքին դիպուղղեց. այլ ան ալ կրակ դարձած ու մահուան դուռն հասած, թուրը թուրին դէմ բռնեց, ու պատերազմաձայն արհամարհանօք՝ մէկ ձեռքով ցուրտ մահն անգոսնեց և միւսով զայն նորէն Դիպալտոսի վրայ դարձուց, որ ճարպիկութեամբ մի հարուածին տակէն ինքզինք ճողոպրեց։ Նոյն կէտին Հռոմէոս՝ Կեցէ՛ք, բարեկամնե՛ր. բարեկամնե՛ր, զատուեցէ՛ք, պոռաց բարձրաձայն, և իր արտասանած խօսքերէն աւելի արագ՝ իր թեթևաշարժ բազուկն երկու աղետաբեր սուրերուն սայրերը վար զարնելով՝ երկուքնուն մէջ տեղը նետուեցաւ։ Այս միջոցիս Դիպալտոսի արիւնըռուշտ հարուածը՝ Հռոմէոսի բազուկին տակէն անցնելով կորովի Մերկուտիոսը կեանքէն զրկեց ու այնուհետև ելաւ փախաւ։ Սակայն նայիս որ նորէն ետ դառնալով Հռո-

տիոսի վրայ դիմեց, որ այս միջոցին հազիւ թէ վրէժ լուծելու վրայ կը մտածէր, մէկ մ'ալ յանկարծ վրէժխնդրութեամբ կայծակի պէս իրարու վրայ յարձակեցան. ինչու որ զանոնք զատելու համար սուրս քաշելէս առաջ, մէկ մ'ալ նայիմ որ քաջ Դիպալտոս զարնուեր է, որու ինկնելու կէտին՝ Հռոմէոս թողուց փախաւ։ Ահա այս է ճշմարտութիւնը, եթէ ոչ՝ թող Պէնվօլիօ մահուան դատապարտուի։

ՏԻԿ. ԿԱՊ. Այս մարդը Մոնդակեանց ազգական է, իր ազգակցութիւնը սուտ խօսիլ կը տայ, իրաւ չէ ըսածը. այս մահաբեր վէճին մէջ քսան հոգի կան եղեր և այս քսանը միայն մէկ հոգի չէին կրնար սպաննել։ Իշխան, արդարադատ եղիր, ես արդարութիւն կ'ուզեմ ու պէտք է որ արդար դատաստան տեսնես։ Հռոմէոս՝ Դիպալտոսը մեռցուց ու Հռոմէոս՝ պէտք չէ որ ապրի։

ԻՇԽ. Հռոմէոս՝ Մերկուտիոսն սպաննողը մեռցուց. հիմա անոր տաք արեան գինն ո՛վ պիտի հատուցանէ ինծի։

ՄՈՆ. Հռոմէոս չհատուցանէր, իշխան, ինչու որ Մերկուտիոսի բարեկամն էր. իւր յանցանքը վերջացուց՝ ինչ որ օրէնքը պիտի վճռէր. որ է՝ Դիպալտոսի մահը։

ԻՇԽ. Եւ այդ յանցանքին համար, անմիջապէս կ'աքսորենք զինք ասկէ. ձեր ատելութեամբքը ես ալ ձեր արիւնահեղութեանց մասնակից եղայ, արիւնս՝ ձեր արիւնահեղ կռուոց պատճառաւ գետին թափեցաւ. բայց ձեր վրայ այնպիսի մեծ տուգանքներ դնելով պիտի պատժեմ որ դուք ամէնքդ ալ զղջաք ինծի պատճառած կորստեան համար. ձեր աղերսագրոց ու փաստագտութեանց ականջ չպիտի կախեմ, ո՛չ արտասուքնիդ և ո՛չ աղաչանքնիդ պիտի կարենան ձեր առթած գայթակղութիւնները ծախու առնել, անոր համար այսպիսի միջոցներու մի՛ դիմէք։ Թող իսկոյն Հռոմէոս կորսուի երթայ ասկէ, եթէ ոչ, գտնուած ժամուն՝ իւր վերջին կէտը կ'ըլլայ։ Վերցուցէք սա մեռած մարմինը ու մեր կամաց համեմատ վարուեցէք։ Մարդասպաններու վրայ գթութիւն ցուցնելը՝ սպաննիչներու ներումն տալ ըսել է։

(Կ'ԵԼՆԵՆ։)

# ՏԵՍԱՐԱՆ Բ.

ԳԱԲՈՒԼԷՏի *տան մէջ սենեակ մի։*

ՃՈՒԼԻԷԴԴԱ կը մտնէ։

ՃՈՒԼ. *Քառարշաւ սլացէ՛ք հրագընթաց նժոյգք բոցոտնեայք՝ դէպի Փեպոսի ապարանքը. Փայէտոնի պէս կառուղիղ մի, զձեզ դէպի արեւմուտք մտրակելով, մինչեւ հիմա՝ ամպաղօտ երեկոյ մի պիտի հասցնէր վրանիս անմիջապէս։ — Տարածէ՛ քո թանձրահօծ վարագոյրդ, ո՛վ սիրածին գիշեր, որպէս զի երադարշաւին աչերը թարթափեն, ու Հռոմէոս՝ անբամբասելի եւ անդիտելի աս բազուկներուս վրայ դիմէ։ — Տարփաւորները՝ իրենց ունեցած շնորհաց փայլով, իրարու սիրահարական պարտաւորութիւններին ընելու համար շատ աղէկ կրնան տեսնել. կամ, թէ որ սէրը իրաւցնէ կոյր է, ամենէ աղէկ՝ գիշերոյ հետ կը համաձայնի. Հասի՛ր, վեհապանծ գիշեր, խաղաղընթաց նմջօրօրուհի՝ բոլորովին սեւազգեաց, ու սորվեցո՛ւր ինձ թէ ինչպէս կրնամ կորսնցնել վաստկուած ամուսնութիւն մի՝ որոյ վրայ զոյգ մ'անարատ կոյսեր վիճակ նետելու վրայ են. քո սեւաթոյր վերարկուաւդ ծածկէ՛ իմ այտերուս վրայ եռացած կնաբարոյ արեանս շիկնութիւնը, մինչեւ որ անժպիրհ սէրը, աւելի համարձակութիւն գտնելով, ճշմարիտ սիրոյն արդիւնքը՝ պարզապէս համեստութիւն մի սեպէ։ — Եկո՛ւր, Հռոմէոս, եկո՛ւր, լոյս ի գիշերի. ինչու որ դու գիշերուան թեւոց վրայ՝ ագռաւու կռնկին վրայ նոր տեղած ձիւնէն աւելի ճերմակ պիտ՝ երեւաս։ — Հասի՛ր, հեզիկ գիշեր, եկո՛ւր սիրարծարծ ու սեւաճակատ գիշեր, տո՛ւր ինձ իմ Հռոմէոսս. թէ որ երբէք վախճանի՝ ա՛ռ զայն ու կտոր կտոր յօշատելով մանրաիկ աստղեր շինէ, որոնցմով երկնից երեսն այնքան լուսափայլ փառաւորի, եւ բոլոր աշխարհք գիշերն անքան սիրէ, որ այլ եւ տիեզերասփիւռ արեւուն երեսը նայող չըլլայ. — Ա՛հ, ես սիրոյ բնակարան մի գնեցի, այլ դեռ ձեռք չկրցայ անցունել, ու թէպէտ եւ ես ալ վաճառուեցայ, սակայն դեռ գնողին իսկ զայն չվայելեց։ Այս օրն ինձ այնքան ձանձրալի կ'երեւի, որքան մեծ*

տօնէ մ'առաջ ելած գիշերն անհամբեր մանկան մ'աչքին կ'երեւի, որ նոր լաթեր ունենալով՝ չկրնար գործածել զանոնք։ Ո՛հ, ահա դայեկուհիս կը գայ։

ՍՆՈՒՑԻՉ կը մտնէ չուանները առնելով։

Անշուշտ նոր լուրեր պիտի բերէ, եւ որ եւ է լեզու որ Հռոմէոսի անունը կ'արտասանէ՝ իմ քովս երկնային բարբառ մ'ունեցած կը սեպուի։ — Ինտո՞ր ես, դայեկուհի, ի՞նչ նոր լուր ունիս։ Ադոնք ի՞նչ են, չուաննե՞րն են զորս Հռոմէոս պատուիրեց քեզ որ առնես բերես։

ՍՆՈՒՑ. Հա՛, հա՛, չուաններն են։ (Գետին կը նետէ չուանները։)

ՃՈՒԼ. Ա՛հ, ափսո՜ս ինձ. ի՞նչ նոր լուր ունիս. ինչո՞ւ համար ձեռքերդ ատանկ մատնակապ ըրիր։

ՍՆՈՒՑ. Ա՛հ, այս ի՞նչ սեւ օր է եղեր. մեռա՜ւ, մեռա՜ւ, մեռա՜ւ. կորա՜նք, տիկին, կորա՜նք. — ափսո՜ս, այս ի՞նչ օր է եղեր. ձեռքէ գնա՜ց, սպաննուեցա՜ւ, մեռա՜ւ։

ՃՈՒԼ. Աստուած ա՞յնքան անգութ կրնա՞յ ըլլալ։

ՍՆՈՒՑ. Թէ որ Աստուած չկրնար, Հռոմէոս կրնայ։ — Ո՛հ, Հռոմէո՜ս, Հռոմէո՜ս։ — Ո՞վ մտքէն կ'անցունէր։ — Հռոմէո՜ս։

ՃՈՒԼ. Դուն ի՞նչ սատանուհի ես, որ ասանկ կը չարչարես զիս։ Այդ վայնասունները՝ սոսկալի դժոխքին մէջ միայն կը լսուին։ Հռոմէոս ինքզի՞նք սպաննեց. միայն հա՛ մ'ըսէ ինձ. եւ այդ պարզապէս հա՛ վանկը՝ արքայիկի մը մահասփիւռ աչքէն աւելի կը թունաւորէ զիս. Թէ որ հա՛ ըսես՝ այլ եւս ես ալ՝ ես չեմ. կամ, թէ որ հա՛ ըսես՝ այս աչերն ալ կը գոցուին[1]). Սպաննեցի՞ն զինք. ի՞նչ եղաւ. կամ այո՛ ըսէ, կամ ո՛չ։ Կարճ խօսքերն իմ երջանկութեանս կամ ապերջանկութեանս վերջ մը կը տան։

ՍՆՈՒՑ. Ես վէրքը տեսայ, ես աչօքս տեսայ. — Աստուած հեռու ընէ, ցուցնելու պէս չըլլայ, — Ճիշդ սա տեղէն, իր առնական կուրծքին վրայ. ողորմելի մեռել մը, արիւնաթաթախ ողորմելի մեռել մը. այնքան դեղնած, այնքան դեղնած՝ որ մոխիր կըլա-

[1]) Հա՛, կամ այո՛, ես եւ աչք Անգղ. մէջ նոյն արտասանութիւնն ունին։ Ծն. Թ.

բուած էր, բոլորովի՛ն արիւնի մէջ թաթխուած, բոլորովի՛ն սառած արիւնի մէջ ճապաղուած. այս որ տեսայ՝ նուաղեցայ։

ՃՈՒԼ. Ո՛հ. սի՛րտս, չե՛ս խորտակուիր. — խե՛ղճ սնանկուհի. խորտակուէ՛ իսկոյն. աչե՛րս, խաւարեցէ՛ք, ու այլ եւս մի՛ համարձակիք լոյս մի տեսնելու. ապականացու մարմին, ի հո՛ղ դարձիր նորէն, կենդանութի՛ւն, վերջացի՛ր հոս. թո՛ղ քեզ և Հռոմէոսը մէ՛կ ծանր գերեզման ճնշէ։

ՍՆՈՒՑ. Ո՛հ, Դիպալտո՛ս, Դիպալտո՛ս. իմ ամենասիրելի՛ բարեկամս. ո՛հ, անուշի՛կ Դիպալտոս, ազնի՛ւ երիտասարդ. ես քու մահդ տեսնելու համար պիտ՝ ապրիմ եղեր։

ՃՈՒԼ. Այս ի՛նչ փոթորկաձայն աղաղակ է որ հակառական եղանակով կը մրրկի։ Հռոմէոս սպաննուեցա՞ւ ու Դիպալտոս մեռա՞ւ. մեռա՞ւ ստուգիւ իմ ամենասիրելի քեռորդիս ու աւելի սիրելի ամուսինս։ Ուրեմն, զարհուրաձա՛յն փող, հնչեցո՛ւր վերջին դատաստանի եղանակդ. այս երկուքն երթալէն ետք՝ այլ եւս ո՞վ կ'ապրի։

ՍՆՈՒՑ. Դիպալտոս գնա՛ց, ու Հռոմէոս աքսորուեցա՛ւ. Հռոմէոսը՝ որ Դիպալտոսն սպաննեց, աքսորուեցա՛ւ։

ՃՈՒԼ. Վա՛հ, Աստուա՛ծ. — Հռոմէոսի՞ն ձեռքը Դիպալտոսին արիւնը թափեց։

ՍՆՈՒՑ. Թափե՛ց, թափե՛ց. հայա՛. այս ի՛նչ սեւ օր է եղեր. թափե՛ց հապա։

ՃՈՒԼ. Ո՛վ ծաղկազարդ դէմքով պահուած օձ սիրտ. երբէ՛ք վիշապ մ'եղա՞ծ է որ այսանկ գեղակերտ խոռոչի մը մէջ բնակի. չնորհացո՛յց բռնաւոր. հրեշտակատեսի՛լ սատանայ. աղաւնեփետո՛ւր ագռաւ. գայլախողխո՛ղ գառն. երկնատեսիլ անարգելի՛ էակ. դո՛ւն ինքզինքիդ ներհակերեւ. դատապարտեա՛լ սուրբ. պատկառելի՛ վատ։ — Ո՛վ բնութիւն. ի՛նչ բան ունէիր դժոխոց մէջ, երբ այսպիսի հրաշագեղ մարմնոյ՝ մահկանացու արքայութեան մէջ՝ սատանայի մը հոգին պարփակել կը տաս։ Երբէ՛ք տեսնուա՞ծ է այսպիսի գիրք մ'որ այսանկ փառաւոր կազմուածք մ'ունենար ու մէջն այսպիսի խորթ նիւթ պարունակէ՞ր։ Ափսո՛ս. նենգութիւնն ալ այսանկ շքեղ պալատի մը մէջ բնակիլ պէ՞տք է եղեր։

ՍՆՈՒՑ. Մարդոց՝ վստահութիւն չըլլուի՛ր, ո՛չ հաւատարմութիւն

ռնին, ոչ պարկեշտութիւն. ամէնքն ալ երդմնազանց են, խոտամնադրուժ են, նենգաւոր են, խաբեբայ են։ — Ա՛հ, ո՞ւր է մարդս. մանչ, քիչ մը կենօղի բեր ինծ։ — Այս ցաւերը, այս թշուառութիւնները, այս վիշտերը տեսար, բոլոր ասոնք են որ զիս կը պառաւցնեն։ — Երեսդ սեւ ըլլայ, Հռոմէոս։

ՃՈՒԼ. Լեզուդ չորնայ՝ որ վրան ատանկ բան չըսես. ինք երեսը սեւ ըլլալու համար ծնած է. ամօթը՝ կ՚ամչնայ անոր ճակտին վրայ երեւալու, ինչու որ ճակատը՝ աթոռ մ՚է, ուր պատիւը՝ պսակ առնելով կը թագաւորէ իբրեւ միակ ինքնակալ տիեզերական աշխարհի։ Ո՛հ, ինչ անքառնուհի եմ որ զինք կը յանդիմանեմ։

ՍՆՆԻՑ. Ձեր քեռորդին սպաննողին համար բարի կը խօսիք։

ՃՈՒԼ. Ինչ. կ՚ուզես որ ամուսնոյս համար չար խօսիմ։ Ա՛հ, խեղճ ամուսինս, ո՞ր լեզուն կրնայ գովել անունդ, երբ ես՝ միայն երեք ժամուան կողակցուհիդ՝ անուանարկ կ՚ընեմ զայն։ — Սակայն, անօրէն, ինչու համար սպաննեցիր քեռորդիս. բայց եթէ ոչ՝ անօրէն քեռորդիս՝ ամուսինս պիտ՝ ըսպաննէր։ Ե՛տ դարձիք, անխոհեմ արտասուք, ետ դարձիք նորէն ատ սկզբնաբուղխ վտակին ձեր. ձեր հարկատու կաթիլները՝ թշուառութեանց կը վերաբերին, զորս դուք սխալմամբ ուրախութեան կը նուիրէք։ Ամուսինս դեռ ողջ է, զոր Տիպալտոս մեռցնել կ՚ուզէր. ու Տիպալտոս մեռած է, որ զամուսինս մեռցնել կ՚ուզէր. ասկէ աւելի մխիթարութիւն կ՚ուզեմ. ուրեմն ինչ բանի համար պիտի լամ եղեր։ Միայն թէ, Տիպալտոսի մահուանէ աւելի գէշ խօսք մը՝ մահուորեց զիս. ինտո՞ր մոռքէս հանեմ պիտի զայն. այնպիսի կերպով յիշողութեանս մէջ տպաւորեցաւ, որպէս թէ դատապարտարժան ժանտագործութեանց յիշողութիւններն ըլլային զորս յանցաւորք մտքերնէն չեն կրնար հանել։ Տիպալտոս՝ մեռաւ, ու Հռոմէոս — աքսորուեցաւ. այս — աքսորուեցաւը, միայն մէկ — աքսորուեցաւ խօսքը՝ տասն հազար Տիպալտոսներու կորուստէն աւելի դառն է։ Տիպալտոսի մահը բաւական էր, թէ որ թշուառութիւնս անով վերջանար. բայց — թէ որ դառնակսկիծ թշուառութիւնները ձախորդաբար մէկը մէկալին ետեւէ կը գան, և ուրիշ ցաւոց յաջորդութիւնը կ՚ախորժեն, ինչու համար — Տիպալտոս մեռաւ — ըսելէն ետք՝

հայրդ, մայրդ և կամ երկուքը մէկէն մեռանը չյարեց; որով զիս սովորական ողբակծութեան մի մէջ պիտի ձգէր միայն։ Սակայն, Դիպալտոս մեռաւ ըսելէն ետք, ռամկօրէն և անխոհեմաբար Հռոմէոս աքսորեցաւ — ըսելը, այս խօսքը միայն՝ հայր, մայր, Դիպալտոս, Հռոմէոս, Ճիւլիէթ, ամենք սպաննուեցան, ամենք մեռան ըսել է. — Հռոմէոս աքսորեցաւ. — Մահ խօսքին մէջ՝ վերջ մի, սահման մի, չափ մի, կշռար մի չկայ. խօսքերը՝ կարող չեն երբեք բացատրել այս դժբաղդութիւնը։ — Դայեկուհի, ուր են հայրս ու մայրս։

**ՍՆՈՒՑ.** Դիպալտոսի մեռելին վրայ կը լան ու կ'ողբան. քովերնին կ'երթա՞ք. թէ որ կ'ուզէք տանիմ ձեզ հոն։

**ՃՈՒԼ.** Թող իրենց արտասուքներով անոր վէրքերը լուան. երբ արտասուքնին չորնայ՝ իմիններս պիտ՝ ըսկսին հոսիլ Հռոմէոսի աքսորման համար։ Վերցո՛ւր սա չուանները։ — Խեղճ առասաններ, դուք ալ ինծի պէս խաբուած էք, ինչու որ Հռոմէոս աքսորուեցաւ. զձեզ՝ անկողինս առևանգելու համար շինեց. բայց ես՝ կոյս աղջիկ, կուսևարի պիտի մեռնիմ։ Քալեցէ՛ք չուաններ, քալէ՛ դայեկուհի. ես՝ իմ հարսանեկան առագաստս մտնեմ ու մահուան՝ և ոչ թէ Հռոմէոսի հետ կուսապղծուիմ։

**ՍՆՈՒՑ.** Սենեակնիդ քաշուեցէք. ես հիմա Հռոմէոսը կը գտնեմ որ գայ մխիթարէ զձեզ. — ես աղէկ գիտեմ ուր ըլլալը։ Լսեցի՞ք. այս գիշեր Հռոմէոսնիդ հոս պիտի գտնուի. ես հիմա քովը պիտի երթամ. ինք՝ Հայր Լաւրենտիոսի խուցը պահուած է։

**ՃՈՒԼ.** Աղէ՛, գտի՛ր զինք, ու սա մատնին իմ օրինաւոր կողակցիս տո՛ւր և աղաչէ՛ զինքն որ գայ վերջին բարեւը տայ ինձ։

(կ'ելլեն։)

## ՏԵՍԱՐԱՆ Գ.

Հայր **ԼԱՒՐԵՆՏԻՈՍ**ի խուցը։

Հայր ԼԱՒՐԵՆՏԻՈՍ և ՀՌՈՄԷՈՍ կը մտնեն։

**Հ. ԼԱՒ.** Յառաջ եկո՛ւր, Հռոմէոս. յառա՛ջ եկուր, վհատեա՛լ մարդ. մորմոքը անդամոցդ սիրահարեր է, և դուն ալ դժբաղդութեանց հետ ամուսնացեր ես։

ՀՌՈ. Ի՛նչ նոր լուր կայ, տէ՛ր հայր. իշխանն ի՛նչ կերպ դատապարտութիւն ըրեր է։ Ի՛նչ տեսակ ցաւեր կան դեռ, որք հետս բարեկամութիւն ընել կ'ուզեն և զորս բնաւ չեմ ճանաչեր ես տակաւին։

Հ. ԼՈՒ. Այդ քո ձախորդ վիճակիդ հետ պինտ ընտանի, սիրելի որդեակ. իշխանին տուած դատավճռոյն լուրը տամ քեզ։

ՀՌՈ. Իշխանին դատավճիռն ալ դատաստանի օրէն ի՛նչ պակաս տեղ ունի նայինք։

Հ. ԼՈՒ. Անկէ աւելի դիւրըմբեր դատապարտութիւն մի փախաւ բերնէն։ Մարմնոյ մահ չէ, այլ՝ մարմնոյ աքսորանք։

ՀՌՈ. Հա՛հ, աքսորա՛նք. Աստուծոյ սիրոյն համար, — մա՛հ ըսէ նաոր. ինչու որ աքսորը՝ իր երևոյթով, մահուանէ շատ ու շատ աւելի սոսկալի է. — աքսորանք մ'ըսեր սաոր։

Հ. ԼՈՒ. Դուն՝ այս տեղէն՝ Վերոնայէն աքսորուած ես. համբերէ, ինչու որ աշխարհք լայն ու ընդարձակ է։

ՀՌՈ. Վերոնայի պարիսպներէն դուրս աշխարհք չկայ, կայ նէ՝ քաւարան, տանջանք և նոյն ինքն դժոխքն է։ Անկէ քշուիլը՝ աշխարհէ քշուիլ ըսել է, ու աշխարհիս աքսորանքն ալ՝ մահն է, — ուրեմն, ըսել է որ, մահուան անունը սխալ է առնուեր. մահը՝ աքսորանք է ըսես, գլուխս ոսկեղէն կացինով կը կտրես ու իմ կեանքս զրաւող հարուածին վրայ կը ժպտիս։

Հ. ԼՈՒ. Ո՛վ մահացու մեղք. ո՛վ ապաշնորհ ապերախտութիւն. քո յանցանքդ է որ մեր օրէնքը մահ կ'անուանէ. սակայն բարեգութ իշխանը, քեզի կողմնաւէր ըլլալով՝ օրէնքը ոտքին տակն առաւ ու մահուան այն անհաճոյ խօսքը՝ աքսորման դարձուց։ Գիտցած ըլլաս՝ որ վրադ մեծ գթութիւն ցուցուց, բայց խելքդ չզգար որ։

ՀՌՈ. Տանջա՛նք է, ո՛չ թէ գթութիւն. երկինքն հո՛ս է, ուր որ Ճիւլիէդդա կը բնակի. և հոս տեղ, ամանկ երկինքի մի մէջ, ամեն կատու, շուն, պզտիկ մկները և ամեն անպիտան բաները, ապրին՝ և իւր երեսը տեսնեն, ու Հռոմէոս չկարենա՛յ տեսնել։ — Գիշալէզ ճանճերը Հռոմէոսէն աւելի արժողութի՛ւն ունին, աւելի պատուաւոր վիճա՛կ ունին, աւելի թանկագին կեա՛նք ունին, որ երթա՛ն սիրելի Ճիւլիէդդայիս ձեռքին հրաշագեղ ճերմկութեան վրայ

կայնին ու անմահական օրհնութիւններ գողնան իր շրթունքներէն , որոնք իրենց կուսական և անբիծ ողջախոհութեամբը , մէկզմէկու հետ համբուրուելնուն յանցանքը միայն մտածելով՝ ասուել ևս կը կարմրին , ու Հռոմէոս չկարենայ , հա՛ . ինչու , ըստ որում աքսորուած է ։ Ճանճերն այս բաները կարենան ընել՝ ու ես անկէ հեռանամ , հա՞[1]) . անոնք ազատ ըլլան՝ ու ես աքսորուա՞ծ , հա՛ ։ Տակաւին կրնա՞ս համոզել զիս որ աքսորուիլը մահ չէ ։ Պատրաստած Թոյն չունէի՞ր , պինտ սայրահատու դանակ չունէի՞ր , և կամ յանկարծահաս մահուան ուրիշ միջոց մը չէի՞ր գիտեր , որ երբէք այսքան անձռունի չըլլային ու ինծի տայիր , քան թէ — աքսորուած ես ըսելով՝ զիս մեռցնէիր ։ Աքսորուա՞ծ . այդ խօսքը՝ դժոխոց դատապարտեալ հոգիները գործ կ'ածեն և անոնց կաղկանձիւններուն մէջ յարգ ունի , հա՛յր պատուական ։ Այդ ի՞նչպէս սիրտ ունիս եղեր ։ դուն՝ որ եկեղեցական պիտ՝ ըլլաս , հոգևոր խոստովանահայր ես , մեղաց թողութիւն կը տաս ու զիս բարեկամիդ տեղ կը դնես , որ այդ — աքսորանք խօսքով՝ հոգիս բերանս կը բերես ։

Հ. ԼՈՐ. Խե՛նդ , փախո՛ւկ մարդ , ի՛ս մտիկ ըրէ որ քեզ բան մ'ըսեմ ։

ՀՌՈ. Չը՛լլար , չը՛լլար . նորէն աքսորանքի խօսք պիտի բանաս ։

Հ. ԼՈՐ. Ես քեզի զէնք պիտի տամ , որ անով ինքզինքդ այս խօսքէն պաշտպանես . փիլիսոփայութիւնը , ձախորդութեանց դէմ այն խիստ քաղցր կաթը՝ քեզ կրնայ մխիթարել , թէև աքսորանքն իսկ ըլլաս ։

ՀՌՈ. Դարձեա՞լ աքսորանք ։ — Տա՛ր կախէ փիլիսոփայութիւնը. միայն թէ , թէ որ փիլիսոփայութիւնը Ճիւլեէդդա մի կրնայ ստեղծել , քաղաք մի կրնայ տեղափոխել , իշխանի մը դատավճիռը դերևաշրջել նէ՝ այն ուրիշ խօսք . եթէ ոչ , օգնութիւն չկրնար ընել , առջևը չկրնար առնել . կա՛րճ ըրէ ։

Հ. ԼՈՐ. Ա՛հ . հասկցայ հիմա , խենդերն ականջ չեն ունենար ։

ՀՌՈ. Ի՞նտո՞ր ունենան , երբ խելացիներն աչք չունին ։

Հ. ԼՈՐ. Կեցի՛ր . քո վիճակիդ վրայօք բանավիճիմ քեզի հետ ։

[1]) Ճանճ ու հեռանալ , նոյն արտասանութիւնն ունին Անգղ. մէջ ։ Ծ. Թ.

ՀՌՈ. Քու չզգացած բանի վրայ՝ չես կրնար իմաստասիրել. թէ որ ինծի պէս երիտասարդ ըլլայիր, Ճիւլիէդդան սիրականդ ըլլար, ժամուան մ'ամուսնացած ըլլայիր, Դիպալտոս մ'ըսպաննած ըլլայիր, ինծի պէս սիրահարութենէ շուարէիր ու ինծի պէս ալ աքսորուած ըլլայիր՝ այն ժամանակ կրնայիր դատողութիւն ընելով խօսիլ, այն ժամանակ մազերդ կը փետտորտէիր ու ինծի պէս հիմա գետին կը փռուէիր՝ որ ապառնի գերեզմանիդ չափն առնես։

Հ. ԼԱՒ. Ո՛տք ել. դուռը կը զարնեն. պահուէ՛, սիրելի Հռոմէոս։ (Ներսէն դուռը կը զարնեն։)

ՀՌՈ. Չէ՛, միայն թէ, այս սիրտ խօթացնող հառաչանացս արտաշնչութիւնները՝ մառախուղի պէս թանձրանալով, զիս փնտռող աչաց առջևէն պահեն։ (Նորէն կը զարնեն։)

Հ. ԼԱՒ. Չե՞ս լսեր, ինտո՛ր կը զարնեն։ — Ո՞վ է այն։ — Հռոմէոս, ոտք ել. պիտի բռնուիս։ — Կայնէ՛ նայիմ. ոտք ել։ Վաղէ աղօթարանս մտի՛ր։ (Նորէն կը զարնեն) Հի՛մա, հի՛մա։ Ողորմած Աստուած. այս ինչ կամակորութիւն է։ (Նորէն կը զարնեն) Եկա՛յ, եկա՛յ։ Ո՞վ է անանկ պինդ զարնողը։ Որմէ՞ կը գաք։ Ի՞նչ կ'ուզէք։

ՄՆՈՒՑ. (Ներսէն) Բացէ՛ք, բացէ՛ք որ ներս գամ ու պատճառը հասկցնեմ ձեզ. Ճիւլիէդդա տիկնոջս կողմէն եկած եմ։

Հ. ԼԱՒ. Ուրեմն, բարի եկար։

ՄՆՈՒՑԻՉ կը մտնէ։

ՄՆՈՒՑ. Ա՛հ, տէ՛ր հայր, Աստուծոյ սիրոյն համար, ըսէք ինծի, տէ՛ր հայր, ո՞ւր է տիկնոջս նոր փեսայն, ո՞ւր է Հռոմէոս։

Հ. ԼԱՒ. Ահա՛ գետնին վրայ պառկեր է, իւր թափած արտասուքներէն գինովցած։

ՄՆՈՒՑ. Վա՜հ. այս ալ ճիշդ տիկնոջս վիճակն ունի. այս ալ անոր վիճակին մէջն է։

Հ. ԼԱՒ. Ո՜վ դժբաղդալից համակրութիւն. ո՜վ խղճալի հանգամանքակցութիւն։

ՄՆՈՒՑ. Այն ալ ճիշդ ասոր պէս պառկեր է. կ'ողբայ ու կը լայ, կը լայ ու կ'ողբայ. — ոտք ելէք, ոտք ելէք. ելէք, սրտոտ մարդ եղիք. Ճիւլիէդդայի սիրոյն համար, իւր անուշիկ սիրոյն հա-

մար, ոտք ելէք ու կայնեցէք. այդ ի՛նչ յուսահատութեան ծայրն էք հասեր։

ՀՌՈ. Դայեկուհի՛։

ՍՆՈՒՑ. Ա՛հ, տէր իմ, ա՛հ, տէր իմ, — Է՛, ի՛նչ հասկցաք, ասոնց ամենուն վերջը մահ է նէ։

ՀՌՈ. Ճիւլիէդդայի խօսքն ըրիր. ինտո՞ր է. ծեր մարդասպանի մի տեղ չը՞սեպեր զիս, որ մեր երջանկութեան մանկութիւնը՝ իրեն պինտ մօտ ազգականին արեան ներկովը արատաւորեցի։ Ինք ո՞ւր է. ինտո՞ր է. երեսը պահած տիկինս մեր երես չունեցող սիրոյն վրայ ի՞նչ կ'ըսէ։

ՍՆՈՒՑ. Ափսո՛ս, ինք բան մի չըսեր, տէր իմ, այլ՝ անդադար կը լայ ու կ'ողբայ. մէկ՝ անկողնոյն վրայ կ'ինկնի, մէկ՝ կ'ելնէ յանկարծ ու Դիպալտոս կը պոռայ. ու Հռոմէոս կանչելով նորէն վար կը փռուի։

ՀՌՈ. Որպէս թէ անունս՝ թնդանօթի մահահասոյց բերնէն ելած նետուածք մ'ըլլար որ զինք մեռցնէր, ինչպէս որ այդ անուան անիծեալ ձեռքն իր ազգականը մեռցուց։ — Ո՛հ, ըսէ ինծ, հա՛յր պատուական, ըսէ նայիմ, այս մարմնոյս ո՞ր անպիտան անդամին վրայ կը բնակի անունս, ըսէ, որ ցիրուցան ընեմ այն ատելի բնակարանը։ (Սուրը քաշելով։)

Հ. ԼԱՒ. Կեցի՛ր յուսահատած ձեռքդ. մա՞րդ ես դու, ի՞նչ ես. կերպարանքդ կ'արտայայտէ որ մարդ ես, այսու ամենայնիւ, կանացի լացեր ունիս և վայրենի շարժուածքդ՝ գազանի մ'անասնական կատղութիւնը կը ցուցնէ. դուն որ ըստ երևութից՝ մարդ ես, և ըստ աներևութից՝ կին, և ըստ երկոցունց երևութից՝ անյարմարերև անբան՝ շուարեցուցիր զիս. սուրբ կարգս վկայ, ես դքեզ հեզաբարոյ խառնուածք ունեցող անձ մի կը կարծէի։ Դիպալտոսը մեռցնելդ բաւական չէ՝ հիմայ ալ ելեր ինքզի՞նքդ պիտ՝ ըսպաննես, որ նոյնհետայն սրտիդ մէջ բնակող հարսնակինդ ալ մեռցուցած ըլլաս, վրադ անիծական նախատինք բերելով։ Ինչո՞ւ համար երկնից ու երկրի նախատինքը ծննդեանդ վրայ կը բերես, քանի որ ծնունդդ, երկինքն ու երկիրը՝ երեքն ալ քո վրայ ամփոփուած են, որոնց բոլորը մէկէն կորուսելդ կ'ուզես։ Ամօ՛թ է, ամօ՛թ. դուն

քո անձդ, սէրդ ու խոհեմութիւնդ ամօթապարտ կ՚ընես, որպէս թէ վաշխառուէր մ՚ըլլայիր, որ ամեն բանդ առատ ըլլալով՝ անոնց և ոչ մէկին օրինաւոր գործածութիւնը չուզէիր, որոնք քո անձդ, սէրդ և խոհեմութիւնդ կրնային մշակել։ Քո ազնիւ անձդ՝ որ մոմաձոյլ արձան կը նմանի, իւր այրավայել կորովութիւնը կ՚անարգէ։ Քո անգին սէրդ՝ զոր երդմնեցար, կեղծաստաբար կ՚երդմնազանցես, քո սիրականիդ մահուան պատճառ ըլլալով՝ զոր խանդակաթ սիրելու խոստացար։ Քո խոհեմութիւնդ՝ որ այդ անձին և սիրոյդ զարդարանքն է, երկուքին վարմանց մէջն ալ կ՚անշնորհի, որպէս թէ անշնորհք զինուորի մի նման վառօդամանին ձեռացդ մէջ անգիտութեամբդ կրակ կը տաս և դուն քո զէնքերովդ ինքզինքդ յօշատել կ՚ուզես։ Ի՛նչ կ՚ընես, մարդ, խելքդ գլուխդ ժողվէ, Ճիւլիէտդ ողջ է, որոյ անհամեմատ սիրոյն համար վերջերս քիչ մնաց որ պիտի մեռնէիր. տեսա՛ր հիմա, որ երջանիկ ես։ Տիպալտոս՝ զքեզ մեռցնել կ՚ուզեր, բայց դուն՝ Տիպալտոսը մեռցուցիր. տեսա՛ր որ դարձեալ երջանիկ ես։ Օրէնքը՝ որ մահ կ՚ըսպառնար քեզ, հետդ բարեկամանալով, մահը աքսորանքի յեղաշրջեց. այս ալ քեզի երջանկութիւն մ՚է։ Խուռն օրհնութիւններ գլխուդ վրայ կը տեղան, երջանկութիւնը՝ իւր ամենէ փառաւորազարդ հպտանօքը զքեզ կը յարգասիրէ, բայց դուն՝ բնութիւնն աւրուած ու երես առած աղջիկի մի պէս բաղդիդ ու սիրոյդ վրայ կը թթուադիմես, զգոյշ կեցի՛ր, զգոյշ կեցի՛ր., ինչու որ թշուառականներն այս կերպով կը մեռնին։ Գնա՛ վազէ սիրականիդ քով, ինչպէս որ խօսք ըրեր էիք, սենեակն ելի՛ր, վազէ ու մխիթարէ զինք. բայց ի՛նձ նայէ, մինչև պահապաններուն հսկելու ժամանակը մի՛ կենար, ինչու որ ետք Մանդուա չես կրնար երթալ, ուր որ պիտի կենաս, մինչև որ ժամանակը գայ որ ամուսնութիւնդ հրապարակալուր ըլլայ, ձեր գերդաստաններն հաշտուին, իշխանին ներողութիւնն ստանամք, որով քեզ նորէն ետ կանչեմք և հարիւր հազար անգամ աւելի ուրախութեամբ ետ դառնաս քան որչափ տրտմութեամբ որ պիտ՚ երթաս։ — Դայեկուհի՛, դուն առջևէն գնա՛. խաթունիդ բարև ըրէ, ու պատուիրէ որ բոլոր ընտանիքը կանուխկեկ անկողին մտցնէ, որու պինտ հարկաւորութիւն ունենալ

պէտք են, իրենց կսկծալի ցաւոց պատճառաւ. Հռոմէոս ալ հիմա եւս էգ կը համնի։

ՄՆՈՒՑ. Վա՜հ, Աստուած. բոլոր գիշերը հոս նստիլ կ'ուզէ սիրտս, ճշմարիտ, որ բարի խրատ մտիկ ընեմ. ա՜հ, նայէ ինչ ուսեալ բան է գրել կարդալը։ — Տէ՛ր իմ, ձեզի համար՝ պիտի գամ ըսեմ տիկնոջս, անանկ չէ՞։

ՀՌՈ. Այո՛, անանկ ըրէ՛, և ըսէ՛ սիրականիս որ զիս յանդիմանելու պատրաստուի։

ՄՆԱՒՑ. Առէ՛ք սա մատնին, տէ՛ր իմ, քովս ձզեց որ ձեզ տամ. Վազեցէ՛ք, տէր իմ, շո՛ւտ ըրէք, ինչու որ ժամանակն ուշանալու վրայ է։

ՀՌՈ. Ա՛հ, ինտո՛ր սիրտս հանգչեցաւ ու սփոփեցայ ասով։

Հ. Լ.ՈՒ. Գնա՛ նայիմ. գիշեր բարի։ Նաև ինձ նայէ. քու բաղդդ ու երջանկութիւնդ սա բանէն կախեալ է որ, կա՛մ պահապաններուն հսկելու ժամանակէն առաջ պիտի մեկնիս, կամ առաւօտը պինտ կանուխ կերպարանածպիտ ասկէ պիտի փախչիս։ Մանդուա գնա՛, նստէ՛. երբեմնակի պաշտօնեայդ հոս գալու ժամանակ, ես կը գտնեմ զինք և քու բարելաւութեանդ նկատող իւրաքանչիւր բարեբաղդ յաջողութիւնները կ'իմացնեմ իրեն որ գայ քեզ լուր տայ։ Ձեռքդ տո՛ւր նայիմ. ուշացեր է ժամանակը. Տէր ընդ քեզ. գիշեր բարի։

ՀՌՈ. Թէ որ հաճութիւնն գերազանցող ուրախութիւն մ'իս իր քովս չկանչէր, սրտիս ցաւ պիտ՝ ըլլար ասանկ արտորանօք քեզմէ զատուիլս. ծառայ եմ։ (Կ'ելնեն։)

# ՏԵՍԱՐԱՆ Գ.

**ԳԱՊՈՒԼԷՏ**ի *տան մէջ սենեակ մի։*

ԳԱՊՈՒԼԷՏ, ՏԻԿԻՆ ԳԱՊՈՒԼԷՏ և ՊԱՐԻՍ կը մտնեն։

ԳԱՊ. Այս միջոցներուս, այնքան ձախորդ դիպուածներ պատահեցան, տէ՛ր իմ, որ ժամանակ չունեցանք աղջկընուս միտքն ընելու։ Գիտէ՞ք այնքան սրտանց կը սիրէր իւր Դիպալտոս քեռորդին՝

որքան որ ես կը սիրէի ։ Ի՞նչ ընենք , ամենքս ալ պիտի մեռնինք ։ — Ժամանակը շատ ուշ է , այս գիշեր վար չիջնար ։ Ճշմարիտ կ'ըսեմ , որ ձեր ազնիւ ընկերութիւնը չըլլար , ասկէ ժամ մ'առաջ անկողինս մտած կ'ըլլայի ։

ՊԱՐԻՍ. Այս դժբաղդութեանց ժամանակները՝ խօսք-կապ մ'ընելու միջոց չեն տար ․ գիշեր բարի , Տիկին ․ սիրոյ բարեւներս մատուցէք ձեր աղջկան ։

ՏԻԿ. ԳԱՊ. Գլխուս վրայ ․ վաղը առտու կանուխ իր միտքը կ'իմանամ , ինչու որ այս գիշեր սիրտը կոտրուած ըլլալուն՝ ներս գոցուած է ։

ԳԱՊ. Ազնուամեծար Պարիս , ձեզ բան մ'ըսեմ , ահա աղջկանս չհարցուցած ձեզ խօսքս կը տամ , աղջիկս ինձմէ գիտցիք , կարծեմ որ ըստ ամենայնի իմ խօսքէս դուրս չելներ , ու ոչ միայն կարծեմ , այլ և կասկած չունիմ ։ — Կնիկս , անկողին մտնելնէդ առաջ՝ անգամ մը քովը գնացէք ու իմացուցէք իրեն իմ Պարիս զաւկիս՝ իր վրայ սէր ունենալը , ու ըսէք իրեն նաև , բայց միտքերնիդ պահեցէք , որ գալ Չորեքշաբթի , — չէ՛ , կեցիք նայինք ․ այսօր ի՞նչ օր է ։

ՊԱՐ. Երկուշաբթի , տէ՛ր իմ ։

ԳԱՊ. Երկուշաբթի՛ , հա՛հ , հա՛հ ։ Աղէկ՝ բայց , Չորեքշաբթի ալ շատ շուտ եղած կ'ըլլայ , Հինգշաբթի ըլլայ թող ․ — ըսէք իրեն , որ Հինգշաբթի օրը , այս ազնուական կոմսին հետ կարգուի պիտի ։ — Մինչև այն օր պատրաստ կրնա՞ք ըլլալ ․ ասանկ շուտ կարգուիլը կ'ուզէ՞ք ․ պինտ մեծ հարկիք չընենք ․ — մէկ երկու բարեկամ բաւական է ․ — ինչու որ , նայեցէք ի՛նչ կայ ․ Տիպալտոս՝ մեր ազգականն էր ու սպաննուիլն ալ շատ ժամանակ չէ , հիմա ելնենք ու մեծ խնճոյքներ ընենք նէ՝ վրանիս բամբասել պիտի տանք թէ սուգ չենք ըներ ․ անոր համար ընդ ամենը հինգ վեց ազգական ըլլայ նէ՝ բաւական է ։ Բայց Հինգշաբթի օրուան համար ի՞նչ կ'ըսէք ։

ՊԱՐ. Տէ՛ր իմ , երանի թէ Հինգշաբթին վաղը ըլլար ։

ԳԱՊ. Շատ լաւ , բաներնիդ գացէք ։ — Ուրեմն Հինգշաբթի օր , խօսքերնիս խօսք ։ — Կնի՛կ , դուք անկողին երթալէն առաջ Ճիւլեէդդային քով գնացէք անգամ մը և Հինգշաբթի օրուան հարսա-

նեաց պատրաստութիւն տեսնել տուէք ։ — Երթաք բարեաւ, տէր իմ ։ — Ճրագ բերէք, սենեակս. Հօ, առջեւէս ։ այնքան ուշ է, որ քիչ մի ժամանակ ալ անցնի՝ պիտի կանուխ է պիտ՝ ըսենք. — գիշեր բարի ։ (կ՝ելլեն ։)

# ՏԵՍԱՐԱՆ Ե.

## ՃՈՒԼԷԷԴԴԱՅԻ սենեակը ։

ՀՌՈՄԷՈՍ և ՃՈՒԼԷԷԴԴԱ կը մտնեն ։

ՃՈՒԼ. Հիմա իրաւ պիտ՝ երթաս. արշալոյս չծագեցաւ դեռ. սոխակն էր այն և ոչ թէ արտոյտը՝ որ երկչոտ ականջիդ խորոփեաց մէջ արձագանգեց. Հաւատա, որ ամեն գիշեր կը գայ և սա նռնենիին վրայ դայլայլիկներ կ՝երգէ. Ճշմարիտ, սիրականս, սոխակն էր ։

ՀՌՈ. Արտուտն էր, որ արշալոյսին աւետաւուն է, և ոչ թէ սոխակը. տես սիրականս, նա վարը արևելքին կողմի ցանցառասփիւռ ամպերուն մէջէն ինտոր նախանձոտ շառաւիղներ կ՝երիզանան. գիշերուան ճրագները վառեցան ու հատան, և լուսաժպիտ առաւօտը՝ աղօտամերկ լերանց գագաթանց վրայ մատնատրոփ կեցեր է ։ Կամ երթամ ու ապրիմ, կամ կենամ ու մեռնիմ ։

ՃՈՒԼ. Այն լոյսը՝ արշալոյս չէ, ես գիտեմ, դուն որու կը հասկցունես. արեւէն գոլորշացած մէտէորայ մ՝է, որ այս գիշեր քեզի ջահակիր ըլլալու է, որպէս զի մինչև Մանդուա երթալդ ճամբադ լուսաւորէ. ուրեմն քիչիկ մ՝ալ կեցիր, երթալ պէտք չէիր ընաւ ։

ՀՌՈ. Թող բռնեն զիս, թող մահուան դատապարտեն իմ. թէ որ ասանկ կ՝ուզես՝ ասոր ալ գոհ կ՝ըլլամ ։ Ես կ՝ըսեմ՝ որ սա հեռուստ տեսնուած մթնշաղ գորշութիւնը առաւօտեան լոյսը չէ, այլ Կինտիոյ[1]) ճակտին դալկագոյն բեկբեկումն է, այն դեղգեղանքն ալ՝ արտուտնները չեն, որոնց ելևէջական խաղերը մեր գլխէն այնքան բարձր եղող աՀագնակամար երկնից տակ կը հնչեն. ո՛հ, աւելի

[1]) Լուսնոյ ցոլմունքն ։ . Թն.

նստելու կ'ախորժիմ, քան թէ երթալու ։ — Եկո՛ւր մահ, բարի եկար, հազար բարի ։ Ճիւլիէթթա այսպէս կ'ուզէ ։ — Ի՞նչպէս ես հոգիս, զրուց ընենք, դեռ առտու չեղաւ ։

ՃՈՒԼ. Եղա՜ւ, եղա՜ւ, գնա՛, մի՛ կենար, վազէ․ արտուտն է որ անանկ անշահ ձայներ կը հանէ, աններդաշնակ եղանակներ կը ճւճւայ և անձոռնի մակսատներ կը ճռնչէ ։ Ոմանք կ'ըսեն որ արտուտը քաղցրաձայն ճըլուըլտուքներ կը հանէ, բայց ասորը նոտո՞ր ճըլուըլտուք է որ մեզ մէկզմէկէ կը բաժնէ ։ Ոմանք ալ կ'ըսեն որ արտուտն ու զզուելի քարթօշը աչերնին կը փոխեն․ ես ալ կ'ըսեմ որ երանի թէ ձայներնին ալ փոխած ըլլային, ինչու որ այս ձայնը՝ մեր բազուկները բազուկներէ զատել կը տայ ու որսորդական ձայներով քեզ իմ ձեռքէս որսալ կը տայ ցերեկին ։ Ա՜հ, գնա ալ, հիմա գնա․ քանի կ'երթայ՝ լոյսը կը շատնայ ։

ՀՌՈ. Ինչպէս որ քանի կ'երթայ՝ կը լուսնայ, ասանկ ալ քանի կ'երթայ՝ մեր թշուառութիւնները կը շատնան ։

ՏՆՈՒՑԻՉ ի ներս ։

ՏՆՈՒՑ. Խամթունիկս ։

ՃՈՒԼ. Ի՞նչ է դայեկուհիս ։

ՏՆՈՒՑ. Տիկին մայրերնիդ սենեակնիդ պիտի գայ հիմա․ լուսցեր է, ինչ է այս դրածնիդ՝ խելքերնիդ գլուխնիդ ժողվեցէք, չորս կողմերնիդ նայեցէք ։ (Տնուցիչը կ'ելնէ ։)

ՃՈՒԼ. (բանալով) Ուրեմն, պատուհան, թող լոյսը ներս գայ, ու կեանքս դուրս ելնէ ։

ՀՌՈ. Մնաս բարեաւ, մնաս բարեաւ․ մէկ համբոյր՝ և անկէ ետք իջնեմ ։ (Հռոմէոս կը ցրկէ դուրս ու վար կ'իջնէ ։)

ՃՈՒԼ. Ի՞նչ․ իրաւ ելա՞ր հիմա ձեռքէս, սիրականս, տէրս, բարեկամս․ ես օրուան ամեն մէկ ժամուան մէջ քեզմէ լուր առնել պէտք եմ, ինչու որ մէկ րոպէի մէջ՝ շատ օրեր կան․ ա՜հ, այս հաշիւով՝ ես շատ պառաւցած պիտի ըլլամ, մինչև որ նորէն իմ Հռոմէոսս տեսնեմ ։

ՀՌՈ. Մնաս բարեաւ, սիրականս, բնաւին առիթ մը չպիտի կորսնցնեմ որ քեզ իմ բարևներս խրկեմ միշտ ։

ՃՈՒԼ. Ա՜հ, կը յուսա՞ս որ նորէն իրարու հանդիպինք ։

*ՀՌՈ. Հապա՛, չեմ երկբայիր որ. և այս բոլոր Թշուառութիւնները՝ մեր ապառնի ժամանակին մէջ անուշ խօսակցութեանց նիւթեր պիտի՛ ըլլան։*

*ՃՈՒԼ. Ո՛վ Աստուած իմ, խիստ չարագուշակ խորհուրդներ կ՚անցնին մտքէս. այդ տեղ վարը կայնած տեղդ, գիտես որ, գերեզմանի մի խորունկն իջած մարդու պէս կ՚երևիս աչքիս. կամ աչացս տեսութիւնը պղտորեր է, կամ դուն դեղներ ես։*

*ՀՌՈ. Հաւատա՛ ինձ, սիրականս, դուն ալ իմ աչքիս այնպէս կ՚երևիս. հապա ցամաքեցուցիչ ցաւը գիտես որ մեր արիւնը չխմե՞ր։ Մնաս բարեաւ, մնաս բարեաւ։* (Հեռանալով կ՚երթայ։)

*ՃՈՒԼ. Ո՛վ բաղդ, բա՛ղդ, բոլոր աշխարհք զքեզ անհաստատ կը կոչէ, թէ որ դուն անհաստատ ես, ի՞նչ բան ունիս այնպիսի մարդու մի հետ՝ որ իր անփոփոխ հաւատարմութեամբը նշանաւոր է։ Բայց, բանդ նայէ՛, բա՛ղդ, դուն դարձեալ անհաստատ եղի՛ր, որպէս զի, այն ժամանակ՝ յոյս ունենամ որ զինք երկար ատեն չես պահեր, ու նորէն ինձ ետ կը ղրկես։*

*ՏԻԿ. ԳԱՊ. (Ներսէն) Է՛հ, աղջիկս, արթնցած ես։*

*ՃՈՒԼ. Ո՞վ է այն կանչողը. սիրելի մայրս է. միթէ այսքան ուշ է մնացեր պառկելու, թէ այսքան կանուխ է արթնցեր։ Արդեօք ի՞նչ տարօրինակ պատճառ ունի հոս գալու։*

ՏԻԿԻՆ ԳԱՊՈՒԼԷՏ կը մտնէ։

*ՏԻԿ. ԳԱՊ. Ինչո՞ւ եղար, Ճիւլիէթա, հիմա ինչո՞ւ ես։*

*ՃՈՒԼ. Աղէկ չեմ, մայրիկ։*

*ՏԻԿ. ԳԱՊ. Տակաւին պիտի լա՞ս քեռորդւոյդ մահուան վրայ։ Միտքդ ի՞նչ է, կ՚ուզես որ արտասուքներդ երթան իւր գերեզմանէն ողողեն ու զինք դո՛ւրս հանեն. այդ ալ ընելու կարող ըլլայիր՝ դարձեալ չպիտի կրնայիր զինք ողջացնել. անոր համար, այլ ևս լացերուդ վերջ մի տուր։ Քիչ ցաւիլը պինտ մեծ սէր կը ցուցնէ, բայց պինտ շատ ցաւիլը՝ խելքի պակսութիւն կը յայտնէ։*

*ՃՈՒԼ. Թողէք որ այսանկ սրտակսկիծ կորստեան վրայ լամ։*

*ՏԻԿ. ԳԱՊ. Այդ կերպով՝ կորստեան վրայ պիտի ցաւիս և ոչ թէ ազգականիդ, որու համար կը լաս։*

ՃՈՒԼ. Այս կերպ կորստեան վրայ սիրտս պիտի շատ ցաւելուն՝ ազգականիս վրայ լալէն ի զատ ուրիշ բան մի չեմ կրնար ընտրել։

ՏԻԿ. ԳԱԲ. Կարծեմ, աղջիկս, որ դուն անոր մահուան վրայ այնքան շատ չես լար, որքան զայն մեռցնող անզգամին կեանքին վրայ կը լաս։

ՃՈՒԼ. Ո՞ր անզգամին, մայրիկ։

ՏԻԿ. ԳԱԲ. Այն անզգամ Հռոմէոսին։

ՃՈՒԼ. Անզգամէն մինչև իրեն գալու միջավայրը՝ հազարաւոր մղոններ կան։ Աստուած իւր մեղքը երեսին չզարնէ։ Ես իրեն կը ներեմ իմ բոլոր սրտովս, թէև, իրեն պէս ալ, ո՛չ մէկը իմ սըր-տիս այնքան շատ ցաւ պատճառած չէ։

ՏԻԿ. ԳԱԲ. Ադոր պատճառը՝ այդ չարագործ մարդասպանին ապրիլն է։

ՃՈՒԼ. Այո՛, մայրիկս, այս ձեռքերէս հեռի մնալով ապրիլն է։ Ա՛հ, երանի թէ, ո՛չ այլ ոք, բայց եթէ ես՝ իմ քեռորդւոյս մահուան վրէժը լուծանէի։

ՏԻԿ. ԳԱԲ. Մի՛ վախնար, մենք վրէժը կը լուծանեմք, այլ և մի՛ լար։ Ես այնպիսի մէկու մի մարդ պիտի հանեմ Մանդուա, — ուր այն թափառախոյս աքսորեալը կը բնակի, — և այնպիսի պա-տուական մաքրողական մի տայ իրեն, որ մէկ՝ երկու չըսած Դիպալ-տոսի քով ընկերութիւն ընելու երթայ. անկէ՝ ետք՝ կարծեմ, որ սիրտդ կը պաղշկի։

ՃՈՒԼ. Իրաւ կ՚ըսէք, իմ սիրտս բնաւ երբէք Հռոմէոսին համար չպաղշկիր, մինչև որ զայն — մեռած — չտեսնեմ. տեսէք սիրտս ո՛րքան ցաւած է արենակցի մի համար։ — Մա՛յրիկ, թէ որ դուք թոյն տանող մարդը գտնէք, ես անոր խառնուրդը շինելը վրաս կ՚առնում, որպէս զի Հռոմէոս՝ բաղադրութիւնը խըմածին պէս, յաւիտենական քուն մի ննջէ։ — Ո՛հ, սիրտս ո՛րքան կ՚ատէ զինք, քանի անոր անունը կը լսեմ, — ու կը նայիմ որ իւր քով չեմ կրնար երթալ, որպէս զի Դիպալտոս քեռորդւոյս սիրոյն համար իւր մարմնոյն վրայ ունեցած ոխս լուծանեմ, որ մեռցուց զայն։

ՏԻԿ. ԳԱԲ. Դուն միջոցները գտիր, ես ալ այնպիսի մարդ մի գտնելը կը նայիմ։ Բայց հիմա, աղջիկս, քեզ պիտի ուրախալի լուրեր պիտի տամ։

ՃՈՒԼ. Ուրախութիւնն ալ՝ — ինչպէս մեր հարկաւորութիւն ու-նեցած առենին եկեր հասեր է. ինչպէս լուրեր են, կ'աղաչեմ, սիրելի մայրիկս։

ՏԻԿ. ԳԱՊ. Գիտցած ըլլաս, աղջիկս, որ խիստ հոգածու հայր մ'ունիս. այնպիսի հայր մ'որ քու սրտիդ ցաւերը ցրուելու միտքով քեզի համար այնպիսի խօսք-կապ մ'ըրաւ, որ յանկարծապէս ուրա-խալի օրեր պիտի տեսնես, զորս ոչ դուն միտքէդ անցուցած ես, և ոչ ես կ'ըսպասէի։

ՃՈՒԼ. Աչքիս լոյս, մայրիկս, այդ ինչ օր է նայիմ։

ՏԻԿ. ԳԱՊ. Լուսով կենաս, աղջիկս։ Այս հինգշաբթի, առա-ւօտուն կանուխ, քեզ սիրահարեալ, երիտասարդ, վեհանձն ազ-նուական Փարիս կոմսը՝ զքեզ Ս. Պետրոսի եկեղեցին տանելով և այն տեղ երջանկօրէն հետդ պսակուելով՝ զքեզ ուրախաուրախ հարս մի պիտ' ընէ։

ՃՈՒԼ. Հիմա ես ալ երդում կ'ընեմ, նոյն ինքն Ս. Պետրոսի՝ և Ս. Պետրոսի եկեղեցւոյն վրայ, որ այն մարդը զիս ուրախաուրախ հարս մի չպիտի կրնայ ընել։ Այսքան աճապարանաց վրայ կը զար-մանամ. ինծի հետ պսակուիլ ուզողը, ինծի ամուսին ըլլալէն ա-ռաջ պէտք էր որ գար ու հետս սիրաբանէր։ Կ'աղաչեմ, մայրիկ, ըսէք իմ հօրս և տիրոջս, որ դեռ կարգուիլ չեմ ուզեր, և կար-գուելու ալ ըլլամ՝ երդում կ'ընեմ, որ առաւել Հռոմէոսի հետ կը կարգուիմ, զոր ինչպէս որ գիտէք, կ'ատեմ՝ առաւել քան զՊա-րիս։ — Այս ինչ համով լուրեր են եղեր։

ՏԻԿ. ԳԱՊ. Ահա հայրդ կը գայ. դուն իրեն խօսք հասկցուր։ Նայինք հիմա ինք ինչ պիտ' ըսէ քեզ։

ԳԱՊՈՒԼԷՏ և ՍՆՈՒՑԻՉԸ կը մտնեն։

ԳԱՊ. Երբոր արեւը մայրը կը մտնէ, շաղատարափ ցօղ կը տե-ղայ. բայց եղբօրորդւոյս արեւը մտնելուն՝ յորդահոս տեղատարափ կ'անձրևէ։ — Ի՞նչ է այդ, աղջիկ, հոսանք է՞ ինչ՞ է. այդ ինչ պիտ' ըլլայ, դեռ կը լա՞ս. — այդ յորդանձրևը յաւիտեանս տևէ՞ պիտի։ Այդ պզտիկ անձդ՝ նաւիկ մի, ծով մի և հողմերն ես ձե-ւացուցեր. ինչու որ քու աչերդ՝ զորս ծով կրնամ ըսել, դեռ ար-

տասուօք կը տեղատին ու կը մակընթանան. Նաւիկդ՝ քու մարմինդ է, որ այս աղալից Ովկիանոսին մէջ կ'առագաստէ. քու հառաչանքներդ ալ՝ հողմերն են, որոնք, — արտասուացդ հետ կատղած, և արտասուքդ ալ հողմոց հետ բորբոքած՝ — թէ որ յանկարծահաս հանդարտութիւն մը վրայ չհասնի, քու ալեկոծուած մարմինդ ընկղմեն պիտի։ Ի՞նչ ըրիք, կնիկ, մեր որոշմունքն իմացուցի՞ք իրեն։

ՏԻԿ. ԳԱՊ. Իմացուցի, տէ՛ր իմ. բայց ինք երբէք չուզեր, ձեզմէ շնորհակալ է. քա՛րը գլխուն, թող երթայ խենդուհին իւր գերեզմանին հետ կարգուի։

ԳԱՊ. Շո՛ւշ, դուք ձայն մի՛ հաներ, կնիկ, ես ալ այդ մտքովն եմ։ Ի՞նչ. երկի՞ք չուզե՞ր, նայէ՛ սաոր, չէ՞ որ մեզմէ շնորհակալ ըլլայ, գո՛ռոզանայ ու ինքզինք երջանիկ սեպէ՝ որ իրեն պէս հոտածին՝ տմաձկ մէկ ազնուական փեսացու մը գտանք, կը նայի՞ք սաոր ըրածին։

ՃՈՒԼ. Ես ձեր ըրածին համար չեմ գոռոզանար, այլ՝ որդեսիրութեանդ համար շնորհակալ կ'ըլլամ. ինծի ատելի եղած անձին վրայ ի՞նչպէս կրնամ գոռոզ ըլլալ, այլ շնորհակալ կ'ըլլամ այն ատելի անձին համար, որ իմ սիրողս է։

ԳԱՊ. Այս ի՞նչ խօսք է, ի՞նչ բան է. այդ ի՞նչ ափեղցփեղ տրամաբանութիւն է. գոռոզ չեմ, շնորհակալ կ'ըլլամ, — դարձեալ՝ շնորհակալ չեմ ըլլար — ետքէն գոռոզ կ'ըլլամ։ — Սա պզտիկ կնիկը նայեցէք. ինծի ո՛չ երախտագիտութեամբ շնորհակալ եղիր. և ո՛չ հպարտութեամբ գոռոզացիր, այլ քու անուշիկ միտքդ ըրէ՛, որ Հինգշաբթի օրը Ս. Պետրոսի եկեղեցին երթաս Պարիսի հետ, թէ ոչ՝ գեկզ ականջէդ կը քաշքշեմ կը տանիմ. Գնա՛, առջեւէս, դեղնած չոր կաշի. դո՛ւրս ելիր, շան ղաւակ, դեղնած շան ոսկոր։

ՏԻԿ. ԳԱՊ. Ի՞նչ կ'ընէք. հէ՛, խելքերնիդ թռուցի՞ք։

ՃՈՒԼ. Սիրելի՛ հայր, ծնկան վրայ կ'աղաչեմ ձեզ, համբերութեամբ մտիկ ըրէք, միայն մէկ խօսք մ'ըսեմ ձեզ։

ԳԱՊ. Գնա՛ կախէ ինքզինքդ, ջրտիկ, անհնազանդ գարշելուհի — նայէ՛ ինչ պիտի ըսեմ. — կամ Հինգշաբթի օրը եկեղեցի պիտի երթաս, կամ մէկ մ'ալ երեսս չպիտի տեսնես. ձայնդ կտրէ՛, պա-

տասխան մի տար, պատասխան պէտք չէ. մատներս կը կեռան։ — Կընիկ, մենք լիտոր փառք կը տանք Աստուծոյ, որ մեզ մինակ այս զաւակը տալուն՝ իւր օրհնութիւնը վրանիս է ըսելով, հիմա նայեցէք որ այս մէկ հատն ալ շատ է եղեր՝ անիծից արմատ մի ըլլալուն. — դուրս թող կորուի երթայ, աչքս չտեսնէ սա շան զաւակը։

ՍՈՆՈՒՑ. Աստուծոյ օրհնենքը վրայէն պակաս չըլլայ։ — Աղէկ բան չէ այդ ըրածնիդ, տէ՛ր իմ, այդ ինչպէս երեսը վար առիք։

ԳՈՐ. Ինչո՞ւ համար աղէկ չէ եղեր, խելացի խաթուն. հրամանքըդ լեզուդ կարճ ըրէ, թագուհի իմաստութեան, հրամանքդ գնա քեզի պէս պառաւներուն հետ փնթփնթէ, գնա ասկէ։

ՍՈՆՈՒՑ. Մեղայ, ես դէշ բան ըսի որ։

ԳՈՐ. Փառք Աստուծոյ, հրամանոցդ անուշիկ որպիսութիւնը։

ՍՈՆՈՒՑ. Մեղայ, մարդ բերանը չբանայ, քա։

ԳՈՐ. Պապանձէ, մրումրու պառաւ. գնա պառաւ խնամիներուդ հետ թափէ այդ լեզուները, ադոնք հիմա մեր քովը ստակ մի չեն արժեր։

ՑԻԿ. ԳՈՐ. Դուք ալ գլուխնիդ պինտ մի տաքցնէք։

ԳՈՐ. Աստուծոյ տուած հացը մուրամ, այս խենդենալու բան է նէ. գիշեր չըսի, ցորեկ չըսի, ուշ չըսի, կանուխ չըսի, սա ուր որ գտնուեցայ նէ՝ թէ տունը, թէ դուրսը, թէ առանձնութեանս մէջ, թէ ընկերութեան մէջ, թէ արթուն եղած ատենս և թէ քունի մէջ՝ խելքս միտքս զինք կարդալու եռալէ էր. հիմա որ հազիւ հազ կարող եղանք թագաւորական ցեղէ, հայրենական հարուստ, տարիքը չառած, պինտ աղուաբարոյ, պակասութիւն մի չունեցող, (ալ ինչ ըսեմ) սա մարդուն սիրտը պինտ ախորժած այսպիսի ազնուական մարդ մի ձեռք անցունելու, — նայիս որ մեր խենդուհի մեծ-կնիկ խամաճիկը, սրունքները վեր չելած քցփրիկը՝ բաղդը ոտքին գայ ու ինք երեսը դէմքը ծռմռէ, ու — ես չեմ կարդար, ես չեմ կրնար ընել, ես դեռ շատ պզտիկ եմ, կ'աղաչեմ, ներեցէք ինծի. — ըսէ. ասանկ կարգուիլ չուզես նէ., գիտես որ ես ալ քեզ պիտի ներեմ, մ. գնա գլխուդ ճարը տես, ես ալ այսուհետև չեմ ուզեր որ իմ տունս կենաս. խելքդ գլուխդ ժողվէ, աղէկ նայէ

*ինչ կ'ըսեմ, կատակ չէ ըսածս։ Հինգշաբթին հասնելու վրայ է, ձեռքդ սրտիդ վրան դիր ու միտքդ դարձուր որ զաւակս ըլլաս ու քեզ բարեկամիս հետ կարգեմ. եթէ ոչ՝ կորիր գնա՛, ինչ որ կ'ուզես եղիր. մուրա՛, անօթութենէ մեռիր, փողոցներուն մէջ սատկէ՛. ինչու որ, հոգիս վկայ կ'ըսեմ, որ քեզ աղջիկս չեմ ճանաչեր ու հայրենի ժառանգութենէդ կը զրկեմ զքեզ։ Հաւատա՛ կ'ըսեմ, խելքդ գլուխդ ժողվէ՛, ես երդումս ետ չեմ առներ։*

(կ'ելնէ։)

**ՃՈՒԼ.** *Արդեօք երկնից մէջ գթութիւն մնացած չէ՞ որ իմ ցաւոցս անդունդները տեսնէ։ Ա՜հ, սիրելի մայրիկս, զիս դրունէն դուրս մի՛ վռնտէք. գո՛նէ մէկ ամիս, կամ մէկ շաբաթ ըլլայ ուշացուցէք այս ամուսնութիւնը, թէ որ չէք ուզեր որ իմ հարսանեկան անկողինս՝ այն խաւարչուտ դամբարանին մէջ ըլլայ, ուր որ Դիպալտոս պառկած է։*

**ՏԻԿ. ԳԱՊ.** *Այլ ևս ինձ բան մ'ըսեր, ինչու որ ալ բերանս չպիտի բանամ, սիրտդ ինչ որ կ'ուզէ այն ըրէ՛, այլ ևս մէկ բանի չեմ խառնուիր ես։* (կ'ելնէ։)

**ՃՈՒԼ.** *Ա՜հ, Աստուած։ — Դայեկուհիս, ասոր առջեն ինտո՞ր առնենք. ամուսինս երկրի վրայ է, և վստահութիւնս՝ երկինք. այս վստահութիւնը ինտո՞ր նորէն երկիր դառնայ պիտի, բայց միայն երբ ամուսինս երկիրը թող տայ և զայն երկնքէն ինձ խրկէ։ — Մխիթարէ՛ զիս, յորդորէ՛ զիս։ — Ափսո՜ս, ափսո՜ս, երկինքն ալ ասանկ որոգայթ մի կրնա՞յ եղեր լարել ինծի պէս փափուկ մարմին ունեցող անձի մի դէմ։ — Դուն ինչ կ'ըսես. գո՞նէ ուրախութեան խօսք մ'ալ չունի՞ս, մխիթարութեան խօսք մ'ալ չե՞լներ բերնէդ, դայեկուհի՛ս։*

**ՍՆՈՒՑ.** *Նայեցէք, ես ձեզ բան մ'ըսե՛մ։ Հռոմէոս աքսորուած է ու աշխարհ աշխրհէ անցնի ալ ետ դառնալու չհամարձակիր որ ձեզի համար կաղապրաւի ելնէ, եթէ ոչ, ետ դառնալու ալ ըլլայ՝ գաղտագողի պիտի գայ։ Անոր համար, հիմա որ գործերն այս աստիճանի հասան, ինծի այնպէս կ'երևի որ կոմսին հետ կարգուիլն ամենէ աղէկն է։ Հո՛, այն ինչ սիրուն ազնուական կտրիճ մ'է. Հռոմէոս՝ անոր քով քուրջի կտոր մ'ըսել չէ. արծիւ մ'իսկ Պա-*

րիսի պէս կայտառ, աշխոյժ և կենդանի աչեր չունի, տիկին։ Հա-գիս վկայ, կարծեմ որ այս երկրորդ կարգըլուքը զձեզ երջանիկ կ՚ընէ, ինչու որ ձեր առաջինը կը գերազանցէ. չգերազանցեր նէ ալ՝ սա կայ որ ձեր առաջինը մեռած է, կամ աւելի աղէկ կ՚ըլ-լար որ մեռած ըլլար, քանի որ աշխարհիս երեսը ողջ ըլլալով ձեզ օգուտ մի չունի։

ՃՈՒԼ. Աղոնք սրտէ՞դ կը զրուցես։

ՍՆՈՒՑ. Ո՛չ միայն սրտէս, այլ և հոգիէս, թէ որ անանկ չէ՝ երկուքն ալ գետնին տակն անցնին։

ՃՈՒԼ. Ամէ՜ն։

ՍՆՈՒՑ. Ինչո՞ւ համար։

ՃՈՒԼ. Հասկցանք, պատուականաբար մխիթարեցիր զիս։ Նե՛րս գնա, ու ըսէ՛ մօրս. որ հօրս սիրտը ցաւցնելուս համար՝ Հայր Լաւ-րենտիոսի խուցը կ՚երթամ որ խոստովանանք ըլլամ ու արձակում առնեմ։

ՍՆՈՒՑ. Վա՛հ գլխուս, կ՚երթամ. այս խոհեմութենդ հաւնեցայ։

(կ՚ելնէ։)

ՃՈՒԼ. Անիծած պառաւ. ո՛հ, չարաներ սատանուհի։ Աւելի մեծ մեղք է — որ ես այս կերպով երդմնազանց գտնուիմ, քան թէ իմ էրիկիս յարգը կարեմ այս մի և նոյն լեզուաւ, որ այնքան հա-զարաւոր անգամներ անհամեմատաբար գովեց զայն։ — Կորիր գնա, չարախրատուհի. այսուհետև սիրտս և դուն՝ երկպառակուած էք ի-րարմէ։ Խոստովանահօրս քով երթամ, նայիմ ինչ դարման կը գտնէ. թէ որ ամեն բան պարապ է, գոնէ մեռնելու կարողութիւն ունիմ։

(կ՚ելնէ։)

# ԱՐԱՐՈՒԱԾ Դ.

## ՏԵՍԱՐԱՆ Ա.

*Հայր* **ԼԱՒՐԵՆՏԻՈՍ***ի խուցը։*

Հայր ԼԱՒՐԵՆՑԻՈՍ և ՊԱՐԻՍ կը մտնեն։

Հ. ԼԱՒ. *Հինգշաբթի, տէր իմ, հապա միջոցը պինտ կարճ է։*

ՊԱՐ. *Գաբուլէտ աներս այնպէս կ'ուզէ. ես ալ յապաղմունք սիրող մէկը չեմ, որ իր արտորալը ետ ձգեմ։*

Հ. ԼԱՒ. *Դուք կ'ըսէք որ դեռ օրիորդին միտքն իմացած չէք. այս գործն ինձ պինտ կնձռոտ կ'երևի, ասանկ բանի մէջ մանելը պինտ չեմ ախորժիր։*

ՊԱՐ. *Դիպալտոսի մահուան վրայ անմխիթարաբար լալուն համար, պինտ քիչ սիրախօսութիւն կրցայ ընել. ըստ որում Աֆրոդիտէ՝ արտասուալից տան մի մէջ չժպտիր։ Եւ հիմա, հայր պատուական, իւր հայրը վտանգաւոր բան կը կարծէ որ իւր աղջիկն անսփոփելի մորմոքներու մէջ թողու. ահա ասոր համար հասունամիտ խոհեմութեամբ մի մեր շուտափոյթ ամուսնութիւնն ընել կ'ուզէ, որպէս զի անոր արտասուաց հեղեղները կասեցնէ, որք քանի որ օրիորդը անզոյգ մնայ այնքան աւելի չյորդեցնելու պատրուակաւ, ընկերութիւն մ'ունենայ նէ՝ իւր վրայէն անոնց ցրուելը դիւրին ըլլալու է։ Հիմա իմացաք կարծեմ այս արտորանաց պատճառը։*

Հ. ԼԱՒ. (*մէկ կողմ*) Երանի՜ թէ ուշացնելու պատճառը չգիտնայի։ —Ահա, տէր իմ, տես օրիորդը, դէպ՝ իմ խուցս կը գայ։

ՃՈՒԼԻԵԹԹԱ կը մտնէ։

ՊԱՐ. *Այս ինչ բարեբաղդութիւն է, որ մէկ տեղ հանդիպեցանք, տիկինս և կինս։*

ՃՈՒԼ. *Այդ կրնայ ըլլալ, տէր իմ, երբ կին ըլլալու կարող ըլլամ։*

ՊԱՐ. Կրնայ ըլլալ, հայր, պէտք է որ ըլլայ, սիրուհիս, Հինգշաբթի օրը։

ՃՈՒԼ. Ի՛նչ պիտ՚ ըլլայ նէ՝ թո՛ղ ըլլայ։

Հ. ԼՈՐ. Այդ՝ հաստատ խօսք մ՚է։

ՊԱՐ. Տէր հօր խոստովանանք ըլլալո՞ւ եկաք։

ՃՈՒԼ. Ատոր պատասխան տամ՝ ձեզի խոստովանանք եղած պիտի ըլլամ։

ՊԱՐ. Զիս սիրելնիդ ալ մի՛ պահէք իրմէ։

ՃՈՒԼ. Այն ժամանակ ձեզ պիտի խոստովանիմ թէ կը սիրեմ զինք։

ՊԱՐ. Նոյնպէս ալ, ստոյգ եմ, պիտի խոստովանիք որ կը սիրէք զիս։

ՃՈՒԼ. Թէ որ այդպէս ընեմ՝ խոստովանանքս՝ առաւել ձեր ետևէն՝ քան թէ ձեր առջև խօսելու համար յարգ ունենալու էր։

ՊԱՐ. Խե՛ղճ սիրականս, այդ ինչպէս փոխուեր է դէմքդ արտասուքներէ։

ՃՈՒԼ. Արտասուքները՝ պզտիկ յաղթութիւն մ՚առին անկէ, ըստ որում, իրենց վնասատուութենէ առաջ ալ՝ բաւական անշահ բան մ՚էր։

ՊԱՐ. Այդ ըսածներովդ՝ արտասուքներէն աւելի կը վնասես զայն։

ՃՈՒԼ. Ճշմարտութիւնն ըսելը՝ զրպարտութիւն ընել չէ, տէ՛ր իմ. և ինչ որ ըսի՝ իմ դէմքիս զրուցեցի։

ՊԱՐ. Քո դէմքդ իմինս է, և դուն զրպարտեցիր զայն։

ՃՈՒԼ. Կրնայ այդպէս ըլլալ, ինչու որ այլ ևս իմս չէ։ — Հիմա ատեն ունի՞ք, տէր հա՛յր, թէ կ՚ուզէք որ իրիկուան ժամասացութեան ատեն գամ։

Հ. ԼՈՐ. Հիմա ժամանակ ունիմ, տրտմուհի աղջիկս։ — Կը խնդրեմ, տէ՛ր իմ, քիչիկ մի մինակ մնալու հարկաւորութիւն ունիմք։

ՊԱՐ. Աստուած չընէ, որ սրբազան պաշտօնի մի շփոթութիւն տամ։ — Ճիւլիէ՛դդա, Հինգշաբթի առտուանց կանուխ, պիտի գամ արթնցնեմ զքեզ. մինչև այն ատեն, ծառայ եմ, ու պահէ՛ սա ջերմեռանդ համբոյրս։ (Պարիս կ՚ելնէ։)

ՃԻՒԼ. Ո՛Հ, գոցէ՛ դուռը, և գոցելէդ ետք՝ եկուր հետս լա՛ց։ Այլ ևս ո՛չ յոյս մնաց, ո՛չ դարման մնաց, և ո՛չ օգնութիւն։

Հ. ԼԱՒ. Ա՛Հ, Ճիւլիէդդա, ես արդէն գիտեմ քո ցաւդ, որ սիրտս այնքան կ՚անձրկեցնէ և որուն խելք չեմ կրնար զգացնել. Ես լսեցի որ Հինգշաբթի օրն անպատճառ այս կոմսին հետ կարգուելու ես։

ՃԻՒԼ. Տէ՛ր հայր, այդ լսածդ ինձ մ՚ըսեր, կ՚աղաչեմ, առանց ինձ իմացնելու նաև որ ինտո՞ր կրնամ առջևն առնուլ. Թէ որ դուն քո խելքովդ օգնութիւն մի չես կրնար ընել, գոնէ իմ մտքիս որոշմունքն արդարացի սեպէ, որ հիմա իսկոյն այս դաշոյնով ես ինքզինքիս օգնութիւն տալու կարող ըլլամ։ Աստուած՝ իմ սիրտս և Հռոմէոսը միկանեղ զուգեց ու դուն՝ մեր ձեռքերը. և այս ձեռքը՝ որ քո միջնորդութեամբ Հռոմէոսին ստորագրութիւն տուաւ, ուրիշ դաշնագրութեան ձեռագիր մի տալէ և կամ իմ անկեղծ սիրտըս՝ նենգաւոր անհաւատարմութեամբ մ՚ուրիշի մի հետ կապուելէ առաջ՝ այս դանակը, երկուքն ալ կրնայ բնաջինջ ընել. Ուստորոյ, քո երկարժամանակեայ փորձառութեամբդ՝ ինձ խելք մի սորվեցո՛ւր. եթէ ո՛չ՝ նայէ՛ անգամ մի, սա արիւնարբու դանակը տեսա՞ր, երբ քո հասակիդ և յաջողակութեան զօրութիւնը պատուաւորաբար ազէկ վախճան մի տալու կարող չըլլան՝ իմ և իմ ցաւոցս մէջ եղած վէճին դատահատը կրնայ ըլլալ։ Մի՛ տրնտընար. ինչու որ մինչև խօսքերուդ դարման մի գտնելու կարող չըլլալնին միայն պիտի երկարաձգեմ ես ալ իմ մահս։

Հ. ԼԱՒ. Կեցի՛ր, աղջիկ. միտքս յոյս մ՚ինկաւ, որու գործադրութիւնն այնքան յուսահատութիւն կը պահանջէ՝ որքան որ արգիլել ուզած ամուսնութիւննիս յուսահատաբեր է։ Թէ որ Պարիս կոմսին հետ կարգուելէն աւելի աղէկ՝ ինքզինքդ մեռցնելու կամքի զօրութիւնն ունիս, ուրեմն հաւանական է նաև, որ մահուան պէս մօտ բանի մի ձեռնարկելու կը յանդգնիս որ այս խայտառակութիւնը խափանուի. այս այնպիսի միջոց մ՚է, որ մի և նոյն մահուան կը հանդիպիս՝ որ մահուանէ զերծիս։ Թէ որ այս բանն ընելու կը համարձակիս, քեզ դարման կրնամ տալ։

ՃԻՒԼ. Ո՛Հ, աւելի աղէկ է որ հրամայես ինձ որ երթամ նա բարձր

աշտարակին վերնաբերդերէն վար նետուիմ․ կամ՝ աւազակայաճախ ճամբայներէն անցնիմ․ կամ, հրամայես որ օձաբնակ այրերու մէջ խօթուիմ․ մռնչող արջերու հետ շղթայուիմ․ կամ, ամեն գիշեր գերեզմանատան մի մէջ փակուիմ, ուր՝ մեռած մարդոց շառաչափլոյզ ոսկերոտիքը, քարշահոտ կմախները, և դեղնած դեղնկած այտանհետ սկաւառակները վրայօքս դիզուած ըլլան․ կամ հրամայես որ նոր փորուած գերեզման մի մտնեմ ու ինքզինքս նոր թաղուած մեռելի մի պատանքներուն մէջ պլլեմ, քան թէ Պարիսի հետ կարգուիմ։ Այս ըսածներս՝ որոնք զրուցելը լսելով վրաս սարսափ կը գայ, առանց վախնալու և առանց տարակուսանաց կ՚ընէի, որպէս զի իմ սիրելի տարփաւորիս քով անարատ կին մի մնամ։

Հ. ԼՈՐ. Ալ կ՚օգտէ, հիմա իս մտիկ ըրէ․ տո՛ւն գնա, զուարթ կեցի՛ր ու Պարիսի հետ կարգուելու հաւանութիւն տո՛ւր։ Վաղը Չորեքշաբթի է․ վաղը գիշեր՝ նայէ որ մինակդ քնանաս ու մի՛ թողուր որ դայեկուհիդ սենեակդ պառկի․ այս սրուակը կ՚առնես, ու երբոր անկողինդ կը մտնես՝ մէջին եղած շոգեթոր հեղուկը կը խմես․ խմածիդ պէս՝ բոլոր ջիղերուդ մէջ պաղութիւն մի տարածելով վրադ մահահանգոյն նիրհման թալկութիւն մի պիտի գայ, որ քո բոլոր կենսական զօրութիւններդ պիտի թմրեցնէ, ինչու որ զարկիդ բնական նետուածքը հատնելով բաղխումը պիտի դադրի․ ո՛չ մարմինդ տաքութիւն պիտ՚ ունենայ, և ո՛չ շունչդ վրադ պիտի մնայ որ ողջ ըլլալդ հաստատուի․ շրթանցդ և այտիցդ վարդափայլ գոյնը պիտի խամրի ու մոխիրի գոյն պիտի դառնայ․ աչացդ պատուհանները պիտի գոցուին, որպէս թէ մահուան՝ կենաց օրը գոցած ժամանակն ըլլար․ բոլոր անդամներդ իրենց զարթնական շարժուածքները կորսնցնելով, այնպէս պիտի չորնան, փայտ կտրին ու սառնահանգոյն պաղին՝ որ մեռելի պէս պիտ՚ երեւաս։ Այս կեղծ մահուան փոխառիկ անզգայութեան մէջ լման քառասուներկու ժամ պիտի մնաս ու անկէ՝ տք խորունկ քունէ մ՚արթնցածի պէս աչերդ պիտի բանաս։ Բայց երբոր փեսացուն գայ առտուանց որ զքեզ անկողինէդ վերցնէ, պիտի նայի որ մեռած ես․ անկէ՝ տք (ինչպէս որ մեր քաղքին սովորութիւնն է) քո ամենէ փառաւոր լաթերով զքեզ դագաղին մէջ պիտի դնեն երեսդ բաց՝ և քեզ միենոյն դամ-

բանատան մէջ պիտի թաղեն՝ ուր որ բոլոր Գաբուլեանց ցեղը թաղուած են։ Այս միջոցներուն, Հռոմէոս, քո խելաբերութենէդ առաջ՝ իմ գրած նամակներէս մեր նենգարկութիւնը իմանալով, շուտ հոս պիտի գայ։ Գալէն ետք, ինք ու ես քո սթափիլդ կը հըսկենք և միևնոյն գիշերը քեզ կ'առնէ Հռոմէոս ու հետը Մանդուա կը տանի։ Ահա այս բանը կրնայ զքեզ այս մօտահաս նախատինքէն ազատ պահել, թէ որ յողդողդաւէր երկչոտութիւն մի, կամ կանացաբարոյ վեհերոտութիւն մի՝ այս ձեռնարկութեան մէջ քո արիութիւնդ չեն վհատեցներ։

ՃՈՒԼ. Տուր, կ'աղաչեմ, ինձ վախի զրուց մ'ըներ. տուր Աստուծոյ սիրոյն համար։

Հ. ԼԱՒ. Ա՛ռ, գնա շուտ. մտքիդ վրայ հաստատ ու որոշ կեցիր. ես ալ հիմա վաղվաղակի տարփաւորիդ նամակ գրելով կրօնաւոր հայր մի պիտի ղրկեմ իրեն։

ՃՈՒԼ. Սէ՛ր, ո՛յժ տուր ինձ, և այդ ոյժը՝ նպաստելով կ'ազատէ զիս։ Մնաս բարեաւ, տէ՛ր Հայր։ (կ'ելնեն։)

## ՏԵՍԱՐԱՆ Բ.

**ԳԱԲՈՒԼԷՏ**ի տան մէջ սենեակ մի։

ԳԱԲՈՒԼԷՏ, ՏԻԿԻՆ ԳԱԲՈՒԼԷՏ, ՍՆՈՒՑԻՉ և ՍՊԱՍԱՒՈՐՔ կը մտնեն։

ԳԱԲ. Դուն սա տոմսակին մէջ եղած մարդիկները հրաւիրնես պիտի միայն։ (Ծառայն կ'ելնէ) Ի՛նձ նայէ, դուն ալ գնա քսան վարպետ խոհակեր գտիր։

Բ. ԾՌՑ. Տէ՛ր իմ, անչափ խոհակեր չեմ բերեր որ, ես կ'երթամ մատերնին լիզող մաքրասէրները կ'ընտրեմ։

ԳԱԲ. Այդ կերպով ինտո՞ր կ'իմանաս որ մաքրասէր են։

Բ. ԾՌՑ. Ինտո՛ր պիտ՝ իմանամ. հը՛հ. այն խոհակերները որ մատերնին չեն լիզեր, վարպետ չեն. անոր համար, այն որ մատները չկրնար լիզել՝ հետս չպիտի գայ։

ԳԱԲ. Գնա՛, քեզ տեսնեմ։ — (Բ. Ծառայն կ'ելնէ) Այս անգամ

*ալ թող այս սանկ յանպատրաստից երթայ: — Ի՞նչ, աղջիկս Հայր Լաւրենտիոսի՞ն է գնացեր.*

ՍՆՈՒՑ. *Հրամմերէք, հապա՛:*

ԳԱԲ. *Նայինք, գուցէ իր բարի խրատները անոր վրայ աղէկ ազդեցութիւն մ՚ընեն: Ինքնահաւան չար դիմադարձուհի՜ն:*

ՃԻՒԼԻԷԴԴԱ *կը մտնէ:*

ՍՆՈՒՑ. *Ահա՛ կը գայ. խոստովանանքին վրայ դէմքը ծիծաղիլ սկսեր է:*

ԳԱԲ. *Ինտո՞ր եղար, պինդգլուխ, ո՞ւր գացիր սլընկուեցար:*

ՃԻՒԼ. *Ո՛ւր որ, ձեզի և ձեր հրամանաց դէմ անհնազանդ դիմադարձութեամբ գործած մեղքիս վրայ զղջալ կը սորվի մարդ. սրբակրօն Հայր Լաւրենտիոսը պատուիրեց ինծ որ առջևնիդ ծունկի վրայ գամ ու ձեզմէ թողութիւն խնդրեմ: — Ներեցէք ինծ, կը թախանձեմ, ալ ես այսուհետև խօսքերնէդ դուրս չեմ ելներ:*

ԳԱԲ. *Կոմսը կանչե՛լ տուր, գնա՛. ըսէ իրեն, որ վաղ առտու կ՚ուզեմ որ միութեան պսակը կատարուի:*

ՃԻՒԼ. *Ես այն երիտասարդ պարոնը՝ Հայր Լաւրենտիոսի խուցը տեսայ և ձեռքէս եկածին չափ սէրս յայտնեցի՝ առանց համեստութեան կոպարներէն անդին անցնելու:*

ԳԱԲ. *Շատ ադրիս, ո՛հ, ուրախացայ, տեսա՞ր հիմա. — ոտք ել նայիմ, այս սանկ կ՚ըլլայ, հապա՛: — Կոմսին հետ տեսնուիմ անգամ մը. գնա՛ ըսէ քեզ, չլսեցի՞ր, գնա՛ հոս կանչել տուր զայն: — Ճշմարիտ Աստուած, սա վերապատուելի սրբակեաց կրօնաւորը, ինչ որ ըսես կ՚արժէ, հիմա բոլոր քաղաքացիք իրմէ շնորհակալ ըլլալ պէտք են:*

ՃԻՒԼ. *Դայեկուհի, հետս սենեակս կը գա՞ս, որ վաղը դրուելիք զարդարանքներուս ո՛րը որ վայելուչ ու հարկաւոր կը կարծէք նէ՝ ընտրենք մէկ տեղ:*

ՏԻԿ. ԳԱԲ. *Կեցի՛ր նայինք, այդ ինչ արտորալ է, դեռ մինչև Հինգշաբթի բաւական ժամանակ կայ:*

ԳԱԲ. *Գնա՛, դայեկուհի, հետը գնա. վաղը եկեղեցի պիտ՚ երթանք.* (Ճիւլիէդդա և Դայեկուհին կ՚ելլեն:)

ՑԻԿ. ԳԱԲ. Ուտելիքները պատրաստելու ժամանակ չմնաց, գրեթէ գիշերն ալ վրայ կը հասնի։

ԳԱԲ. Զայն մի՛ հաներ դուն, կնի՛կ, ես հիմա մէջ կը մտնեմ և ամեն բան կարգին կը դնեմ, ճշմարիտ։ Դուն Ճիւլիէդդային քով գնա՛, զարդարանքները մարդարանքները չխտկեցո՛ւր. ես այս գիշեր անկողին չեմ մտներ որ. — ինքնիր գլխուս թո՛ղ տուր զիս, այս անգամ տանտիկնութիւնը ես ընեմ թո՛ղ։ — Ո՞վ կայ, հօ՛, ի՛ս նայեցէք. — ամենքն ալ դուրս են ելեր։ Հոգ չէ՛, գո՛նէ ես ինքս երթամ Պարիս կոմսը գտնեմ ու ըսեմ որ վաղուան պատրաստ գտնուի. չես գիտեր սիրտս ինտո՞ր հանդարտեցաւ, քանի որ սա չարաճճի աղջիկը կարգին մտաւ։ (կ'ելլեն։)

# ՏԵՍԱՐԱՆ Գ.

ՃՈՒԼԻԷԴԴԱՅԻ սենեակը։

ՃՈՒԼԻԷԴԴԱ և ԴԱՅԵԿՈՒՀԻ կը մտնեն։

ՃՈՒԼ. Ա՛յո՛, սանկ ալ անոնք աւելի աղուոր ըզգալներ են։ — Բայց կ'աղաչեմ, սիրելի դայեկուհիս, այս գիշեր զիս մինակ թո՛ղ. ինչու որ պինա շատ աղօթք ընելու պէտք ունիմ, որպէս զի Աստուած գթայ իմ վիճակիս վրայ, որ ինչպէս որ աղէկ գիտես, շատ ծախուռ գնաց ու մեղքերս շատցաւ։

ՑԻԿԻՆ ԳԱԲՈՒԼԷՑ կը մտնէ։

ՑԻԿ. ԳԱԲ. Ինտո՞ր եղաք, պինտ զբաղած էք, կ'ուզէ՞ք որ օգնեմ ձեզ։

ՃՈՒԼ. Ա՛չ, մայրիկ. վաղուան հարկաւոր եղած բոլոր հագուստ-կապուստներն ընտրեցինք ու մէկ դի դրինք. թէ որ կը հաճիք, հիմա թող տուէք որ մինակս մնամ, և այս գիշեր թող դայեկուհին ձեզի հետ կենայ. ինչու որ, շատ աղէկ գիտեմ, որ ասանկ մէկ յանկարծական պատրաստութեան մէջ ամենուդ ալ ձեռքը պարապ չէ։

ՏԻԿ. ԿԱՊ. Գիշեր բարի։ Անկողինդ մտի՛ր ու պառկէ՛. ինչու որ քունի կարօտութիւն ունիս։

(Տիկին Կապուլէթ և Դայեկուհին կ'ելնեն։)

ՃԻՒԼ. Լոյս բարի։ — Աստուած գիտէ երբ նորէն իրարու պիտի հանդիպինք։ Թուլացուցիչ ցուրտ երկիւղ մ'ունիմ, որ բոլոր ջիղերս կը սրսփացնէ և գրեթէ կը սառեցնէ կենացս ջերմութիւնը։ Կանչեմ սանք նորէն, որ գան մխիթարեն զիս։ — Դայեկուհի՛։ — Չէ՛, ի՞նչ պիտի գայ ընէ։ Իմ ձախողակէպ տեսարանս կը պահանջէ որ ես ինքնիր գլխուս գործադրեմ զայն։ — Եկո՛ւր նայինք, սրուակ։ — Հապա այս բաղադրադեղն իր ներգործութիւնը չընէ նէ՞։ Ետքը բռնի կարգուիմ պիտի կոմսին հետ։ — Չէ՛, չըլլար. (դաշոյնը կը դնէ) ահա՛, ա՛յս արգելք կրնայ ըլլալ։ — (դաշոյնը վար դնելով) Դուն կեցի՛ր հոդ։ — Հապա թէ որ այս ալ՝ մահադեղ մ'է նէ՞, զոր գուցէ խոստովանահայրս պատրուակաւ ձեռքս տուաւ որ մեռցնէ զիս, որպէս զի չըլլայ թէ այս ամուսնութենէս առաջ զիս Ռոմէոյին հետ կարգած ըլլալուն համար վրան անպատուութիւն մի գայ։ Վախնամ որ անանկ է. բայց չէ՛, կարծեմ որ այնպէս չէ, վասն զի ինք մինչև հիմա անարատ վարքով սրբակրօն մէկը սեպուած է, այսպիսի դէշ խորհուրդը մտքէս անցունել պէտք չեմ։ — Հապա, թէ որ գերեզմանիս մէջ դրուելէս ետք՝ Ռոմէոյի գալու և զիս ազատելու ժամանակէն առաջ արթննամ նէ՞. ահա՛, ա՛յս է սոսկալի կէտը։ Այն ժամանակ ես ալ չե՞մ հեղձուիր գերեզմանին մէջ, որու գիրնկալ բերնէն երբէք առողջարար օդ չշընչեր ներս, ու Ռոմէոս գալէն առաջ շնչարգել չե՞մ ըլլար։ Եթէ ոչ, ապրիմ նէ ալ, պինտ հաւանական բան չէ՞ որ մահուան ու գիշերուան ահռելի մտատանջութեանց և նոյն տեղւոյն պատճառած սոսկմանց մէջ՝ — այնպիսի գերեզմանատան մը մէջ կ'ըսեմ, ուր որ, այսքան հարիւր տարիէ ի վեր, իմ բոլոր թաղուած նախահարցս ոսկերոտիքը դիզուած և անոնց վաղեմի ընդունարանն եղած է, ուր որ արիւնըռուշտ Դիպալտոսը, որ նոր հողը մտաւ, ու պատանքին մէջ թարախներով փտտելու վրայ է. ուր որ, ինչպէս որ կ'ըսեն, գիշերները մեռելները ոտք կ'ելնեն. — ափսո՜ս, ափսո՜ս, հաւանական չէ՞, որ ես, այնպէս կանուխ արթննալով — այն ժա-

Հաճոյ զարշահոտութեանց մէջ, այն արմատախիլ եղած մանդրագորաց նման հանուած աղաղակներուն մէջ[1]), որոց ձայնը միայն առնեն մահկանացու կենդանիք՝ կը խենդենան. ո՛հ, թէ որ արթըննամ նէ՝ խելքս գլխէս չերթար, այս բոլոր քստմնելի արհաւիրքը չորս դիս շրջապատած տեսնելով, ու խենդի պէս իմ նախահարցս յօդուածներուն հետ չըպիտի խաղամ, ու վիրապատառ Դիպալտոսն իւր պատանքին մէջէն դուրս չըպիտի քաշեմ հանեմ, և այս կատաղութեանս մէջ, իմ մեծ-պապերէս մէկուն ոսկորովը՝ որպէս թէ բիր մ'եղած ըլլար, յուսահատեալ ուղեղս դուրս չըպիտի՞ թափեմ. Ո՛հ. նայէ՛ անգամ մի, ինձ կ'երևի թէ քեռորդւոյս ուրուականը կը տեսնեմ, որ Հռոմէոսը կը փնտռէ, որ իւր զէնքին սայրովը անոր մարմինը շամփրած է։ Կեցի՛ր, Դիպալտոս, կեցի՛ր։ — Հռոմէո՛ս, կը գամ. ահա՛ քեզի համար կը խմեմ։

(Կը խմէ՝ և ինքզինքը անկողնոյն վրայ կը նետէ։)

## ՏԵՍԱՐԱՆ Դ.

ԳԱՊՈՒԼԷՏի սրահը։

ՏԻԿԻՆ ԳԱՊՈՒԼԷՏ և ՍՆՈՒՑԻՉ կը մտնեն։

ՏԻԿ. ԳԱՊ. Բռնէ՛, ա՛ռ սա բանալիքները, դայեկուհի՛, ու դնա՛ քիչիկ մ'ալ համեմ բեր։

ՍՆՈՒՑ. Խմորատնէն՝ քաքարներուն համար սերկևիլ ու արմաւ կ'ուզեն։

ԳԱՊՈՒԼԷՏ կը մտնէ։

ԳԱՊ. Չե՛ղ նայիմ, ձեռքերնիդ ոտքերնիդ շնչացուցէ՛ք, շո՛ւտ ըրէք, շո՛ւտ շուտ, հա՛, աքաղաղը երկրորդ անգամ պոռաց, պատկելու զանգակը զարկաւ, ժամն երեքի գնաց։ — Հոգի՛դ սիրես,

[1]) Մանրագոր ըսուած տունկին առասպելախառն պատմութիւնը՝ կենդանական կենաց վիճակ մի կը վերընծայէ այս բոյսին, որ երբ արմատէն հանուի, կ'ըսկսի ողբասուքի ձայն հանել, ու ով որ հանէ՝ գլուխը գէշ բան մի կը հանդիպի, կ'ըսեն։ Բն. [illegible]։ Թ.

ԱՆՃԷլիքա, գնա անգամ մ'ալ եփած կերակուրներն աչքէ անցուր, ծախքը մի՛ խնայեր։

ՄՆՈՒՑ. Գնացէ՛ք, գնացէ՛ք, ուրերնուս տակ ժուռ մի՛ գաք, մե՛ծ կնիկ, բաներնի՛դ գնացէք, գնացէ՛ք պառկեցէ՛ք. Ճշմարիտ որ այս գիշեր անքուն մնալնուդ համար վաղը հիւանդ պիտ՝ ըլլաք։

ԳԱՐ. Իրա՛ւ կ'ըսես, Աստուած սիրե՛ս։ Ես քանի քանի անգամ մինչև առաւօտներ արթուն մնացի փուճ մուճ պատճառներու համար, բնաւ ին հիւնդցա՞յ։

ՑԻԿ. ԳԱՐ. Դուք ա՛լ, ձեր ժամանակին ինչ բացուած ծաղիկ մ'էիք որ, բայց հիմա ինչ երես ունիք անանկ բան մ'ընելու, աչերս չորս եմ բացեր։ (Ցէկ. Գուբօալէօ և Սնօոցէլ կ'ելնեն։)

ԳԱՐ. Այս ինչ նախանձ կնիկ է, Աստուած իմ, այս ինչ նախանձ կնիկ է։ — Այդ ինչ է ծօ, ինչ է ձեռքինդ։

Սպասաւորներ յետեւերնին լամբարներով, ջահերով կրակարաններով ու խողովակներով ներս կը մտնեն։

Ա. ՍՊԱ. Խոհանոցին համար հարկաւոր բաներ, տէ՛ր իմ, բայց ինչ ըլլալը չեմ գիտեր։

ԳԱՐ. Շո՛ւտ ըրէ, շո՛ւտ ըրէ։ (Ա. Սպասաւոր կ'ելնէ։) (Երկէն կը դառնայ) Ծո՛ գարշելի, աւելի չոր փայտեր չգտնայի՞ր. կանչէ՛ Պետրոսը՝ որ ցուցնէ քեզ չոր փայտերուն տեղը։

Բ. ՍՊԱ. Տէ՛ր իմ, ես իմ խելքովս կ'երթամ կը գտնեմ չոր փայտերը, — Պետրոսէն հարկաւորութիւն չունիմ։ (կ'ելնէ։)

ԳԱՐ. Շա՛տ ապրիս, տեսա՛ր ինտոր կը հաւնիմ աստնկ բաները։ Շան զաւակը խնդումերես լակոտ մ'է, ա՛. կեցի՛ր ես քեզ փայտապետ մ'ընեմ։ — Ճշմարիտ որ լուսցեր է. հի՛մա, ո՛ւր է նէ՝ կոմսն ալ կը գայ երաժշտութեամբ։ (Ներսէն երաժշտութեան ձայն։) Ինչպէս որ կ'ըսէր թէ երաժշտութեամբ պիտի գայ, ահա՛ նուագութեան ձայնը կ'առնեմ մօտէն. — Դայեկուհի՛, կնի՛կ — ինձ նայեցէք, հօ՛ — չե՞ս լսեր, դա՛յեկուհի, վազէ՛։

ԴԱՅԵԿՈՒՀԻ կը գայ։

Գնա՛, Ճիւլիէթդան արթնցո՛ւր, վազէ՛, շնորհքով մը հագցո՛ւր կազ-ցո՛ւր, ես ալ երթամ Պարիսի հետ խօսակցութիւն ընեմ. — վա-

զէ՛, շո՛ւտ ըրէ, շո՛ւտ ըրէ. փեսացուն արդէն եկաւ հասաւ.՝ վազէ՛ կ՚ըսեմ։ (կ՚ելնեն։)

# ՏԵՍԱՐԱՆ Ե.

**ՃՈՒԼԷԷՏԴԱՅԻ** սենեակը։ **ՃՈՒԼԷԷՏԴԱ**՝ անկողնոյն վրայ։

**ԴԱՅԵԿՈՒՀԻ** կը մտնէ։

**ՍՆՈՒՑ.** Խա՛թուն — ի՛նձ նայէ, տի՛կին — ճիւլեէ՛դդա — հօ՛, խորունկներն է գնացեր, ճշմարիտ. — ի՛նձ նայեցէք, դա՛ռնուկ. — ելէ՛ք, օրիո՛րդ. — վո՛ւյխ, այս ի՛նչ քուն սիրող էք, քա՛. — ելէ՛ք, սիրականս, կը լսէ՞ք. — խա՛թուն. ելի՛ք կ՚ըսեմ, սիրուհի՛. — չէ՞ք լսեր որ, հա՛րսնցու. է՛հ, ինչո՞ւ ձայն չէք տար. — Գնացէք ուզածնո՛ւդ չափ պառկեցէ՛ք, հոգս չէ, վո՛ւշ, կ՚ուզէք նէ շաբաթ մը քնացէք, ինչու որ վաղը գիշեր, ճշմարիտ կ՚ըսեմ, որ Պարիս կոմսը բնաւ չպիտի քնանայ, ու ձեզ ալ շատ քիչ պիտի քնացունէ։ — Տէ՛ր ողորմած Աստուած, մեղա՛յ, Յիսուս Քրիստոս. այս ի՞նչ խորունկ քուն է, բայց պէտք է որ արթնցնեմ զինք։ — Խա՛թուն, խա՛թունիկ, խա՛թունիկս, ելէ՛ք, ելէ՛ք, հիմա կոմսը պիտի գայ ձեզ անկողինը պիտի գտնէ, այն ատեն յանկարծ խրտչելով ոտք ելնէ՛ք պիտի, ճշմարիտ կ՚ըսեմ։ — Ի՞նչ, սո՛ւտ կը գիտնաք։ Այս ի՛նչ է, հագուա՛ծ. ի՛նչ, ելեր հագուեր կապուեր ու նորէ՞ն պառկեր էք. բայց անպատճառ զձեզ վերցնեմ պիտի. Օ՛րիորդ, օ՛րիորդ, օ՛րիորդ. ափսո՛ս, ափսո՛ս. — հասի՛ք, հասի՛ք. խաթունիկս մեռե՛ր է։ — Ո՛հ, այս ի՛նչ սև օրի հասա՛յ, երանի՛ թէ ծնած չըլլայի . . . քիչ մը կենօղի հասցուցէք, հօ՛. — Տէ՛ր իմ, Տի՛կին։

**ՏԻԿԻՆ ԿԱՊՈՒԼԷՏ** կը մտնէ։

**ՏԻԿ. ԿԱՊ.** Այս ի՛նչ ձայն ձուն է հոս։

**ՍՆՈՒՑ.** Ո՛վ ողբալի օր։

**ՏԻԿ. ԿԱՊ.** Ի՞նչ կայ, ի՛նչ եղաւ որ։

**ՍՆՈՒՑ.** Նայեցէ՛ք, նայեցէ՛ք. ո՛վ ցաւալի օր։

**ՏԻԿ. ԿԱՊ.** Վա՛հ զլխուս, վա՛հ գլխուս. զաւա՛կս, իմ միա՛կ

կեանքս, կենդանացի՛ր, բա՛ց աչերդ, չէ նէ՝ ես ալ քեզի պէս՝ պի-տի մեռնիմ. Հասի՛ք, Հասի՛ք. — Հասի՛ք պոռամ:

ԳԱԲՈՒԼԷՏ և Տիկին:

ԳԱԲ. Է՛, ալ ամօթ է, բերէք Ճիւլիէթն, փեսացուն եկաւ:

ՍՆՈՒՑ. Այն մեռա՛ւ, գնա՛ց ալ, մեռա՛ւ. ափսոսալի՛ օր:

ՏԻԿ. ԳԱԲ. Ափսոսալի՛ օր. մեռա՛ւ, մեռա՛ւ, մեռա՛ւ:

ԳԱԲ. Հի՛. տեսնեմ անգամ մի. — վա՛հ, վա՛հ. ափսո՛ս. պա-ղե՛ր է. արիւնը դադրե՛ր է. անդամները փայտ են կտրեր. կեանքն՝ այս շրթունքներէն շատո՛նց զատուեր է. մահն իր վրայ այնպէս իջեր է, ինչպէս որ հովտի մէջ գտնուած մէկ հատիկ ալինտ սիրուն ծաղկին վրայ՝ ժամանակէ դուրս ձիւն իջնալով կը թառի: Անիծեա՛լ ժամ. վատաբաղդ ծեր:

ՍՆՈՒՑ. Ո՜վ ողբալի օր:

ՏԻԿ. ԳԱԲ. Ո՛հ, թշուա՛ռ ժամ:

ԳԱԲ. Մահը, որ զինք մեր մէջէն յափշտակելով զիս սուգի մէջ կը թողու, լեզուս կը կապէ և չթողուր բերնիս որ խօսի:

Հայր ԼԱՒՐԷՆՑԻՈՍ և ՊԱՐԻՍ՝ երաժիշտներու հետ և միւսներ:

Հ. ԼԱՒ. Հրամայեցէք, նոր հարսը պատրաստ է որ ժամ տա-նինք:

ԳԱԲ. Պատրաստ է երթալու՝ և երբէք ետ չդառնալու: (Պարի-սին) — Զաւակս, հարսանեաց առջի գիշերը, մահը՝ հարսնցուիդ անկողինն է մտեր: — Նայեցէք, ահա՛ պառկած կեցեր է, ծաղի-կի պէս փթթած ժամանակը՝ մահը զինք ծաղկապղծեց: Փեսացուս մա՛հն է եղեր, աղջկանս հե՛տ է պսակուեր: Ես՝ պիտի մեռնիմ, ու ամեն բան իրեն թողում. այս կեանքը թող տալէն ետք՝ ամեն բան մահուանն է:

ՊԱՐ. Ես մինչև հիմա այս օրս տեսնելու համար կ'ըսպասեմ ե-ղեր, ու այս օրն ալ ինքզինք այսպէս պիտի ցուցնէ եղեր ինձ:

ՏԻԿ. ԳԱԲ. Անիծեա՛լ, ապերջանի՛կ, ողբալի՛, անարգելի՛ օր. ամենաթշուառ ժամ, զորպիսին, ժամանակը՝ իր պանդխտութեան յարատև ընթացքին մէջ երբէք տեսած չէր: Ես մինակ մէկ զա-

ռակ, մէկ խեղճ զաւակ, մէկ հատիկ խեղճ ու սիրելի զաւակ մ'ունէի, բոլոր աշխարհի երես մինակ այս մէկ հատիկն ունէի որ հետն ուրախանամ ու մխիթարուիմ, նայեցէք որ աչքիս առջեւէն անգութ մահը պիտի գայ առնէ եղեր.

ՍՆՈՒՑ. Ո՛վ թշուառութիւն. ո՛վ թշուառական, աղեողո՛րմ, տարաբա՛խտ օր, ամենակսկծալի՛ օր. ամենաթշուա՛ռ օր. զոր երբէք կեանքիս մէջ, բնաւ երբէք տեսած չունէի. ո՛վ չար օր. ո՛վ դարշելի օր, ո՛վ աղետաբեր օր. այս ինչ ատելի օր է եղեր. ատսոր պէս ալ սեւ օր տեսնուած է եղեր արդեօք. ո՛վ դժբաղդ օր, ո՛վ չարաբախտ օր:

ՊԱՐ. Ո՛հ, նենգաւո՛ր, ապահարզանի՛չ, չարաբե՛ր, [illegible], սպանի՛չ եւ ամենաարհամարհելի՛ մահ, նենգեցիր զիս. անգո՛ւթ մահ, անգթութեամբդ գրեթէ կործանեցիր զիս: — Ա՛հ, սէ՛ր իմ, կեա՛նք իմ: — Այլ եւս իմ կենդանի սիրականս չես, այլ՝ մեռեալ սիրուհիս:

ԳԱՊ. Սիրելի զաւա՛կս. հալածուած, վշտացուած, անարգուած, մարտիրոսացած մեռար. — ո՛հ վշտացուցիչ եւ դժարգահատ ժամանակ, ինչո՞ւ համար եկար հիմա որ մեր անդորրութիւնը վրդովես: Ա՛հ, զաւա՛կս, զաւա՛կս. — զաւակս չէ՝ այլ հոգի՛ս: — Իրա՞ւ մեռար, մեռա՞ր հիմա: Վա՛հ. վա՛հ, զաւակս մեռե՛ր է. զաւկիս հետ բոլոր ուրախութիւններս ալ թաղուած են.

Հ. ԼՈՐ. Է՛, կ'օգտէ ալ, ամօթ է. խռովութեանց դարմանը՝ այս ձեր հանած խռովայղմուկներով չգտնուիր: Երկինք եւ դուք՝ այս սիրուն աղջկան բաժնեկից էիք. հիմա Երկինք բոլորն ալ առաւ, եւ աղջկան համար աւելի աղէկ եղաւ. դուք ձեր մասը՝ մահուան ձեռքէն ազատ չէիք կրնար պահել, բայց Երկինք՝ իր մասը ի կեանս յաւիտենից կը պահէ: Ձեր ամենամեծ բաղձանքը՝ կրթան յառաջդիմութիւն ընելը տեսնելնիդ էր, զոր ձեր երկինքն սեպած էիք. հիմա որ ինք ամպերէն շատ վեր մինչեւ նոյն իսկ երկնից բարձրութիւնն յառաջդիմութիւն ըրաւ, անոր համա՞ր կը լաք: Ափսո՛ս. այս տեսակ սիրով, ձեր զաւակն այնչափ գէշ սիրած կ'ըլլաք, որ զինք աղէկ վիճակի մէջ տեսնելնուդ համար խելքերնիդ գլխերնէդ թռչելու պէս կը ցուցնէք: Այն կինը, որ ամուսնութենէ ետք եր-

կար կ՚ապրի, իրեն համար աղէկ ամուսնութիւն ունեցած չըլլար. բայց այն կինը ամենէ աղէկ ամուսնութիւն ունեցած կ՚ըլլայ, որ կարգուելէն ետք երիտասարդուհի կը մեռնի։ Սրբեցէք արտասուքները, բերէք ձեր խնկունիները որ այս շնորհալի մարմինը զարդարենք, և ըստ սովորութեան, իւր ամենէ փառաւոր լաթերովը եկեղեցի տանինք. ինչու որ, թէև գորովասէր բնութիւննիս կը պահանջէ որ ամենքս ալ ողբանք, այսու ամենայնիւ, բնութեան արտասուքները՝ դատողութեան հպատակակամութիւնն է։

ԳԱՊ. Ո՛հ, հարսանեկան խնճոյից համար եղած բոլոր պատրաստութիւննիս, սգալի յուղարկաւորութեան փոխուեցան. մեր նուագարանաց տեղ՝ զանգակներուն ընդհատեալ ղօղանջիւնները պիտի լսենք. մեր հարսանեաց ուրախութիւններուն տեղ՝ տրտմերես թաղմանահանդէսը պիտ՚ ունենանք. մեր հարսներգական օրհներգութեանց տեղ՝ դամբանական հոգեպաշտօն պիտի կատարեն. և մեր հարսնապսակ ծաղիկները՝ մեռելաթաղ մարմնոյ զարդարանք պիտ՚ ըլլան և ամեն բան ներհակադարձ պիտ՚ ըլլայ։

Հ. ԼԱՒ. Տէ՛ր իմ, ներս գնացէք. — Տի՛կին, հրամանքդ ալ հետը գնացէք. — Տէ՛ր Պարիս, հրամանքդ ալ գնացէք. Թո՛ղ ամեն ոք՝ այս սիրուն մեռելին ետևէն մինչև գերեզման երթալու պատրաստուի։ Ո՛վ գիտէ, Աստուծոյ դէմ ի՛նչ մեծ մեղք գործած էք եղեր, որ իր բարկութիւնը երեսնուդ կը զարնէ. ա՛լ աւելի մի՛ բարկացնէք զինք՝ իր անհասանելի կամքին դէմ կենալով։

(Գապուլէթ, Տիկ. Գապուլէթ, Պարիս և Հայր Լաւրենտիոս կ՚ելլեն։)

Ա. ԵՐԱԺ. Ճշմարիտ կ՚ըսեմ, նուագարաննիս տեղը դնենք ու ելնենք երթանք աւելի աղէկ կ՚ընենք։

ՍՆՈՒՑ. Հայպա, ինչ պիտ՚ ընէք, բարի մարդիկ, տեղերնին դրէք, ելէք գնացէք. ինչու որ գիտէք աղէկ, որ պինտ կսկծալի վիճակի մէջ ենք։ (Սնուցիչ կ՚ելլէ։)

Ա. ԵՐԱԺ. Ճշմարիտ վկայ, ասանկ բաները, այսօր մէկ՝ վաղը երկու, հետևեալ օրը կը մոռցուին։

ՊԵՏՐՈՍ կը մտնէ.

ՊԵՏ. Երաժիշտնե՛ր, ինձ նայեցէք, երաժիշտնե՛ր, Սփոփանք

սրտին, հնչեցուցէք՝ Սփոփանք սրտին. կ'աղաչեմ, կեանքս կը սիրէք նէ՝ Սփոփանք սրտին հնչեցուցէք։

Ա. ԵՐԱԺ. Ինչո՞ւ համար Սփոփանք սրտին։

ՊԵՏ. Ինչու որ, ա՛հ, երաժիշտներ, գիտէք թէ սիրտս ինքնիրեն կը հնչէ՝ — Սիրտ իմ լի է կըսկըծանօք. կ'աղաչեմ, սանկ քաղցրաւաչ եղանակ մի նուագեցէք որ մխիթարուիմ։

Բ. ԵՐԱԺ. Սրտերնիս կտրուած է, և հիմա երաժշտութիւն աւաչելու ժամանակը չէ։

ՊԵՏ. Ուրեմն բան մի չը՞պիտի հնչեցնէք։

Բ. ԵՐԱԺ. Ո՛չ։

ՊԵՏ. Ուրեմն ես ալ կը տամ ձեզ ձայնաւորը։

Ա. ԵՐԱԺ. Ի՞նչը պիտի տաք։

ՊԵՏ. Այսինքն, ստակ չէ տալուքս, ճշմարիտ. այլ թղթախաղութեան գասը, տէգին թապաւորը տամ ձեզ։

Ա. ԵՐԱԺ. Ուրեմն ես ալ արբանեակը տամ։

ՊԵՏ. Այն ատեն ես ալ արբանեակին կացինը գանկերնուդ վրայ կ'իջեցնեմ։ Այնպէս կորձերն ալ պինտ չեմ երկնցներ, այլ ըէ կէն կամ ֆա էն կը հնչեցնեմ։ Խաղկցա՞ք հիմա։[1]

Ա. ԵՐԱԺ. Հը՛. մեզ կը հրէացնէք, մեզ կը ֆայացնէք, և մեզ խաղ կ'ընէք, ա՛։

Բ. ԵՐԱԺ. Կ'աղաչեմ, դաշոյննիդ պատենեցէ՛ք և իմաստութիւննիդ մերկացուցէ՛ք։

ՊԵՏ. Ուրեմն իմաստութեամբս կռուիմ հետերնիդ. այսինքն երկաթանման խելքովս զձեզ փափկացնեմ ու երկաթ դաշոյնս նորէն պատենեմ. — մարդու պէս պատասխան մի տուէք ինձ նայիմ.

Երբ թախիծ վիշտեր սիրտ վիրաւորեն,
Եւ սրտաճըմլիկ ցաւեր մեզ ճընշեն.
Ցայնժամ աժուշտին[2]) ձայնն արծաթեղէն,

[1]) Փոխանակ՝ հասկցա՞ք։ Այս պարբերութեանց մէջ դարձեալ վարպետօրէն բառախաղութիւններ ըրած է հեղինակը։ Ծ. Թ.

[2]) Իբր՝ ձայնիւ, երաժիշտ բառէ յառաջ եկած։ Պուցէ երաժիշտն ալ՝ երգած ժիւրի աղճատեալն ըլլայ։ Թ.

ինչու համար արծաթեղէն ձայն. աժուշտին ձայնը ինչու արծաթեղէն պիտ' ըլլայ եղեր: Դուք ինչ կ'ըսէք, Օհան Թամրաթելեան:

Ա. ԵՐԱԺ. Հը՛հ, չէ՛ք գիտեր, տէր իմ. ինչու որ, արծաթն անոյշ ձայն ունի:

ԳԵՑ. Շա՛տ ապրիք: Դուք ինչ կ'ըսէք, Յովսէփ Նորթալարեան:

Բ. ԵՐԱԺ. Ես ըսե՛մ ինչու համար արծաթեղէն ձայն ունի, ըստ որում երաժիշտ՝ աժուշտին ձայնը արծաթի համար կը հանեն:

ԳԵՑ. Դուք ալ շատ ապրիք: — Դուք ինչ կ'ըսէք, Յակոբ Երգապետեան:

Գ. ԵՐԱԺ. Ճշմարիտ, ես ալ չեմ գիտեր ինչ ըսելիքս:

ԳԵՑ. Օ՛, մեծապէս շնորհակալ եմ, իրաւցնէ երգապետ ես եղեր. ահա՛ ես քո տեղ պատասխան տամ. գիտէ՞ք ինչու համար աժուշտին ձայնն արծաթեղէն է, ըստ որում ձեզի պէս վարպետները պինտ քիչ անգամ ձեռքերնին ոսկի կ'անցունեն աժուշտը հնչեցընելուն համար:

Յանձամ աժուշտին ձայնն արծաթեղէն,
Վաղաձայն օգնով կ'ըսփոփէ անդրէն:

(Երգեցէ՛ք նորէն:)

Ա. ԵՐԱԺ. Այս ինչ ժանտախտադէմ հանած վարածին մէկն է եղեր:

Բ. ԵՐԱԺ. Թո՛ղ կորսուի երթայ, է՛շը. քալեցէք ներս երթանք, պտուղներուն քով նստինք ու ճաշուն սպասենք: (Կ'երթան:)



# ԱՐԱՐՈՒԱԾ Ե.

## ՏԵՍԱՐԱՆ Ա.

Մանդուա. — Փողոց մի։

ՀՌՈՄԷՈՍ կը մտնէ։

ՀՌՈ. Թէ որ քունին շողոքորթիչ երևոյթներուն հաւատ ընծայել պէտք եմ՝ երազներս կը գուշակեն, որ պիտի զուարճալի լուրեր պիտ՝ առնեմ շատ չանցած։ Սրտիս տէրը և իշխանը[1]), ծանրութիւն մի չտուած նստած է իւր աթոռին մէջ. բոլոր այս օրս, խելքըս միտքս տարօրինաբար պինտ հոգեզուարճ խորհրդածութեամբք զբաղած է։ Երազիս մէջ տեսայ, որ սիրականս եկեր ու զիս մեռած գտեր է. (տարօրինակ երազ, որ կը թողու մեռած մարդի մ՚որ մտածէ) և իմ շրթունքս համբուրելովը՝ այնպիսի կենսաբաշխ շունչեր ազդեր է, որ վերականգներ ու կայսր մ՚եղեր եմ։ Ա՜հ. արդեօք նոյն ինքն սիրականս որ ձեռք անցունեմ՝ որքան երջանիկ եղած կ՚ըլլամ, երբ իւր սիրոյն ստուերներէն միայն այսքան հաճեցուցիչ վայելմունքներ կ՚ըզգամ։

ՊԱԼԹԱԶԱՐ կը մտնէ։

Հա՜հ, Վերոնայէն լուր եկաւ։ — Ի՞նչ կայ, ի՞նչ չկայ, Պալթազար. Հայր Լաւրենտիոսէն նամակ չբերի՞ր. Տիկինս ի՞նչպէս է. հայրս աղէ՞կ է. Ճիւլիէթդաս ինտո՞ր է. նորէն կը հարցնեմ. վասն զի, բան մի գէշ չկրնար ըլլալ, թէ որ ինք աղէկ ըլլայ։

ՊԱԼ. Քանզի որ ինք աղէկ վիճակի մէջ է, բան մի գէշ չկրնար ըլլալ. իւր մարմինը Գաբուլեանց դամբանոյը ամփոփուած է, և իւր անմահ մասը հրեշտակաց հետ կը բնակի. զինք իւր նախահարց ստորերկրեայ ընդունարանին մէջ զետեղելնին աչօքս տեսնե-

[1]) Որ է, Սէրը։ Թն.

լես եաք՝ իսկոյն սուրհանդակի պէս վազեցի՝ որ գամ ձեզ իմաց տամ։ Ներեցէք ինձ, տէ՛ր իմ, ձեզ այս չարագուժ լուրը տալուս, բայց այն ալ՝ յիշեցէք, որ իմ պաշտօնս կատարելու հրամանը տուած էիք ինձ։

ՀՌՈ. Իրա՛ւ ճիշդ այդպէ՞ս է. ո՛հ. Երկինք, կռի՛ւ ունիմ քեզ հետ։ — Դուն իմ բնակարանս գիտես, գնա՛ շուտ թուղթ ու մելան պատրաստէ, սուրհանդակի ձիեր վարձէ. այս գիշեր ճամբայ պիտ՝ ելնեմ։

ՊԱԼ. Կ՚աղաչեմ, տէ՛ր իմ, ներեցէք որ զձեզ այս հանգամանաց մէջ չթողում. ըստ որում դէմքերնուդ գոյնը՝ բոլորովին փոխուէ և այլանդակ բան մ՚եղաք, կը վախնամ որ գլուխնիդ փորձանք մի չգայ։

ՀՌՈ. Փո՛հ. կը սխալիս. թո՛ղ զիս, գնա՛ քեզ պատուիրածս ըրէ. Հայր Լաւրենտիոս ինծի համար նամակ չտուա՞ւ քեզ։

ՊԱԼ. Չտուաւ, մեծապատիւ տէր։

ՀՌՈ. Հոգ չէ, վազէ գնա՛ ու այս ձիերը վարձէ. ես ալ հիմա իսկոյն ետևէդ կը հասնիմ։ (Պալթազար կ՚ելլէ։)

Է՛յ, Ջուլիէտդա, այս գիշեր ես քեզի հետ պիտի պառկիմ։ Նայինք ինչ միջոց պիտի բանեցնեմ. — Ո՛հ, չփոթութիւն, ինչպէս երագահաս ես յուսահատեալ մարդու մի մտածութեանց մէջ մոյծ ընելու։ Միտքս ինկաւ հիմա, ճշդապէ՛ս դեղավաճառ մի կայ, — որ սա տեղերը կը բնակի և վերջերս ալ աչքիս զարկաւ անգամ մի, որ հինումին լաթերով, ճակատը խորշխորշած, նստեր բոյսեր կը փնտռտէր. զինա նիհար կ՚երևար, ողորմելի թշուառութիւն մի զինք մինչև ոսկորներուն դիմացուցեր էր, իւր կարօտահաս խանութին մէջ՝ կրիայ մի կախուած էր, յարդալից ալլիգատոր[1]) մի և ուրիշ տձև ձկներու մորթեր կային. իւր դարաններուն վրայ մէկ շատ աղտոտ պարապ տուփեր, կաւեղէն կանաչ անօթներ, փամփուշտներ, մանանեխի հունտեր, հակերու կապերէն աւելցած առասաններու կտորուանք, ու քանի մի հաս չորցած վարդանկանակներ կային, որոց ամենն ալ հոս հոն ցրուած էին որ խանութին

[1]) Արևելեան Հնդկաստանի մէջ գտնուած տեսակ մի կոկորդիլոս։ Ծ. Թ.

մէջ ցոյցատես մ'ըլլայ։ Այն ժամանակ՝ այս խեղճ անձին վիճակը ոչինչ բան է ըսի ես ինքնիրենս. թէ որ մէկը հիմա թոյնի կարօտութիւն ունենայ՝ որու վաճառումը Մանդուայի մէջ անմիջական մահուամբ արգիլեալ է, այս տեղս բնակող խղճալի թշուառականը ծախելու կարող է։ Ո՛հ, այս խորհուրդը՝ կարօտութիւնն ունենալէս առաջ մտքէս անցաւ. և այս միենոյն պարէնակարօտ մարդը պէտք է որ ծախէ ինձ։ Ըստ յիշողութեանս՝ կարծեմ որ աս ըլլալու պէտք է իւր տունը։ Այսօր տօն ըլլալուն՝ նզովլից արմատին խանութն ալ գոց է։ — Ի՛նձ նայէ, հօ՛, դեղավաճառ։

ԴԵՂԱՎԱՃԱՌ եւ Հռոմ.

ԴԵՂ. Ո՞վ է զիս այսպէս բարձրաձայն կանչողը։

ՀՌՈ. Հո՛ս եկուր, մա՛րդ։ — Կը նայիմ որ դուն աղքատ մարդուն մէկն ես. բռնէ, ա՛ռ քեզի քառասուն ոսկի ու տրամ մի թոյն տուր ինձ. բայց այնպէս զօրաւոր և ազդու տեսակէն ըլլայ, որ խմուածին պէս բոլոր ջիղերուն մէջ թափանցէ, աշխարհատեաց խմողը՝ իսկոյն ինկնի մեռնի. և իւր մարմինը՝ մահատու թնդանօթին ծակէն բռնկած վառօդին երագութեամբ դուրս ելնելով փճանալուն նման, անմիջապէս շունչը ցնդի։

ԴԵՂ. Ես այդպիսի մահառիթ դեղօրայներ ունիմ. սակայն Մանդուայի օրէնքը՝ այդ բանը ծախողին մահ կ'ըսպառնայ։

ՀՌՈ. Դուն որ այդքան թշուառութեան և այդքան խղճալի տնանկութեան մէջ ես, մահուանէ՞ կը վախնաս. սովատանջութիւնը այտերուդ վրայ գծագրուած է, կարօտութիւնը և չքաւորութիւնը աչքերէդ կ'երևին, կռնկէդ կախուած պատառուած լաթերդ քու աղքատութիւնդ կը յայտնեն. ո՛չ աշխարհք բարեկամդ է և ո՛չ աշխարհի օրէնքը. աշխարհ՝ քեզ բնաւ օրէնք չշնորհեր որ ինքզինքդ հարստացնես. ուրեմն, ինքզինքդ մ'աղքատցներ, այլ խորտակէ այդ օրէնքը և ա՛ռ աս։

ԴԵՂ. Տէ՛ր իմ, գիտցած ըլլաք որ աղքատութիւնս է և ոչ թէ կամքս որ հաւանութիւն կը տայ։

ՀՌՈ. Ես քու աղքատութիւնդ կը հատուցանեմ և ոչ թէ կամքդ։

ԴԵՂ. Սա մահադեղն ինչ տեսակ ջրի մէջ որ կ'ուզէք հալեցու-

ցէք ու անկէ՝ որ խմեցէք և քսան մարդոց ալ ոյժ ունենայք՝ ձեզ շիփ-շիտակ անդիի աշխարհ կը վաղառաքէ ։

ՀՌՄ. Ա՛ռ ոսկիներդ, որք մարդուս հոգին՝ ասոր զօրութենէ չար ևս կը թունաւորեն այս աղտաւոր աշխարհիս մէջ աւելի շատ սպանութիւններ ընելով քան զայս չնչին բաղադրութիւնները զորս վաճառելու կ՚արգիլեն զքեզ. Թոյնը՝ ես ծախեցի քեզ, դուն ինձ բան չծախեցիր ։ Երթաս բարով, գնա ուտելիք գնէ ու փորդ կըշտացուր ։ — Եկո՛ւր նայինք կենսադեղ և ոչ թէ մահադեղ. հետս՝ Ճիւլիէդդայի գերեզմանն եկուր որ հոն տեղ ինձ ծառայութիւն մ՚ընես ։ (կ՚ելնեն ։)

## ՏԵՍԱՐԱՆ Բ.

Հայր ԼԱՒՐԵՆՏԻՈՍԻ խուցը ։

Հայր ՅՈՎՀԱՆՆԷՍ կը մտնէ ։

Հ. ՅՈՎՀ. Տէ՛ր Ֆրանչիսկեան, Հա՛յր Լաւրենտիոս, ո՛ւր ես, տէ՛ր եղբայր ։

Հայր ԼԱՒՐԵՆՏԻՈՍ կը մտնէ ։

Հ. ԼԱՒ. Սա ձայնը Հայր Յովհաննէսինն ըլլալու է ։ — Բարի եկիր Մանդուայէ. Հռոմէոսն ի՞նչ ըսաւ. կամ թէ որ իր դիտաւորութիւնը գրով իմացուց՝ ո՞ւր է նամակը ։

Հ. ՅՈՎՀ. Ես՝ գնացեր էի որ մեր կարգէն բոկոտն կրօնաւոր մը գտնեմ, որպէս զի ինծի հետ ընկերութիւն ընէ ։ Այս կրօնաւորը քաղքիս տան մը մէջ հիւանդի մը քով այցելութեան գնացեր էր. երբ զինք հոն տեղ գտայ, քաղքիս առողջապահական լրտեսները՝ կասկածի երթալով որ չըլլայ թէ քաղքին մէջ տարածուած տարափոխիկ ժանտախտովը համակեալ ըլլայ նոյն տունն ալ ուր կը գտնուէինք երկուքս, դռները վրանիս փակել տուին ու չթողուցին մեզ որ դուրս ելլենք. ահա այս պատճառաւ ալ հոն արգիլուելով չկրցի Մանդուա երթալ ։

Հ. ԼԱՒ. Նամակս ո՞վ տարաւ ուրեմն Հռոմէոսին ։

Հ. ՅՈՎՀ. Չկրցի խրկել, — ահա, քովս է — և ո՛չ մարդ մ՚իսկ

դտայ որ առնէ զայն քեզ բերէ, ինչու որ ամեն մարդ ժանտախտի վարակմանէ կը վախնար։

Հ. ԼՈՐ. Ապերջանի՛կ բաղդ. եղբայրութիւնիս վկայ որ փուճ նամակ չէր, այլ՝ սիրոյ վերաբերեալ պինտ կարևոր գիր մ՚էր, որու յետաձգումը՝ շատ վտանգաւոր հետևութիւններ պիտի պատճառէ։ — Հա՛յր Յովհաննէս, գնա՛ շուտ երկաթ ցող մի գտի՛ր ու շիտակ հոս խուցս բե՛ր։

Հ. ՅՈՎՀ. Հիմա, եղբայր, իսկոյն երթամ բերեմ։ (Կ՚ԵԼՆԷ։)

Հ. ԼՈՐ. Հիմա ես մինակս գերեզմանատունն երթալ պէտք եմ իսկոյն. ասկէ մինչև երեք ժամ սիրուն Ճիւլիէդդա պիտ՚ ըսթափի. արդեօք ո՜րքան պիտի մեղադրէ զիս, որ Հռոմէոս այս դէպքերէն բան մ՚իմացած չէ. բայց նորէն Մանդուա գիր կը գրեմ ու մինչև Հռոմէոսին գալը՝ զայն իմ խցիս մէջ կը պահեմ. ափսո՛ս խեղճ հոգի, որ մեռելոց գերեզմանին մէջ պահուած է։

(Կ՚ԵԼՆԷ։)

## ՏԵՍԱՐԱՆ Գ.

Գերեզմանապարտէզ մի. մէջը՝ ԳԱՊՈՒԼԵԱՆՑ ցեղին վերաբերեալ Գերեզմանարանը։

ՊԱՐԻՍ ու իւր Մանկլաւիկը՝ ձեռքը ծաղիկներ ու ջահ մը։

ՊԱՐ. Մա՛նչ, ջահդ ինծ տուր. գնա՛ մէկ դի քաշուէ։ Սակայն, մի՛ մարէ, վասն զի չեմ ուզեր որ մարդ զիս հոս տեսնէ։ Գնա՛ սա զեղձ ծառերուն տակ երկնցի՛ր, բայց ականջդ՝ այնպէս մօտ պիտի բռնես փապարապեր հողին վրայ, (որ այնքան անգամներ գերեզման բացուելով փափկացած ու փշրուն եղած է) որ գերեզմանատան մէջ ոտքի ձայն մ՚ա՛ռածիդ պէս, սուլելու ես իսկոյն որ իմանամ թէ բանի մի մօտենալը լսած ես։ Սա ծաղիկներն ինծ տուր։ Ըսածիս պէս ըրէ, գնա՛։

ՄԱՆԿԼ. Ես գրեթէ կը սոսկամ մինակ կենալու ասանկ գերեզմանապարտէզի մի մէջ. սակայն, ա՛ղէ նայիմ, վտանգն աչքս առնեմ։ (Մէկ դի կը քաշուի։)

ՊԱՐ. Սիրո՛ւն ծաղիկս, քո հարսանեկան անկողինդ ծաղիկներով

կը զարդարեմ. երջանի՛կ գերեզման, որ շրջապատիդ մէջ՝ յաւիտենականութեան ամենակատարեալ տիպարը կը պարունակես։ Անուշի՛կ Ճիւլիէթդա, որ հրեշտակաց հետ կը բնակիս, ընդունէ՛ ձեռքերէս այս վերջին յարգանքս ալ որ կենդանութեանդ ժամանակ զքեզ պատուեցի ու մահուանդ ժամանակ՝ գամբռնական գովասանօք գերեզմանդ կը պաշտեմ։ (Մանչը կը սուլէ։)
Մանչը ձայն կը տայ, կ'երևի թէ մէկու մը մօտենալը լսած է։ Ի՞նչ անիծեալ ոտքեր են արդեօք որ այս գիշեր այս կողմերը կը թափառին որ յուղարկաւորականս և Ճշմարիտ սիրոյս հոգեպաշտօնը խափանեն։ Ի՛նչ. ջահո՛վ կը գան։ — Գիշե՛ր, մթութեամբդ խաւարապատէ՛ զիս պահիկ մի։ (Մէկ մը կը սուլէ։)

ՀՌՈՄԷՈՍ և ծառայ ՊԱԼԹԱԶԱՐԻՆ հետ, որ ջահ, բահ ևայլն ունի։

ՀՌՈ. Տո՛ւր ինձ սա բահն ու երկաթեայ ցողը։ Բռնէ՛, ա՛ռ սա նամակը. վաղն առտու կանուխ միտքդ ըլլայ որ զայն իմ սիրելի հօրս տաս։ Ջահը ձեռքս տուր։ Ի տոյժ կենացդ կը պարտաւորեմ զքեզ որ մէկ դի կենաս ու ի՛նչ որ տեսնես կամ ի՛նչ որ լսես՝ չգաս երբէք ու գործս չարգիլես։ Մահուան այս անկողնոյն մէջ իջնելուս մասամբ իւիք դիտաւորութիւնն՝ իմ սիրականիս երեսը տեսնելն ու գլխաւորապէս իւր անկենդան մատէն թանկագին մատանի մ'առնելն է, մատանի մի՝ զոր այս սիրարծարծութեան պաշտօնիս մէջ մատս պիտ՝ անցունեմ. աղէ՛, գնա՛, քաշուէ՛ նայիմ։ Բայց, գիտցած ըլլաս, թէ որ հետաքննութեամբ ետ դառնաս, որ ինչ միտք ունենալս աչահսկես, կենդանի՛ է տէր, մարմինդ անդամ անդամ կը յօշատեմ և յօշուածոյքդ այս մեռելաքաղց գերեզմանին մէջ կը ցրուեմ, ժամանակն ու խորհուրդներս վերջին աստիճանի կատղութեան մի հասած են ու կրնամ ըսել որ անօթութեամբ յարձակող վագրներէ ու մռնչող ծովէն աւելի վայրագ և շատ աւելի անողորմ են։

ՊԱԼ. Հիմա կ'երթամ, տէր իմ, ու ձեզ շփոթութիւն չեմ տար։

ՀՌՈ. Ահա այդ կերպով ինձ բարեկամութիւն ըրած կ'ըլլաս։ — Ա՛ռ սա, ապրէ՛ս ու յաջողութիւն գտնե՛ս. երթաս բարեաւ, բարի ընկերս։

ՊԱՂ. Այսու ամենայնիւ, ես այս կողմերը տեղ մը կը պահուըտիմ. իր տեսնուածքէն կը վախնամ և իր խորհրդոց վրայ կը կասկածիմ։ (Մէկ դի կը քաշուի։)

ՀՌՈ. Հիմա զազրալի վիհ, մահուան ծոցք, որ երկրի ամենասիրելի պատառովը խճողեցար, ահա այսպէս ոյժ կը բանեցնեմ ես որ քու փտտած կլափդ բանամ։ (Գերեզմանի դուռը կը ճոխճոխէ ու կը բանայ) Եւ հեծկարար, հիմա քեզ աւելի սնունդ պիտի տամ որ լափլիզես։

ՊԱՐ. Ահա այն աքսորեալ գարշելի Մոնթագեանը, որ իմ սիրականիս քեռորդին սպաննեց, — որու կսկիծէ, ինչպէս որ կարծուած է, այս սիրուն արարածուհին իր կեանքը կորսնցուց. — ահա հոս կը գայ որ մեռեալ մարմնոց կոպտաբարոյ անպատուութիւն մ'ընէ. Հիմա կը ձերբակալեմ զինք։ (Յառաջ կը գայ։)
Դադրեցո՛ւր քու սրբապիղծ ջանքերդ, գարշելի Մոնթագեան. վրէժխնդրութիւնը մահուանէ անդին կրնայ՞ ձգտիլ. դատապարտեալ անզգամ, ձերբակալեալ ես. հնազանդէ՛ ու հետս եկուր. ինչու որ դուն պէտք է որ մեռնիս։

ՀՌՈ. Յիրաւի մեռնիլ պէտք եմ. ահա ես ալ ատոր համար հոս եկայ։ Սիրելի՛, ազնիւ երիտասարդ, ինծի պէս յուսահատեալ մարդը մի՛ փորձեր բնաւ, բանդ գնա իսկոյն և զիս ալ իմ գործիս թո՛ղ. — անցած գացածները մտքէդ անցուր հեղ մը, որ քստմնեցնեն զքեզ։ — Կը թախանձեմ, երիտասարդ, կատղութիւնս գըրգռելով գլխուս վրայ ուրիշ մեղք մ'ալ մի՛ դիզեր։ — Ա՛հ, բանդ գնա, Ճշմարիտ Աստուած, զքեզ իմ անձէս աւելի սիրելուս կ'ըսեմ. ինչու որ ես՝ ինքզինքիս դէմ զինեալ եկայ հոս. մի՛ կենար, երթալը նայէ. — ապրէ՝ ու ետքն օրհնէ զիս — խենդ մարդու մը գթութեամբ ազատեցայ ըսելով։

ՊԱՐ. Կը մերժեմ քու սպառնաձայնութիւններդ ու պատժապարտի մը պէս կալեա՛լ ես հոս։

ՀՌՈ. Դո՞ւն կը հրապուրախիզախես զիս, ծօ, ե՛լ նայիմ զիմացս։ (Կը կռուին։)

ՄԱՆԿԼ. Ո՛հ, Աստուած իմ, կը պատերազմի՛ն, երթամ պահապանները կանչեմ։ (Մանկլաւիկ կ'ելնէ։)

ԳԱՐ. Ո՛հ, մահակոծեցա՜յ։ (Կ'ինկնի։) — Թէ որ գթած ես, բայց գերեզմանը, ու զիս Ճիւլիէթդայի քով դի՛ր։ (Կը մեռնի։)

ՀՌՈ. Այո՛, հապա, հիմա իսկոյն։ — Երեսդ նայիմ անգամ մի։ — Հը՛, Մերկուտիոսի ազգականը, ազնուական Պարիս կոմսն է։ — Ծառայս ինծի ի՞նչ կ'ըսէր ճամբան, որուն աղէկ մտիկ չէի կրցայ ընել խելքս ցնդած ըլլալուն։ Կարծեմ որ ըսաւ, թէ Պարիս՝ Ճիւլիէթդայի հետ պիտի կարգուէր. այնպէս չըսա՛ւ արդեօք, թէ ինծի այնպէս եկաւ որ անանկ ըսաւ. ես ալ խե՛նդ եմ, ի՞նչ եմ չեմ գիտեր, որ Ճիւլիէթդային համար խօսիլը լսելով ասանկ եմ հասկցեր։ — Ո՛հ, տո՛ւր ինձ ձեռքդ, որ դառնահամբոյր թշուառութեանց գրոց մէջ՝ ինծի պէս նշանակուած մէկն ես, ես քեզ յաղթափառ գերեզմանի մէջ թաղեմ. — գերեզմանի մէջ ըսի. ո՛հ, չէ՛, սպաննուած երիտասարդ, լապտերապալատի մի մէջ՝ ուր Ճիւլիէթդա կը պառկի և իւր գեղեցկութեամբը այս խաւար դամբանատունը ընդունելութեան համայնազուարճ դահլիճ մի դարձնելով՝ ճառագայթներով կը լուսաւորէ։ Մեռեա՛լ դի, պառկէ՛ այդ տեղ, ուր մեռած մարդէ մի կը թաղուիս։ (Պարիսը գերեզմանին մէջ դնելով) Ո՛րքան մարդիկ, իրենց մահուան կէտին՝ շատ անգամ զուարթ երևցած են, զոր իրենց քով կեցողները՝ մահուանէ առաջ ճայթող փայլակն է կ'ըսեն։ Ո՛հ, ես ինտո՞ր փայլակն է ըսեմ ասոր։ — Ա՛հ, սիրակա՛նս, կնի՛կս. մահը՝ որ քո շնչոյդ քաղցրութեան մեղրը ծծեց, կարողութիւն չէ ունեցեր կապտել քեզմէ գեղեցկութիւնդ. դուն յաղթուած չես. գեղեցկութեան կարմիր դրօշմանիշը դեռ շրթանցդ և այտիցդ վրայ հաստատ կը կենայ, ու մահուան դեղին դրօշակը դեռ մինչև այդ տեղերը չէ հասեր։ — Դիպալտո՛ս, հո՞ս ես դուն ալ քո արիւնաթաթաւ պատանքիդ մէջ. ես քեզի ասկէց աւելի ի՞նչ շնորհք կրնամ ընել, որ այս ձեռօքս՝ որ երիտասարդութիւնդ քեզմէ անջատեց, իմինս ալ՝ քո թշնամիդ իսկ ըլլալով, ինձմէ զատել տամ։ Ներէ՛ ինձ, քեռորդի։ — Ա՛հ, սիրելի Ճիւլիէթդա, ինչո՞ւ համար դեռ այդքան գեղեցիկ ես։ Հաւատալ պէ՞տք եմ, որ անմարմին մահը քեզ սիրահարեր է և թէ այն վատոյժ և անհաճելի հրէշը հոս խաւարին մէջ կը պահէ որ իր հարճն ընէ զքեզ։ Ահա ես ալ այս վախտս համար; միշտ

քովդ պիտի կենամ. և այս խաւարամած ու յարագիշեր պալատին մէջ քովէդ չպիտի զատուիմ յաւիտեան. ես ալ հոս, ես ալ այս տեղ պիտի մնամ, այն որդերուն մէջ, որք քո հեջուպուհիներդ են. ո՛հ, հոս գնելու որոշեցի այլ և իմ յաւիտենական հանգըստարանս՝ այս աշխարհաձանձիր մարմնոյ վրայ դրուած չարաբաղդ աստղիս լուծը թօթափելով։ — Աչերս, վերջին անգամ ալ նայեցէք. բազուկներս, վերջին անգամ ալ գրկախառնեցէք. պրրկունքներս, ո՛հ, դուք, որ շնչառութեան դռներն էք, առաքինասէր համբուրիւ մի՛ մենավաճառ մահուան անթուական դաշնագրութեանը կնիքնիդ կը կոխէ՞ք արդեօք։ (Թոյնը հանելով։) Եկուր նայինք, դառն առաջնորդ, անախորժ ուղեցոյց։ Յուսահատեա՛լ նաւուղիղ, վտանգաւոր ժայռերու վրայ նետէ հիմա յանկարծ ու խորտակէ սա ծովահար ու ձանձրացած նաւիկդ։ Ահա՛, սիրականս, քեզի համար կը խմեմ։ (Կը խմէ։) — Ա՛հ, դեղավաճառ, իրաւ ըսեր ես, այս ինչ ազդու դեղ է եղեր։ — Ահա՛ հիմա համբուրիւ մի կը մեռնիմ։ (Կը համբուրէ ու կը մեռնի։)

Գերեզմանատան միւս ծայրէն Հայր ԼՈՐԵՆՑԻՈՍ կը մտնէ, ձեռքը լապտեր, ծող ու բրիչ։

Հ. ԼՈՐ. Սուրբ Փրանչիսկոս, դուն օգնութեան հասիր. այս գիշեր այս քանի՛ անգամ է որ ծերացեալ ոտքերս գերեզմաններուն հանդիպելով գթեց։ — Ո՞վ կայ այն տեղ, ո՞վ է այն որ այսպէս ուշ ատեն մեռելոց հետ ընկերութիւն կ'ընէ։

ՊԱԼ. Աս տեղ մէկը կայ, որ ձեր բարեկամն է և զձեզ շատ աղէկ կը ճանաչէ։

Հ. ԼՈՐ. Հա՛, Աստուած օրհնէ քեզ, դո՞ւն ես, ըսէ ինձ, սիրելի բարեկամս, նա վարի ջահը ինչո՞ւ համար ճճիներուն և աչափոր սկաւառակներուն լոյս տալու համար փուճ տեղը կը վառի. թէ որ աչերս չեն սխալիր, Կապուլեանց գերեզմանատան մէջը կը վառի։

ՊԱԼ. Այո՛, տէր Հայր, իմ տէրս ալ հո՛ն է, որ ձեր սիրելի բարեկամն է։

Հ. ԼՈՐ. Ո՞վ է։



ՊԱՆ. Հռոմէօսը․

Հ. ԼՈՒ. Ո՞րքան ժամանակ կայ որ հոն է։

ՊԱՆ. Նման կէս ժամ կայ։

Հ. ԼՈՒ. Հետս դամբարանն եկուր։

ՊԱՆ. Չեմ համարձակիր, տէ՛ր Հայր․ իմ տէրս կարծէ որ ես ասկէ հեռացած եմ, ու մահ սպառնալով վախցուց զիս որ դաղտնարար հոս չկենամ և իր նպատակը չիմանամ։

Հ. ԼՈՒ. Կեցի՛ր ուրեմն, ես մինակս երթամ։ — Վրաս սարսափ կը գայ․ ա՜հ, շա՛տ կը վախնամ որ չարադէպ և աղէտաբեր բան մ'եղած ըլլայ։

ՊԱՆ. Ես հոս տեղ նա զեղձի ծառին տակ պառկած ատենս երազ տեսայ որ տէրս և ուրիշ անձ մի իրարու հետ կռուեր են ու տէրս սպաններ է զայն։

Հ. ԼՈՒ. Հռոմէօս․ (աւազ երթալով) ափսո՜ս, ափսո՜ս, այս ինչ արիւն է, որ այս գերեզմանին քարակոփ բերանը ներկեր է։ — Ի՞նչ կը նշանակեն այս տիրազուրկ և արիւնաթաթախ սուրերը որ գունաթափ գետին նետուեր են այս խաղաղութեան վայրատեղին։

(Դամբանատան մէջ կը մտնէ։)

Հռոմէ՛օս, վա՜հ, դեղնա՛ծ։ — Միւսն ո՞վ է․ ի՜նչ, Պարիսն ալ, արիւնի մէջ թաթախուած։ Ա՜հ, այն ի՞նչ ապաշնորհ ժամ է եղեր, որ ասանկ կոծելի դիպուածով մ'ինքզինք յանցաւոր կ'ընէ․ — Տիկինը կը շարժի։

ՃՈՒԼԻԷԴԴԱ կ'արթննայ — ոտք կ'ելնէ։

ՃՈՒԼ. Ո՛հ, մխիթարիչ Հայր, ո՞ւր է ամուսինս․ հիմա միտքս բերի ուր տեղ պիտի գտնուէի, ուր որ եմ իրաւցնէ։ — Հռոմէոս ո՞ւր է։ (Ներսէն աղմուկ։)

Հ. ԼՈՒ. Աղմուկ մի կը լսեմ, տիկին, սա մահուան՝ վարակախտութեան՝ և տարօրինակ քունի բոյնէն դուրս ել։ Անդիմադրելի կարողութիւն մի՝ մեր բոլոր նպատակները կործանեց․ ե՛լ, ե՛լ երթանք, ամուսինդ՝ սա տեղ ծոցիդ մէջ մեռած է, նոյնպէս և Պարիսը․ քալէ՛, ես դքեզ սրբակրօն միանձնուհեաց կուսանոցը կը դնեմ․ այլ ևս բան հարցնելով մի՛ կենար․ պահապանները վրայ

կը համնին. քալէ՛, քալէ՛ երթանք, աղջիկս Ճիւլիէդդա։ — (Ներսէն աղմուկ) Ալ աւելի կենալու չեմ համարձակիր։ (կ՚ելնէ։)

ՃՈՒԼ. Գնա՛, դո՛ւ գնա ասկից, ինչու որ ես չպիտ՚ երթամ։ — Այս ի՞նչ է, հարազատ սիրականիս ձեռքին մէջ կափուած բաժակ մը. հասկցայ, իւր կենաց՝ թոյնով տարաժամ մահ մ՚է տուեր։ — Ա՛հ, տմնաչէն. ամէ՞նը խմեցիր, գէթ սիրոյ համար կաթիլ մը չթողուցի՞ր որ ետքն օգնէ ինծի։ — Գոնէ շրթունքդ համբուրեմ, գուցէ բարեբաղդաբար քիչ մը թոյն մնացած է վրանին, որով մխիթարական մահ մ՚ընդունիմ։ (Կը համբուրէ։) Ո՛հ, շրթունքդ դեռ տաք են։

Ա. ՊԱՀ. (Ներսէն) Մա՛նչ, ցուցո՛ւր նայինք, — ո՞ր կողմէ։

ՃՈՒԼ. Մարդ կը գայ, աղմուկ կը լսեմ։ — Ուրեմն չերկնցնեմ։ — Ո՛վ երջանիկ դաշոյն. (Ռոմէոսի դաշոյնը յափշտակելով) ահա՛ քու պատեանդ, (Ինքզինք կը զարնէ) հո՛դ ժանգոտէ ու թո՛ղ որ մեռնիմ։ (Ռոմէոսի մարմնոյն վրայ կ՚իյնայ ու կը մեռնի։)

ՊԱՀԱՊԱՆՆԵՐ ՊԱՐԻՍԻ ՄԱՆԿԼԱՒԻԿԻՆ հետ կը մտնեն։

ՄԱՆԿԼ. Ահա՛ սա կողմն է տեղը, հա՛ն տեղ ուր որ ջահը կը վառի։

Ա. ՊԱՀ. Բոլոր գետինը արիւնլուայ է։ Փնտռեցէ՛ք հետազօտութեամբ գերեզմանապարտէզին մէջ։ Ձեզմէ քանի մը հոգի երթա՛ն ու ո՛վ որ գտնեն՝ թո՛ղ բռնեն։ (Քանի մը Պահապաններ կ՚ելնեն։) Ափսո՜ս, խղճալի տեսարան. ահա կոմսն սպաննուած պառկեր է։ — Ճիւլիէդդան ալ դեռ արիւնը կը հոսէ. մարմինը տաք է, ու նոր է մեռեր, որ երկու օր առաջ հոս տեղս թաղուեցաւ։ — Վազեցէ՛ք, իմա՛ցտուէք իշխանին, — վազեցէ՛ք Գապուլետանց տունը, — գնացէ՛ք, ո՛տք հանեցէք Մոնդակեանները. մէկ քանինիդ ալ ամեն կողմ հետազօտեցէ՛ք։ (Ուրիշ Պահապաններ ալ կ՚ելնեն։) Այս թշուառներուն պառկած տեղը տեսանք, բայց այս բոլոր աղէկտոր թշուառութիւնները ի՞նտոր տեղի են ունեցեր, առանց հանգամանքները գիտնալու չեմ կրնար տեղեկանալ։

Ուրիշ ժամէ մը պահապաններ ՊԱԼԹԱԶԱՐԻՆ հետ կը մտնեն։

Բ. ՊԱՀ. Ահա Հռոմէոսին մարդը՝ զոր գերեզմանապարտէզին մէջ գտանք։

Ա. ՊԱՀ. Բռնեցէք, ձեռքերնէդ չփախչի, մինչեւ որ իշխանը հոս գայ։

Ուրիշ պահապան մը կը մտնէ Հայր ԼԱՒՐԵՆՏԻՈՍԻ հետ։

Գ. ՊԱՀ. Ահա ձեռք կրօնաւոր մը, որ կը դողդղայ, կը հառաչէ ու կը լայ։ Սա ձողն ու բրիչը իր ձեռքէն առինք, երբ այս գերեզմանապարտէզին կողմէն դէպի վար կ՚իջնէր։

Ա. ՊԱՀ. Այդ մարդէն ալ մեծ կասկած ունիմ. կրօնաւորն ալ վար դրէք։

ԻՇԽԱՆՆ հետեւորդներով կը մտնէ։

ԻՇԽ. Այս ինչ կանխայարոյց դժպատեհութիւն է որ մեր առաւօտեան հանգստութենէ կը զրկէ զմեզ։

ԳԱԲՈՒԼԷՏ, ՏԻԿԻՆ ԳԱԲՈՒԼԷՏ և ուրիշներ կը մտնեն։

ԳԱԲ. Այս ձայն ձուններն ինչ են քաղքին մէջ, որով տակն ու վրայ կ՚ըլլան։

ՏԻԿ. ԳԱԲ. Բոլոր ժողովուրդք փողոցներուն մէջն են ինկեր՝ ոմը — Հռոմէոս, կը պոռայ, ոմը — Ճիւլիէդդա, կը կանչէ և ոմը — Պարիս կը գոչէ, և ամէնքն ալ բարձր աղաղակներով դէպի մեր գերեզմանատունը կը դիմեն։

ԻՇԽ. Այս ինչ ահաղմուկներ են որ մեր ականջներուն կը հասնին։

Ա. ՊԱՀ. Վեհափառ տէր, ահա Պարիս կոմսը հոս տեղ սպաննուած պառկած է. Հռոմէոս մեռած. և Ճիւլիէդդա՝ որ շատոնց մեռած կը կարծուէր, դեռ տաք է ու հիմա նոր սպաններ են։

ԻՇԽ. Փնտռեցէք, հարցափորձ ըրէք, ու իմացէք նայինք այս զարհուրելի սպանութիւններն ո՛րկէ ծագեր են։

Ա. ՊԱՀ. Հոս տեղ կրօնաւոր մ՚ու սպաննուած Հռոմէոսին մարդը կայ, որոց քովէն՝ այս մեռած մարդոց գերեզմանները բանալու յարմար գործիքներ գտանուեցան։

ԳԱՊ. Ո՛վ Աստուած իմ։ — Ո՛հ, կի՛նս. տե՛ս զաւակնիս ո՛րքան արիւն կը թափէ. այս դաշոյնը սխալմամբ մխուած է. ինչու որ, — ո՛հ, նայէ՛, նայէ՛. Մոնդակեանին կռնակին վրայ մնացած պատեանը պարապ է, — ու աղջկանս կուրծքը՝ սխալմամբ դաշոյնին պատեանն է եղեր։

ՏԻԿ ԳԱՊ. Այս ինչ ձիւն է որ եկաւ գլխուս. այս մահուան տեսարանը, զանգակ մի կը՞նմանի, որ պառաւութեանս՝ գերեզմանին մօտեցած ըլլալուն ազդը հնչէ ինձ։

ՄՈՆԴԱԿԷՍ և ուրիշներ կը մտնեն։

ԻՇԽ. Եկուր նայինք, Մոնդակէս, ինչու որ դու կանուխ արթնցած ես, որ քու որդւոյդ ու ժառանգիդ կենացը կանխաղոյն արշալոյսին մէջ զրկուիլը տեսնես։

ՄՈՆԴ. Ափսո՛ս ինձ, բարձրապատիւ իշխան, այս գիշեր կինս մեռաւ, որու մահուան պատճառը՝ զաւկիս աքսորմանը համար ունեցած սրտի կսկիծն էր. նայինք ծերացեալ տարիքիս դէմ դեռ ճակատագիրս ինչ դժբաղդութիւններ է պատրաստեր։

ԻՇԽ. Նայէ՛ որ տեսնես։

ՄՈՆԴ. Ո՛հ անխոհեմ. այս ինչ անմտութիւն է որ հօրմէդ առաջ գերեզման մտնիլու արտորացիր։

ԻՇԽ. Լուտանախօս բերանդ գոցէ քիչ մի, մինչև որ այս բոլոր երկբայական դիպուածոց լուծմունք մի տրուի, և իմանանք թէ ո՛ւրկէ ծագեցան, գլխաւոր պատճառն ինչ է, ինչ բանէ առաջ եկած են, որկէ ետք ձեր աղետից գլխաւոր կսկծացողը ես կ՚ըլլամ, ու ձեզի հետ մինչև գերեզման իսկ կ՚առաջնորդեմ։ Նոյնհետայն համբերեցէք, ու թողուցէք որ տարաբաղդութիւնը համբերութեան գերին մնայ։ — Առա՛ջ բերէք կասկածաւոր մարդիկը։

Հ. ԼՈՐ. Ես ամենէ կասկածաւորն և ամենէ նուազակարողն եմ։ Այսու ամենայնիւ, այս սոսկալի մարդասպանութեանց համար ինձմէ աւելի կասկածելու տեղի կը տան ժամանակն ու տեղը։ Ահա՛ ես հոս կեցեր եմ որ ինքզինքս ամբաստանեմ և անմեղադիր ընեմ, ես ինքզինքս դատապարտեմ և ես ինքզինքս քաւեմ։

ԻՇԽ. Ուրեմն ըսէ՛ նայինք շուտով դուն այս իրողութեանց վրայօք ինչե՞ր գիտես ։

Հ. ԼՈՒ. Կարճ ընեմ, ըստ որում շունչս շատ ատեն չէ որ ըսկսաւ ընդհատիլ, վասն որոյ երկայն պատմութիւն չպիտի կարենամ ընել ։

Ռոմէոս՝ որ սա տեղ մեռած կը կենայ, սա Ճիւլիէդային էրիկն էր, և այն ալ՝ որ հա տեղ մեռած պառկեր է, այս Ռոմէոսին հաւատարիմ կնիկն էր. զիրենք պսակողը ես էի և իրենց ղաղտնաբար կարգուած օրը՝ Դիպալտոսի կենաց վերջին օրն էր, որու վաղահաս մահուան պատճառաւ նոր փեսայն այս քաղքէն աքսորուեցաւ, որու վրայ, և ոչ թէ Դիպալտոսի վրայ Ճիւլիէդա յանչափս կսկծեցաւ ։ Դուք՝ — իւր տրտմութիւնը վրայէն փարատելու համար, — Պարիս կոմսին հետ նշանեցիք, ու ստիպ կոխեցիք որ բռնի կարգէք զինք ։ — Ասոր վրայ ինքն ալ իմ քովս եկաւ յուսահատական կատղութեամբ մը, թախանձելով զիս, որ կամ իրեն ճամբայ մը սովրեցնեմ որով կարող ըլլայ երկրորդ ամուսնութենէ ազատելու, և կամ հոն տեղ խուցիս մէջ ինքզինք սպաննէ ։ Այն ժամանակ ես ալ, ըստ տեղեկութեան արհեստիս՝ իրեն թմրեցուցիչ դեղաջուր մը տուի, որ իւր արդիւնքն ուզածիս պէս ազդեց վրան, ինչու որ, մեռելի պէս անզգայ մնաց. Նոյն ժամանակին Ռոմէոսին գիր գրեցի, որ այս աղետալի գիշերս հաս գայ զանուի, որպէս զի ըմպելիքին զօրութիւնը սպառելու ժամանակ՝ կեղծ գերեզմանին մէջէն ազատէ զայն ։ Բայց թղթատարս, որ Հայր Յովհաննէսն էր, ճամբան դիպուածով մը արգիլուելով, երէկ գիշեր նամակս ետ բերաւ ու ինծի տուաւ ։ Իմ ալ ճարս հատած, ելայ մինակս. և իր արթննալու ժամանակներուն՝ իւր ազգականաց գերեզմաններուն մէջէն անցնելով քովը գնացի, այն մտօք՝ որ առնեմ զինք ու խուցիս մէջ գաղտնի պահեմ, մինչև որ Ռոմէոսին վարպետութեամբ մ՚իմաց տալով իրեն յանձնեմ ։ Բայց երբոր եկայ, (որ իւր սթափելէն գրեթէ քանի մը րոպէ առաջ էր) նայեցայ որ ազնուական Պարիսը և հաւատարիմ Ռոմէոս իրենց դեռահաս կեանքերնին աւանդած մեռած են ։ Ճիւլիէդան արթընցած ժամանակ՝ աղաչեցի զինք որ հետս գայ՝ ու Աստուծոյ խրկած

խրատը համբերութեամբ տանի, բայց նոյն կէտին դուրսն աղմուկ լսելով, Թողուցի գերեզմանէն փախայ, ըստ որում, ինք յուսահատութեան կէտի հասնելով չէր ուզեր որ հետս գայ, այլ, (ինչպէս որ կ'երեւի) բռնութիւնն իր վրայ է բանեցուցեր։ Ահա այսքան գիտեմ ես. և իր ամուսնութեան գաղտնեացն ալ իւրեան դայեկուհին մասնակից է։ Հիմակ, թէ որ այս չարաբաղդութեանց մէկն ալ իմ սխալմամբս պատճառած են նէ՝ թող իմ բազմամեայ ծերութիւնս, օրինաց խստապահանջ անաչառութեամբը, իր ժամանակէն ժամ մ'առաջ զոհուի։

ԻՇԽ. Մենք մինչև հիմա զքեզ սրբակեաց մարդ կը ճանաչենք։ — Ո՞ւր է Հռոմէոսի ծառայն. նայինք այն ինչ կ'ըսէ ասոնց վըրայօք։

ՊԱՂ. Ես՝ երբ Ճիւլիէդդայի մահուան լուրը իմ տիրոջս որ բերի՝ իսկոյն Մանդուայէ սուրհանդակով մեկնեցաւ ու շիտակ հոս այս գերեզմանատունն եկաւ։ Ահա սա նամակն ալ պատուիրեց ինծ որ կանուխկեկ իւր հօրը տամ. անկէ՝ որ մահ սպառնալով սաստեց զիս որ հեռանամ ու դամբանատան մէջ չմտնեմ, վասն որոյ ես ալ զինք հոն թողուցի ու գացի։

ԻՇԽ. Տո՛ւր ինձ նամակը նայիմ անգամ մի։ — Ո՞ւր է կոմսին մանկլաւիկը, որ պահապանները ոտք հանեց։ — Քո տէրդ ինչ ըրաւ հոս, մարդ։

ՄԱՆԿԼ. Ինք ծաղիկներով հոս եկաւ որ իր հարսնցուին գերեզմանը զարդարէ և ինծ խստիւ պատուիրեց որ հեռու կայնիմ. Մէկ մ'ալ նայիմ որ մարդուն մէկը ջահով կը գայ որ գերեզմանը բանայ. անկէ՝ տէք երբ տէրս վրան սուրը որ քաշեց, շուտով վազեցի որ պահապաններուն իմաց տամ։

ԻՇԽ. Այս նամակը՝ կրօնաւորին խօսքերը, տարփաւորաց փոխադարձ սէրը, և Ճիւլիէդդայի համար առած մահուան լուրը իրաւ կը հանէ. ինքն ալ մէջը կը գրէ, — որ աղքատ դեղավաճառէ մի թոյն ծախու առնելով իսկոյն այս գերեզմանն է եկեր որ մեռնի և Ճիւլիէդդայի հետ պառկի։ — Ո՞ւր են հիմա այն ոխերիմները։ Գաբուլէ՛տ, Մոնդակէ՛ս, տեսէ՛ք անգամ մի ձեր ատելութեանց վըրայ ինչած պատուհասը. ինչպէ՛ս Աստուած միջոցը կը գտնէ որ ձեր

ուրախութիւնները՝ սիրով կործանէ։ Ահա ես ալ ձեր երկպառակութեանց սատ-կոյր ըլլալուս համար զոյգ մ՚ազգական կորսնցուցի։ [1]) Ամենքս ալ պատժուած ենք։

ԳԱՊ. Ո՛հ, եղբայր Մոնդագէս, տո՛ւր ձեռքդ. այս ըլլայ թո՛ղ իմ աղջկանս իրաւունքը, ինչու որ ասկէ աւելի բան չեմ կրնար պահանջել։

ՄՈՆԴ. Բայց ես կրնամ ասկէ աւելին տալ քեզ. վասն զի ես իրեն համար ոսկեձոյլ արձան կանգնել տամ պիտի, որպէս զի, քանի որ Վերոնա այս համբաւով անուանի եղած է, ուրիշ արձան մ՚երբէք Ճիւլիէդդայի սիրոյն և հաւատարմութեանը պատիւը չըստանայ։

ԳԱՊ. Հռոմէոս ալ նոյն փառաւորութեամբ իւր հարսին քով պիտի կանգնուի, որք մեր թշնամութեան անմեղ զոհեր եղան։

ԻՇԽ. Առաւօտը՝ սգաթախիծ խաղաղութիւն մի կը բերէ իւր հետ. արեւը՝ իւր կսկծանքէն երեսը չպիտի ցուցնէ այսօր։ Գնացէք ասկէ, որ այս սգալի իրողութեանց վրայ աւելի տարաձայնութիւններ լսուին։ Ձեզմէ ոմանք պիտի ներուին և ոմանք պիտի պատժուին. ըստ որում Ճիւլիէդդայի և իւր Հռոմէոսի դէպքէն աւելի աղէտարկած պատմութիւն մի եղած չէ երբէք։

[1]) Մերկուտիոսը և Պարիսը։ ԹՆ.

ՎԵՐՋ ՀՌՈՄԷՈՍ ԵՒ ՃԻՒԼԻԷԴԴԱՅԻ



